Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 ՕԳՈՍՏՈՍ . 1965

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

Խմբագրություն



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# Содержание



---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ


Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀՍՍՌ ԳԱ ակադեմիկոս


*Սովետական Միության կոմունիստական պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի վրա պատմությունը դրել է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պիոները լինելու խոշոր միսիան։ Մեր երկրին վիճակված էր գնալու չտրորված արահետներով, հաղթահարելու բազմաթիվ դժվարություններ, սոցիալիստական շինարարության տարբեր ժամանակաշրջաններում փնտրելու և գտնելու արտադրության կառավարման նորանոր ձևեր։ Որպես պետական ֆունկցիա, արտադրության կառավարումը, որ առաջացել է սոցիալիստական պետության ստեղծման հետ միասին, անընդհատ զարգանում է։ Տնտեսության կառավարման կազմակերպման ձևերն ու մեթոդները քարացած չեն։ Արտադրողական ուժերի աճման և արտադրական հարաբերությունների զարգացման համեմատ դրանք փոփոխվում են, կատարելագործվում, համակերպվում են տնտեսական զարգացման նոր պահանջներին։ Սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում տնտեսության կառավարման և տնտեսավարության մեթոդների մեջ տեղի են ունենում խոր և ինտենսիվ փոփոխություններ։ Ներկայումս արդեն մեր առջև կանգնած են դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներից բխող մի շարք խնդիրներ, որոնք դեռևս իրենց լուծումը չեն ստացել։ Ամենից առաջ այդ վերաբերում է արտադրության կառավարումը ճյուղային և տերիտորիալ առումով զուգակցելու հարցին։*

*Արտադրության ճյուղային և տերիտորիալ կազմակերպումը՝ դա միասնական տնտեսական օրգանիզմի՝ հասարակական արտադրության միասնական սոցիալիստական կազմակերպման երկու կողմերի արտահայտությունն է։ Նման բաժանման հիմքում ընկած է աշխատանքի հասարակական բաժանումը։ Եվ որքան ծավալվում է աշխատանքի հասարակական բաժանումը, այնքան կարևոր է դառնում ձեռնարկությունների կառավարման ճյուղային և տերիտորիալ հատկանիշները ճիշտ զուգակցելու հարցը։*

*Տեխնիկական բուռն առաջընթացի և դրա հետ կապված, մի կողմից՝ արտադրության ճյուղերի ավելի ու ավելի դիֆերենցման պրոցեսի, իսկ մյուս կողմից՝ տեղական մարմինների նախաձեռնությունը ծավալելու և աշխատավո-*

ության լայն զանգվածների ակտիվությունը մեծ չափերով բարձրացնելու անհրաժեշտության պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն է ստանում ճյուղային ու տերիտորիալ տեսանկյունից տնտեսության կառավարման ճիշտ զուգակցման հարցը։

Տնտեսության կառավարման դեմոկրատացման պրոցեսը ՍՍՌՄ-ում արտադրության կառավարման գործում ժամանակին ընդունել է ռեսպուբլիկաների և տեղական կազմակերպությունների իրավունքներն ընդլայնելու առանձնահատուկ ձև։ Դա տեղի է ունեցել խաղաղ շինարարության գրեթե բոլոր փուլերում։ Տնտեսական զարգացման և աշխատանքի արտադրողականության համընդհանուր վերելքի բնագավառում ռեսպուբլիկաների ֆունկցիաների ընդլայնումը նախապատրաստվել է սովետական էկոնոմիկայի զարգացման ամբողջ պատմությամբ։ Ծայրամասերի տնտեսական և կուլտուրական հետամնացության վերացումը, ազգային ռեսպուբլիկաների ինդուստրացումը, դրանցում արդյունաբերական օջախների և հզոր էկոնոմիկայի ստեղծումը, ազգային կադրերի պատրաստումն ու աճեցումը՝ այս բոլորը սովետական էկոնոմիկայի զարգացման բնորոշ գծերն են։

Սովետական էկոնոմիկայի զարգացման սկզբնական էտապում կառավարման սիստեմը ձևավորվեց հիմնականում ճյուղային, գերատեսչական հատումով (ուղղահայաց)։ Հետագայում զգալի նշանակություն ձեռք բերեց նաև կառավարման տերիտորիալ (հորիզոնական) հատումը, իսկ 1957 թվականին իրականացվեց արդյունաբերության ու շինարարության կառավարման արմատական վերակառուցում, կառավարման ճյուղային հատկանիշով կենտրոնացված գերատեսչական ղեկավարությունից անցում կատարվեց ժողովրդական տնտեսության խորհուրդների (ժողտնտխորհ) միջոցով տերիտորիալ հատկանիշով կառավարմանը։ Դրա նպատակն էր՝ գերատեսչական եղած պատնեշների վերացումը։ Բայց դրանց տեղը առաջացան տերիտորիալ պատնեշներ։ Միաժամանակ մեծ դժվարություններ ստեղծվեցին ճյուղերի պլանավորման և դրանց միջև համամասնություններն ապահովելու գործում։ Դրանց հետ մեկտեղ իջավ կապիտալ ներդրումների ժողովրդատնտեսական արդյունավետությունը, քանի որ դժվարացան դրանց ճիշտ բաշխման խնդրի լուծումը և ճյուղերի զարգացման գործում առաջադիմական ուղղությունների ընտրության ապահովումը։ Բարդացավ նաև կադրերի պատրաստման սիստեմը՝ ճյուղի համար մասնագետների պատրաստման և դրանց ռացիոնալ օգտագործման հարցը։

Վերջին տարիների ընթացքում փորձ արվեց այդ հարցը լուծել պետական ճյուղային կոմիտեներ ստեղծելու միջոցով։ Բայց դրանց վրա դրված ֆունկցիաները՝ միասնական տեխնիկական քաղաքականության իրագործումը, ճյուղերի կոմպլեքս պլանավորումը, ամբողջ ճյուղի մասշտաբով արտադրության կենտրոնացված ղեկավարումը չէին կարող իրականացվել, քանի որ ձեռնարկությունը գտնվում է տնտեսական շրջանի ժողտնտխորհի անմիջական իրավասության ու ենթակայության ներքո։

Տեխնիկայի և արտադրության համակենտրոնացման բարձր մակարդակը պայմանավորում է արտադրության ճյուղի կառավարումն իրականացնելու անհրաժեշտությունը՝ որպես մեկ միասնական տնտեսական օրգանիզմի։ Այդ տեսակետից մեծ դեր են խաղում վերջին տարիներին սովետական ֆիրմաների՝ արդյունաբերության մեջ ճյուղային արտադրական միավորումների ստեղծու-



մը։ Դրանք ընդգրկում են մարզի, տնտեսական շրջանի կամ միութենական ռեսպուբլիկայի տերիտորիայում գտնվող մեկ ճյուղի բոլոր ձեռնարկությունները (կամ դրանց հիմնական մասը), այսինքն՝ տվյալ տերիտորիայում հանդես են գալիս որպես որոշ արտադրանքի միակ արտադրողներ կամ թողարկում են այդ արտադրանքի մեծ մասը։ Այդ միավորումները կազմակերպված են տրնտհաշվարկի սկզբունքներով և մասնագիտացված ճյուղային կազմակերպություններ են։ 1965 թվականի սկզբներին ՍՍՌՄ-ում հաշվվում էին մոտ 500 արտադրական միավորումներ, որոնցում ընդգրկված էին մոտավորապես 2200 նախկին ինքնուրույն ձեռնարկություններ։ Այսպիսով, վերջին տարիների ընթացքում ձեռնարկությունների ճյուղային ու տերիտորիալ կառավարումը զուգակցելու երկու փորձ է արվել.

1. Կազմակերպվել են ճյուղային պետական կոմիտեներ՝ ժողտնտխորհների պահպանման պայմաններում։ Բայց, ինչպես արդեն ասվեց, խնդիրը չի լուծված, քանի որ ձեռնարկությունները չեն ենթարկվում հիշատակված կոմիտեներին.

2. Կազմակերպվել են ֆիրմաներ, որոնք փոքր ռեսպուբլիկաներում և մի շարք տնտեսական շրջաններում ընդգրկում են տվյալ ճյուղի գրեթե ողջ արտադրությունը։ Բայց, չնայած դրանց խոշոր նշանակությանը, չեն կարող միավորել ամբողջ ճյուղը՝ Սովետական Միության մասշտաբով։

Ներկայումս բանավեճ է մղվում, և նշվում են միջոցներ արդյունաբերական ձեռնարկությունների ճյուղային ու տերիտորիալ կառավարումը ճիշտ զուգակցելու ուղղությամբ։ Ուշադրության են արժանի հետևյալ նկատառումները՝

Առաջին. առաջարկվում է կառավարման այնպիսի կազմակերպում, երբ ձեռնարկությունները կամ ֆիրմաները ղեկավարի ժողտնտխորհը (համապատասխան ճյուղային վարչությունը), որը գտնվի կրկնակի ենթակայության՝ ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի և տնտեսության ղեկավարման ընդհանուր միութենական օրգանի համապատասխան գլխավոր վարչության ենթակայության ներքո։ Դա կվճռի արտադրության ճյուղային և տերիտորիալ կառավարումը զուգակցելու պրոբլեմը։ Բայց այդպիսի սիստեմն ունի երկու բացասական կողմ, որոնք պետք է նկատի առնել։ Մի կողմից հարկադրված կլինենք զգալիորեն ուռճացած կառավարման ապարատ ունենալ, իսկ մյուս կողմից՝ կրկնակի ենթակայության դեպքում անխուսափելի են կազմակերպական անհարթությունները, դիմազրկության տարրերը և այլն։

Երկրորդ. ճյուղային և տերիտորիալ կառավարումը զուգակցելու պրոբլեմը կարելի է լուծել նաև արտադրության բոլոր ճյուղերը երկու խմբի բաժանելու միջոցով. 1) տեղական նշանակության (շինանյութերի, կարի, տրիկոտաժի, կոշիկի արտադրության և արդյունաբերության ուրիշ ճյուղեր), որոնք պետք է բավարարեն տվյալ շրջանի պահանջները և դրանք պետք է ունենան տեղական իշխանություններին ենթարկվող համապատասխան կառավարչական ապարատ։ 2) Ընդհանուր միութենական նշանակության ճյուղեր, որոնց արտադրանքը պետք է բավարարի ամբողջ երկրի պահանջը։

Այս հարցը վճռելիս, պետք է ամենից առաջ հաշվի առնել մեր անցյալի փորձը՝ տեղական ենթակայության ձեռնարկությունների զգալի ետ մնալը։ Ճիշտ է, այն ժամանակ սարքավորումների պակասության պայմաններում, առաջին հերթին նոր տեխնիկան մատակարարվում էր ավելի կարևոր օբյեկտներին, որոնք ունեին ընդհանուր միութենական նշանակություն։ Այժմ դրու-

թյունը փոխվել է, իսկ ապագայում բոլոր ձեռնարկություններին նոր տեխնիկա մատակարարելու գործը ավելի դյուրին կլինի։ Բայց բանը միայն դրանում չէ, տնտեսության միասնականությունը և արտադրության կոմպլեքս զարգացման անհրաժեշտությունը պահանջում է կառավարման կազմակերպման միասնություն։ Վերջապես, շատ ապրանքներ, որոնք նախատեսվում էին միայն տեղական սպառման համար, այժմ այդ շրջանակից դուրս են եկել։ Փոխվել է նաև գնորդը, նա ավելի շատ գնում է այն ապրանքները, որոնք արտադրվում են էժան և բարձրորակ։

Երրորդ. ճյուղային և տերիտորիալ կառավարման զուգակցումը հավանաբար կլուծվի ձեռնարկության ղեկավարման արմատական փոփոխության միջոցով։ Ձեռնարկությունը պետք է ընդհանուր միութենական ճյուղային վարչության իրավասության ներքո գտնվի երկու պայմանների առկայության դեպքում, ա) ձեռնարկությանը լայն ինքնուրույնություն տալու, բ) վարչական ձևերն ու մեթոդները (որոնք ներկայումս չափազանց մեծ տեղ են բռնում) տնտեսականով փոխարինելու դեպքում։ Հարկ է այս երկու հարցերը հանգամանորեն լուսաբանել։

Ձեռնարկության ղեկավարման արդյունավետությունը խիստ բարձրացնելու, ձեռնարկության կառավարումը կատարելագործելու համար կարևոր միջոցառումը ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության իրավունքների ընդլայնումն է, ձեռնարկությունների ղեկավարման գործում դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացումը։

Տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարումը ոչ թե ձեռնարկությունն ինքնուրույնությունից զրկել է նշանակում, այլ նշանակում է դրանց ինքնուրույնության և ազատության ապահովումը՝ տնտեսական օրենքների տարերային գործողություններից։ Կենտրոնացված պլանային ղեկավարման շնորհիվ, որը հնարավոր է միայն արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության պայմաններում, տնտեսական օրենքները կույր անհրաժեշտությունից վերածվել են գիտակցված անհրաժեշտության։

Տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման հարցը առավել մեծ նշանակություն է ստանում այժմ, քանի որ անցումը կոմունիզմին ենթադրում է արտադրության հանրայնացման և աշխատանքի հասարակական բաժանման ավելի բարձր աստիճան։ Բայց կենտրոնացումը պետք է լինի միայն ամենաարմատական հարցերի գծով։

Արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացումը առաջ է քաշում հենց ձեռնարկության ղեկավարման աշխատանքի ուժեղացման խնդիրը։ Դա առավել կարևոր և անհետաձգելի խնդիրներից մեկն է։ Չպետք է անհարկի խնամակալությամբ խեղդել ձեռնարկության, որպես արդյունաբերության կառավարման սիստեմում հիմնական օղակի և դիրեկտորի, որպես ձեռնարկության անմիջական ղեկավարի նախաձեռնությունը։ Ղեկավարման անսահման կենտրոնացումը և դրա անխուսափելի ուղեկից՝ մանրախնդիր խնամակալությունը կաշկանդում են ներքին օղակների, արտադրության անմիջական ղեկավարների նախաձեռնությունը, բացասաբար են անդրադառնում տնտեսության զարգացման վրա։

Դեռևս պարտիայի XII համագումարն ընդգծել է. «Արտադրական հաջողության կամ, ընդհակառակն, անհաջողության արմատը գտնվում է հիմնական արդյունաբերական միավորի մեջ, այսինքն՝ ֆաբրիկայում և գործարանում։ Յուրաքանչյուր առանձին ձեռնարկությունում գործի ճիշտ դրվածքը, ըստ որում ո՛չ միայն տեխնիկա-արտադրական, այլև առևտրային տեսակետից,— վճռական կարևորության հարց է։

Իր ձեռքում պահելով ձեռնարկության ընդհանուր ղեկավարությունը և կենտրոնացնելով այն արտադրական ու առևտրային ճյուղերն ու օպերացիաները, որոնք դրա համար նախապատրաստված են, տրեստը պետք է միևնույն ժամանակ ամեն կերպ խուսափի խեղդող կենտրոնացումից, նախաձեռնությունը մարելուց և իր ֆաբրիկաների ու գործարանների աշխատանքին մեխանիկորեն միջամտելուց» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, Հայպետհրատ, I մաս, էջ 891, 1954 թ.)։

Ձեռնարկությունը արտադրության սկզբնական օղակն է, ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական բջիջը, արտադրողական աշխատանքը կիրառելու անմիջական ոլորտը։ Ձեռնարկությունից, նրանում աշխատող կոլեկտիվից՝ բանվորներից, ծառայողներից, ինժեներատեխնիկական աշխատողներից են կախված թողարկվող արտադրանքի քանակն ու որակը։ Մինչդեռ, առ այսօր ձեռնարկությունը դեռևս չի օժտված անհրաժեշտ ինքնուրույնությամբ, մանևրելու, տնտեսական լայն նախաձեռնություն իրականացնելու հնարավորություններով։

Ձեռնարկության գործնական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունն ընդլայնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է խիստ կրճատել ձեռնարկության համար կենտրոնացված կարգով սահմանված պլանային ցուցանիշներն ու լիմիտները։ Ձեռնարկությունների համար այդպիսի լիմիտներ պետք է սահմանվեն մինիմում, միայն հիմնական, հանգուցային ցուցանիշների գծով. օրինակ, ապրանքային արտադրանքի ծավալի ու հիմնական անվանակարգի, աշխատավարձի ընդհանուր ֆոնդի, կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալի, պետական բյուջեավճարումների և շահույթի գծով։ Այս լիմիտների շրջանակներում ձեռնարկությանը պետք է տրվեն բոլոր տնտեսական գործնական իրավունքները՝ արտադրության պլանավորման ու ղեկավարման և արտադրանքի իրացման համար։

Արդի պայմաններում անհրաժեշտություն չկա կենտրոնացված կարգով սահմանել աշխատողների թվաքանակը, աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի ինքնարժեքը, սարքավորումների օգտագործման նորմաները և այլն։ Ելնելով համապետական առաջադրանքից այս հարցերը լրիվ կարող են մշակվել ձեռնարկություններում այն ցուցանիշների գծով, որոնց մասին խոսք եղավ վերևում։ Կենտրոնացված լիմիտների խիստ կրճատումը պայմաններ կստեղծի ո՛չ միայն ձեռնարկության ղեկավարության կողմից զգալիորեն մեծ նախաձեռնություն ցուցաբերելու, այլ կտնտեսի նրանց անգնահատելի ժամանակը՝ լավ և օպերատիվ ղեկավարություն իրականացնելու համար։

Ձեռնարկությանը տրվող լայն ինքնուրույնությունը ինքնըստինքյան չի վճռի կառավարման արդյունավետությունը բարձրացնելու խնդիրը։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է լայնորեն կիրառել տնտեսական լծակները, արմատապես բարելավել տնտեսական աշխատանքը։

Ձեռնարկության տնտեսական գործունեության բարելավման վճռողական միջոցը տնտհաշվարկի ընդլայնումն ու խորացումն է։ Այն պետք է ենթարկվի տնտեսավարության խնայողական ու ռացիոնալ ազդակների համակողմանի

ուժեղացմանը, արտադրության և աշխատանքի առաջադիմական կազմակերպմանը, սերտորեն կապված լինելով աշխատավորների արտադրական նախաձեռնության ծավալման հետ և դրանով իսկ աջակցի սոցիալիստական կարգապահության ամրապնդմանը, տնտեսավարման կոմունիստական նորարարության մշակմանը։

Ձեռնարկություններում տնտեսական հաշվարկի կազմակերպման գործում դեռևս կան խոշոր թերություններ, որոնց հետևանքով էլ այն շատ տեսակետից ձևական բնույթ է կրում և անհրաժեշտ արդյունքը չի տալիս արտադրության աճման, տեխնիկական առաջադիմության և արտադրանքի միավորի վրա կատարվող ծախսումների իջեցմանը խթանելու առումով։ Որպեսզի վերացվեն թերությունները, անհրաժեշտ է ընդլայնել ձեռնարկության տնտեսական իրավունքները՝ նրանց նախաձեռնությունը ծավալելու համար և վճռականորեն ուժեղացնել արժեքային բոլոր լծակները՝ (շահույթ, գին, պարգևատրում, ֆինանսներ և վարկ) արտադրության վրա ներգործելու համար։

Ներկայումս շահույթի գերակշռող մասը (մոտ 2/3-ը) մուծվում է բյուջե և ֆինանսավորման համար վերաբաշխվում հաճախ հենց նույն ձեռնարկություններին։ Դրանով իսկ խախտվում է ուղղակի կապը ձեռնարկության ֆինանսական վիճակի և նրանց աշխատանքի տնտեսական արդյունքի (կուտակման) միջև։ Դա վնասում է ձեռնարկության անմիջական շահագրգռվածությանը՝ եկամտաբերության բարձրացման գործում և ծնում է խնամակալական տրամադրություններ։ Կոլեկտիվի նյութական շահագրգռվածությանը հատկապես մեծ վնաս է հասցնում այն հանգամանքը, որ շահույթի մի մասը միշտ կարող է տրվել պլանային-վնասով աշխատող ձեռնարկություններին՝ ծախսերի ծածկման համար։ Անհրաժեշտ է փոխել այդ իրավիճակը և, առաջին հերթին, ձեռնարկության շահույթն օգտագործել իրենց շրջանառու միջոցներն ու ապակենտրոնացված կապիտալ ներդրումները լրացնելու համար, կապիտալ ներդրումներ, որոնք կատարվում են իրենց ձեռնարկությունների հայեցողությամբ՝ արտադրությունը կատարելագործելու և աշխատանքի տեխնիկական զինվածությունը բարձրացնելու նպատակով։

Հասել է ժամանակը ձեռնարկությունների և միավորումների (ֆիրմա) կապիտալ ներդրումների բյուջեից կատարվող ֆինանսավորումից անցնելու դրանց վարկավորմանը։ Ինչպես վերակառուցումը, այնպես էլ նոր շինարարությունը պետք է իրականացնել վարկավորման միջոցներով՝ դրանք հաջորդաբար մարելով շահույթի հաշվին։ Միայն նոր և իրենց չափերով շատ խոշոր ձեռնարկությունները (որոնց շինարարությունը տևում է 4—5 տարի) պետք է ֆինանսավորել հին ձևով՝ բյուջեից կատարվող ֆինանսավորման հաշվին։

Անվերադարձ ֆինանսավորման խիստ կրճատումը պետք է ուղեկցվի արտադրական (հիմնական և շրջանառու) ֆոնդերի վճարովի սկզբունքի ներդրման հետ։ Պարզ է, որ ոչ արտադրական ֆոնդերից վճար չպիտի գանձվի։ Նպատակահարմար է վճար գանձել նաև չտեղակայված սարքավորումների այն մասից, որ գերազանցում է պլանով նախատեսված պաշարները։ Ինչ վերաբերում է շրջանառու ֆոնդերին, ապա դրանց մի մասը գոյանում է բանկային վարկի հաշվին և այդ մասից վճար չպետք է գանձել։ Բայց այդ վարկի գծով բանկային տոկոս պետք է սահմանել ֆոնդերի համար տրվող վճարի մեծության համեմատ։

Ֆոնդերի վճարովիությունը կարող է երկակի դեր խաղալ. ա) տնտեսավար-



ները չեն ձգտի ավելի ֆոնդեր ձեռք բերել, նրանք ամեն կերպ կձգտեն ունենալ անհրաժեշտ չափի ֆոնդեր. բ) դա կնպաստի ստեղծելու ավելի կամ պակաս հավասար պայմաններ շահույթի գոյացման համար, քանի որ ինչքան մեծ են ֆոնդերը, որքան բարձր է ֆոնդազինվածությունը, շահույթից ֆոնդերի համար վճարումներն այնքան շատ կլինեն։

Այսպիսով, ձեռնարկություններում արտադրության նյութատեխնիկական հիմքերի աճումն ու կատարելագործումը, նրա աշխատողների ֆոնդազինվածության որակական ու քանակական աճը պետք է կախվածության մեջ դնել ձեռնարկության տնտեսական գործունեությունից, նրա շահույթից։ Բայց դա քիչ է։

Շահույթի մի զգալի մասը պետք է օգտագործել տվյալ ձեռնարկության աշխատողների նյութական խրախուսման համար, որի շնորհիվ անմիջական կապ կստեղծվի տնտեսական արդյունքի և անձնական նյութական շահագրգռվածության միջև։

Ուստի պետք է բյուջեում և ներճյուղային վերաբաշխման համար ձեռնարկություններից շահույթի գանձումը կրճատել այն հաշվով, որպեսզի շրջանառու միջոցների ավելացումը, սարքավորման մոդեռնացումը և նոր տեխնիկայի արմատավորումը, գործող ձեռնարկություններում նյութական խրախուսման ֆոնդի ստեղծումը կատարվեին առաջին հերթին շահույթի հաշվին։ Այս բոլորը, միջոցների ճիշտ օգտագործման պարտավորության հետ մեկտեղ, ինչպես նաև դրանց ֆինանսավորման աղբյուրները գտնելու պարտավորությունը, պետք է դնել ձեռնարկության վրա։

Ինչպես ինքնարժեքի իջեցման ուղղությամբ միջոցներ ձեռնարկելու, այնպես էլ արտադրանքի առանձին տեսակների գները բարձրացնելու միջոցով անհրաժեշտ է վերացնել գնի և ինքնարժեքի մակարդակների խզվածության հետևանքով պահպանվող դոտացիայի սիստեմը։

Ներկայումս ամորտիզացիոն ֆոնդի մի զգալի մասը կենտրոնացվում է և ձեռնարկությունները զրկվում են սարքավորման մոդեռնացման միջոցները տնօրինելու իրավունքից։ Հօգուտ տեխնիկական առաջադիմության այնպիսի ձևի նյութական շահագրգռվածության, ինչպիսին մոդեռնացումն է, անհրաժեշտ է ամորտիզացիայի ամբողջ ֆոնդը թողնել ձեռնարկության տնօրինության ներքո։

Այսպիսով, անհրաժեշտ է արտադրական նպատակներով ստեղծել ձեռնարկության ֆոնդ, որ կգոյանա՝ ա) ամորտիզացիոն մասհանումներից. դա ըստ ձեռնարկության հայեցողության կօգտագործվի կապիտալ նորոգման կարիքների և սարքավորումների մոդեռնացման համար և բ) ստացվող զուտ եկամտի մի մասից, որ կթողնվի ձեռնարկությանը արտադրության ընդլայնման գծով կապիտալ շինարարության և նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի (բացի այն միջոցներից, որ տրվում են կապիտալ ներդրումների համար կենտրոնացված կարգով հեռանկարային պլաններով նախատեսվող առաջադրանքներին համապատասխան) և շրջանառու միջոցների անհրաժեշտ ավելացման համար։

Ձեռնարկության ֆինանսական բազան կազմող հիշատակված ֆոնդի չափերը պետք է սահմանեն վերադաս օրգանները, դիֆերենցված կարգով, նկատի առնելով ճյուղի նշանակությունը և ձեռնարկության առանձնահատկությունը, նրա զարգացման և արտադրության ավելացման հեռանկարը, տեխնիկական առաջադիմության տեմպերը և այլն։

Արդյունաբերական ձեռնարկությունների արմատական բարելավումը պահանջում է գների սիստեմի կատարելագործում, դրանց զգալի մոտեցումը արժեքին, այն հաշվով, որ գներն արտահայտեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ իրական ծախքերը և ձեռնարկության հաջող գործունեության պայմաններում նրան ապահովեն պատշաճ եկամտաբերություն, մի բան, որ տնտեսական հաշվարկի սիստեմի գործունեության տարրական պայմանն է։ Գների մակարդակը կարող է կողմնորոշող դեր խաղալ նոր ստեղծվող արտադրանքի և կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը գնահատելիս։ ՍՄԿՊ XXII համագումարը հսկայական նշանակություն տվեց գների խթանող դերի բարձրացմանը։

Ձեռնարկությունների առաջընթացը և տնտհաշվարկի կատարելագործումը պահանջում են արմատապես բարելավել նյութական խրախուսման սիստեմը, ուղղակի (անմիջական) կապ ստեղծել ձեռնարկության գործունեության արդյունքի և նրա բոլոր աշխատողների աշխատանքի վարձատրության մակարդակի միջև։ Այդ կապի բացակայությունն այժմ արտադրության աշխատողների նյութական շահագրգռվածության կազմակերպման գլխավոր թերությունն է։ Դա հանգեցնում է հակասության՝ հասարակական (պետական) և ձեռնարկության աշխատողների անձնական շահերի միջև։

Ձեռնարկությունների ղեկավարները հիմա իրավասու չեն աշխատողների վարձատրությունը փոփոխելու, արտադրության մեջ աչքի ընկնող առաջավորներին նյութապես խրախուսելու։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է աշխատանքի գծով կենտրոնացված պլանային առաջադրանքը սահմանափակել միայն ձեռնարկության կոլեկտիվի աշխատավարձի ընդհանուր ֆոնդը սահմանելով և թույլ տալ գործարանի կառավարչությանը արհմիութենական կազմակերպության հետ միասին, լուծելու աշխատանքի և վարձատրության բոլոր հարցերը։

Նման պայմանները ձեռնարկության կառավարման համար կպահանջեին այնքան աշխատողներ, որ անհրաժեշտ է ձեռնարկության նորմալ աշխատանքի համար. ձեռնարկությունը կարող էր միևնույն ֆինանսական ռեսուրսներով զգալիորեն խթանել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ավելացնել նորմայից ավելի արտադրանք տվողների աշխատավարձը և, ընդհակառակը, իջեցնել վատ աշխատողներինը։

Աշխատողների նյութական շահագրգռվածության գործում խոշոր նշանակություն ունի պարգևատրումը։ Եթե ձեռնարկությանն իրավունք տրվի պլանային առաջադրանքների կատարման համապատասխան ինքնուրույն կերպով սահմանելու պարգևատրման չափը, ապա այն կդառնա աշխատավարձի այնպիսի շարժուն մաս, որ կվճարվի աշխատանքի արտադրողականության բարձրացման համեմատ։ Պարգևատրման ավելացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ համամասնական չափով կապահովի արտադրանքի աճը և նրա բարձր որակը։

Պետք է նշել, որ ներկայումս տեխնիկական հիմնավորված նորմաներն արմատավորելիս հարմարվում են աշխատավարձի գոյություն ունեցող մակարդակին, այսինքն՝ նորմավորումը կատարում է իրեն ոչ հատուկ աշխատանքի վարձատրությունը կարգավորողի ֆունկցիա։ Երբ վերացվի այդ թերությունը, ապա աշխատավարձի այն մասը, որ ներկայումս ստանում է ցածր նորման գերակատարած բանվորը, կարող է ստանալ պարգևատրման ձևով։

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում նոր տեխնիկայով



աշխատանքի զինումը իրականացվում է մեքենաշինության շնորհիվ։ Տեխնիկական առաջադիմությունն արտադրության բոլոր ճյուղերում կախված է արտադրանքի քանակից ու որակից։ Ուստի մեքենաշինարարների նյութական խթանման հարցը ընդհանրապես տեխնիկական առաջադիմության արմատական հարցերից մեկն է։

Վերջին տարիներս լուրջ միջոցներ են ձեռնարկվել (թեև դրանք պրոբլեմը ամբողջությամբ չեն սպառում) նոր մեքենաների ստեղծման ու ներդրման բնագավառում նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու գծով։ Նոր տեխնիկան լավ օգտագործելու համար աշխատողներին նյութապես խրախուսելու հարցը թերամշակ է։

Նոր տեխնիկայով արտադրության բարձր հագեցվածությունը և նրա զարգացումը, թողարկվող արտադրանքի քանակն ու որակը, մեծ մասամբ, որոշվում են մեքենաների գործունեությամբ ու դրանց օգտագործման աստիճանով։ Փոխվում է նաև կենդանի աշխատանքի բնույթը, բանվորի գլխավոր ֆունկցիան դառնում է մեքենաների կառավարումը, դրանց աշխատանքի ընթացքին հետևելը։ Ո՛չ միայն կենդանի աշխատանքի տնտեսումը, այլև աշխատանքի միավորի մեքենայական ժամանակի ծախսումը խրախուսելու համար պետք է որոշ համամասնությամբ աշխատողներին նյութապես խրախուսել աշխատանքի արտադրողականության ամեն մի բարձրացման համար (անկախ այդ աճման աղբյուրը նկատի առնելու)։

Ձեռնարկության աշխատողների նյութական խրախուսման գործող սիստեմի խոշոր թերությունը նաև պարգևատրման ֆոնդի խիստ անբավարար չափն է։ Շատ ձեռնարկություններում պարգևատրման ֆոնդ ընդհանրապես չկա, կամ այն շատ չնչին է, իսկ ձեռնարկությունների մի մասում էլ գոյություն ունեցող «ձեռնարկության ֆոնդը» էական որևէ դեր չի խաղում։ Արդյունաբերության և շինարարության մեջ (ուր պարգևատրման սիստեմը ավելի զարգացած է) խրախուսման ֆոնդը, պարգևատրման գումարը և կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման, հանգստյան տների ու առողջարանների ուղեգրեր ձեռք բերելու ու միանվագ օգնություն ցույց տալու համար միջոցները 1963 թվականին միջին հաշվով հասնում էին 355 մլն. ռուբլու, որը մեկ աշխատողի հաշվով կազմում է 12 ռուբլի, այսինքն՝ ամսական մեկ ռուբլի։

Աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու և արտադրությունը կատարելագործելու համար ներկայումս գոյություն ունեցող ձեռնարկության ֆոնդը նպատակահարմար է վերակազմել երկու ինքնուրույն ֆոնդերի. ա) ֆոնդեր արտադրության զարգացման համար, բ) աշխատողների կոլեկտիվ նյութական խրախուսման ֆոնդեր՝ նրանց համատեղ աշխատանքի արդյունքի համար։

Կոլեկտիվ նյութական խրախուսման ֆոնդը պետք է օգտագործվի միայն տվյալ ձեռնարկության աշխատողների պարգևատրման, նյութական օգնություն ցույց տալու, բնակարանային-կենցաղային պայմանները բարելավելու և կուլտուրական սպասարկման նպատակներով։ Այդ ֆոնդը պետք է գոյանա շահույթից կատարվող մասհանումների հաշվին, բայց նրա մեծությունը պետք է սահմանել ոչ թե շահույթի, այլ արտադրական անձնակազմի աշխատավարձի համեմատ։

Պահանջվում է վճռականորեն փոփոխել ձեռնարկության աշխատողների և կոլեկտիվների նյութական խրախուսման սիստեմը։

Արտադրության կատարելագործումն իր արտահայտությունն է գտնում արտադրական (հիմնական և շրջանառու) ֆոնդերի առավել լրիվ օգտագործման, ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու մեջ։ Արտադրության արդյունավետության ցուցանիշներ են հանդիսանում ֆոնդահատույցի բարձրացումը, ռեսուրսների և արտադրանքի հարաբերության փոփոխությունը, արտադրանքի առավել արագ աճը հիմնական և շրջանառու ֆոնդերի համեմատ։ Ուստի արտադրության արդյունավետության ցուցանիշը, նյութական խրախուսման հիմքը պետք է ծառայի ոչ թե պլանի գերակատարման աստիճանը, այլ անցյալի համեմատ արտադրության բարելավման (կատարելագործման) աստիճանը։

Նման պայմաններում ձեռնարկության աշխատողների կոլեկտիվը կպայքարի հանուն շրջանառու ֆոնդերի (ներառյալ նաև աշխատավարձը) արտադրանքի միավորի վրա ծախսման նորմաների առավելագույն կրճատման և կբարձրացնի հիմնական ֆոնդերի բեռնվածությունը։ Կոլեկտիվը շահագրգռված կլինի ոչ թե ռեզերվները թաքցնելու (որպեսզի ավելի հեշտ կատարի ու գերակատարի պլանը և պարգև ստանա), այլ դրանք մոբիլիզացնելու գործում։ Կաճի նաև պլանի կազմակերպչական և մոբիլիզացնող դերը, քանի որ կոլեկտիվը շահագրգռված կլինի պլանավորված ժամանակաշրջանում անցյալի համեմատ բարելավել արտադրությունը։

Ղեկավար, ինժեներա-տեխնիկական աշխատողների, ծառայողների և բանվորների պարգևատրումը պետք է կատարվի ձեռնարկության իրական նվաճումների համար, որպեսզի ձեռնարկության աշխատողները անմիջականորեն ձգտեն լիովին օգտագործել կարողությունները, կոլեկտիվներում ստեղծել անմիջական շահագրգռվածություն՝ տեխնիկական առաջադիմության և արտադրանքի նոր տեսակների թողարկման, արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի անընդհատ կատարելագործման գործում։ Դրան համապատասխան ամեն մի ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականության իրական աճման և նյութական ծախսումների տնտեսման հաշվին նպատակահարմար է ստեղծել պարգևատրման միասնական ֆոնդ այն չափով, որ արտադրության արդյունքի մեջ ապահովվի աշխատողների նյութական շահագրգռվածության էական բարձրացման հնարավորությունը։ Այդ ֆոնդը հարկավոր է ստեղծել ոչ թե պլանային առաջադրանքների կատարման կապակցությամբ, այլ այդ առաջադրանքների կատարման պայմաններում, կապված արտադրանքի փաստացի ինքնարժեքի իջեցման կամ եկամտաբերության բարձրացման հետ։ Ըստ որում պետք է ուշադրություն դարձնել անցյալ տարիների մակարդակի հետ ունեցած համեմատությանը, տվյալ ժամանակաշրջանում ամեն մի ձեռնարկության ձեռք բերած նվաճումներին, ամբողջ ճյուղի, կամ համասեռ ձեռնարկությունների խմբի նվաճումներին։ Պարգևատրումները պետք է առաջադիմական կարգով աճեն, իսկ տնտեսական ցուցանիշներն իջնելու դեպքում՝ նվազեն։

Մոտակա ժամանակներում արդեն անհրաժեշտ է զգալիորեն բարձրացնել ձեռնարկություններում ստեղծվող պարգևատրման ֆոնդերը (հասցնելով այն ձեռնարկությունների աշխատողների ստացած աշխատավարձի ընդանուր ֆոնդի 8—10 տոկոսին)։ Պարգևատրման ֆոնդի աղբյուրները, բացի ներկայումս



գործող պարգևատրման միջոցներից, պետք է հանդիսանան այն միջոցները, որոնք կստացվեն պարգևատրման նոր սիստեմը կիրառելու շնորհիվ աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացման և նյութական ծախսումների տնտեսման հաշվին։

Տնտեսական ղեկավարման հետագա ամրապնդման գործում մեծ նշանակություն ունեն հիմնական և շրջանառու միջոցների, ինչպես նաև արտադրանքի տնօրինության ավելորդ կենտրոնացման վերացումը, ձեռնարկությունների միջև ուղղակի տնտեսական կապերի սիստեմ մտցնելը՝ ուղղակի ապրանքաշրջանառության սկզբունքով։

Այդ նպատակով անհրաժեշտ է ընդլայնել ձեռնարկությունների իրավունքները հիմնական ու շրջանառու միջոցների տնօրինության, դրանք ձեռք բերելու և ավելորդը իրացնելու, ինչպես նաև ապրանքաշրջանառության կարգով ձեռնարկությունների միջև ուղղակի տնտեսական կապերի հիման վրա դրանց միջև արտադրանքն իրացնելու գործում, ընդ որում կենտրոնացված բաշխման սիստեմը պետք է պահպանել միայն դեֆիցիտային ապրանքների նկատմամբ։

Տնտեսական հարաբերությունները նպատակահարմար է խարսխել պատվերների սիստեմի և դրանցով իսկ պայմանավորվող մատակարարման ու նյութական սանկցիաների ձեռնարկությունների կողմից անմիջականորեն սահմանվող պայմանների վրա։ Ապրանքաշրջանառության հիմունքներով ձեռնարկությունների միջև արտադրության միջոցներն իրացնելը և ձեռնարկությունների ու առևտրական կազմակերպությունների միջև սպառման առարկաներն իրացնելը (և միայն դեֆիցիտային արտադրության միոցների ու սպառման առարկաների գծով՝ հաստատված գերլիմիտային ընդհանուր ֆոնդի սահմաններում), անցումը ուղղակի տնտեսական և պայմանագրային կապերի, բարձրացնում են մատակարարների կարգապահությունը և պատասխանատվությունը իրենց պարտականությունը կատարելու գործում, ուժեղացնում են սպառողների ներգործությունը որոշակի ասորտիմենտի և որակի արտադրանքի թողարկման վրա, հնարավորություն են տալիս արտադրության պահանջները և շուկայի պահանջարկը բավարարել ժամանակին և ավելի հստակ։ Եթե նախկինում ձեռնարկությունները ձգտում էին որքան հնարավոր է շատ թողարկել մեկ անգամ արդեն յուրացված տեսակի արտադրանքը, ապա այժմ (սպառողների հետ ուղղակի կապի պայմաններում) նրանք պետք է ուշի ուշով հետևեն կոնյունկտուրային, օպերատիվ կերպով փոխեն անվանացանկը և ասորտիմենտը այն շինվածքների, որոնք արդեն չեն սպառվում, դարձել են չգնայուն ապրանքներ։

Տնտեսության պլանային սիստեմը պահանջում է ֆինանսական ռեսուրսների կենտրոնացված բաշխում համապետական նշանակություն ունեցող կապիտալ ներդրումների և համապետական այլ կարիքների համար։ Սակայն ձեռնարկությունների իրավունքներն ընդլայնելու հետ մեկտեղ, անհրաժեշտ է տեղերում ավելացնել ֆինանսական միջոցները, ընդլայնել նրանց ֆինանսական իրավունքները, ինչպես նաև զարգացնել ձեռնարկությունների երկարատև ու կարճատև վարկավորման ձևերը. դա ֆինանսական հսկողությունը կմոտեցնի արտադրությանը, ավելի ճկուն կդարձնի այն ձեռնարկություններին ռեալ կերպով ցույց տրվող օգնության գործում։ Դրա հետ մեկտեղ տեղական օրգանների և ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը պետք է ուղեկցվի համապետական պլանային առաջադրանքների կատարման, պետական, պլանային և ֆինանսական կարգապահությունը խստորեն պահպանելու, տեղայ-

նություն թույլ չտալու համար իրենց պատասխանատվության բարձրացման հետ։

Ձեռնարկությունը պետք է արտադրանքի իրացումից ստացված ընդհանուր գումարի հաշվին իրականացնի հետևյալ ծախսումները. վերականգնի նյութական ծախսումները (արտադրության միջոցների սպառում), սահմանված չափով հատկացումներ կատարի պետական բյուջե մուծելու համար, մարի վարկը, համալրի արտադրական և կուլտուր-կենցաղային ֆոնդերը։ Մնացած գումարը կլինի վարձատրության ֆոնդը, որ բաղկացած կլինի երկու մասից՝ հիմնական աշխատավարձը և պարգևատրումը։ Այսպիսի սիստեմը ձեռնարկությանը կստիպի արտադրանքի թողարկումը համարեցնել շուկայի պահանջներին, պայքարել նրա որակի բարձրացման համար, իրականացնել խնայողության ռեժիմը, հասնել աշխատանքի բարձր արտադրողականության։



Տնտեսական կառավարումը կատարելագործվում է կոմունիստական շինարարության պահանջներին համապատասխան. այն պետք է բավարարի հասարակական խոշոր արտադրության և խրախուսման հասարակական ու նյութական ամենալավ ձևերի ստեղծման, տնտեսության անընդհատ աճի, տեխնիկական հետագա առաջընթացի ռեզերվների մոբիլիզացման պահանջները, նպաստի սոցիալիստական կարգապահության դաստիարակմանը և տնտեսավարման կոմունիստական հմտությունների մշակմանը։

Կոմունիզմին անցման ժամանակաշրջանում տնտեսավարման մեթոդների կատարելագործումը ենթադրում է սոցիալիստական դեմոկրատիզմի, տեղական նախաձեռնության, տնտեսական շինարարության պրակտիկայում աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական ինքնագործունեության հետագա զարգացում, արտադրության պլանավորման մեջ տեղական մարմինների և ձեռնարկությունների դերի ուժեղացում՝ արմատական հարցերի գծով կենտրոնացված ղեկավարումը պահպանելու և ավելի ամրապնդելու պայմաններում։



# ՆԵՐՀԱԿ ԻԴԵՈԼՈԳԻԱՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Սոցիալիստական և բուրժուական իդեոլոգիաների պայքարը դարից ավելի պատմություն ունի, բայց այն երբեք այսօրվա սրության աստիճանը չի ունեցել։ Բանն այն է, որ այսօր աշխարհը բաժանված է երկու հակադիր բանակների՝ սոցիալիստական և կապիտալիստական։ Առաջինը հիմնված լինելով հանրային սեփականատիրության վրա, նոր է բողբոջում և մարդկային հասարակության երջանիկ գալիքն է ցույց տալիս՝ մարդու բոլոր տեսակի պահանջների բավարարումը և նրա ստեղծագործական ուժերի անարգել զարգացումը։ Երկրորդը, հանգչելով մասնավոր սեփականատիրության վրա, իր գոյության փաստով արդեն դառնացնում է մարդկության կյանքը, արգելքներ հարուցում նրա տիտանական թռիչքների առաջ՝ որպես հետադեմ մի ուժ։ Այլ կերպ ասած, սոցիալիզմն ու կապիտալիզմը հակադիր են իրենց բնույթով, զարգացման հեռանկարներով ու մարդկության կյանքում խաղացած այսօրվա դերով։ Այս ամենի հետևանքով այդ երկու ֆորմացիաների իդեոլոգիաների հարաբերությունը անհաշտելի հակադրության բնույթ ունի։ Այդ երևույթի պատճառը պետք է փնտրել մեկ ուրիշ փաստի մեջ ևս։

Սոցիալիզմի առաջատար ուժը բանվոր դասակարգն է, որն իր քաղաքական տիրապետությունն օգտագործում է վերջ տալու ամեն մի քաղաքական տիրապետության՝ լիակատար կոմունիզմի կառուցման միջոցով։ Իսկ կապիտալիզմի օրոք իշխանությունը բուրժուազիայինն է, որը ձգտում է հավերժացնել այն, պահպանելով ու ամրացնելով մասնավոր սեփականատիրությունը։ Ոչ բուրժուազիան կարող է իր հետապնդած նպատակից հրաժարվել, և ոչ էլ բանվոր դասակարգը՝ իր պատմական միսիայից։ Քանի որ սոցիալիստական ու բուրժուական իդեոլոգիաները հիշյալ դասակարգերի առաջադրած նպատակների ձևակերպումն ու հիմնավորումն են, այդ պատճառով էլ դրանց համերաշխությունն անհնար է։

Խաղաղ գոյակցություն հնարավոր է և անհրաժեշտ սոցիալիստական և բուրժուական պետությունների միջև, որ նշանակում է՝ վիճելի հարցերը լուծել ոչ թե պատերազմների, այլ խաղաղ բանակցությունների, փոխադարձ բանական զիջումների միջոցով, ինչպես այդ տեղի ունեցավ Կուբայի հարցում 1963 թվականին։ Այս դեպքում դասակարգերն իրենց առաջադրած նպատակներից չեն հրաժարվում, նրանք շարունակում են հետապնդել այդ նպատակները, պետությունների հարաբերությունների հարցում ղեկավարվելով ոչ թե պատե-

րազմների, այլ խաղաղ գոյակցության սկզբունքով։ Այդ սկզբունքի հետևողական կիրառումը վիժեցնելու նպատակով, բուրժուական իդեոլոգիայի մի շարք ներկայացուցիչներ պահանջում են խաղաղ գոյակցություն ոչ միայն տարբեր պետական սիստեմների, այլև սոցիալիստական ու բուրժուական իդեոլոգիաների միջև։ Նրանք ասում են. «Անըմբռնելի է, որ քաղաքական գծով խաղաղ համակեցության կողմնակից պաշտպան մեկը դեմ ըլլա նույն համակեցության՝ զուտ գաղափարական գծով» («Հուսաբեր», 1963, 22/7)։ Անըմբռնելի ոչինչ չկա։ «Քաղաքական գծով համակեցությունը» պրոլետարիատի դասակարգային պայքարի գործելակերպի հարց է, իսկ գաղափարական համակեցությունը կդառնա իր դավանած սկզբունքներից, այսինքն՝ հետապնդած նպատակից հրաժարվելու հարց։

Բանվոր դասակարգի նպատակը կոմունիզմն է։ Ինչպե՞ս իրականացնել այդ նպատակը, երբ աշխարհի 1/3 մասում նա արդեն իշխանության տերն է՝ արյունալի պատերազմների՞, թե՞ խաղաղ ստեղծագործական աշխատանքով կոմունիզմի առավելությունները հանրության սեփականությունը դարձնելու, ամենուրեք մասսաներին իր կողմը գրավելու և այդ կերպ կապիտալիզմի դիրքերը թուլացնելու նպաստավոր պայմաններում այն մեկընդմիշտ վերացնելու միջոցով։ Սա դասակարգային պայքարի տակտիկայի հարց է, որը պատմական ներկա պայմաններում, բանվոր դասակարգի համար ստրատեգիական մի ամբողջ կուրս, բուրժուական հասարակության դեմ տարվող հետևողական կռվի լավագույն զենքն է դառել։ Նույնը ասել գաղափարական համերաշխության մասին, չի կարելի, որովհետև դա պահանջում է հաշտեցնել մատերիալիզմը իդեալիզմի հետ, մատերիալիստական դիալեկտիկան մետաֆիզիկայի հետ, մասնավոր սեփականատիրության և մարդու կողմից մարդու շահագործումը հավերժացնող գաղափարները դրանց մեկընդմիշտ վերացնելու գաղափարների հետ, պրոլետարական դիկտատուրայի գաղափարը բուրժուական դիկտատուրայի գաղափարի հետ և այլն, որն անհնար է։

Չնայած դրան, մեր դասակարգային հակառակորդները հավատացնում են, որ առանց գաղափարների համակեցության պետությունների համակեցությունը որպես թե անհնար է։ Նրանք գրում են. «Բացահայտ է այն ճշմարտությունը, որ եթե գաղափարները հաշտվեն, այն ատեն... ամեն այլ ինչ կլուծվի, կկարգավորվի և խաղաղությունը կդառնա անքակտելի իրականություն» («Հուսաբեր», 1963, 24 հուլիսի)։ Դա պատմական իրականության բացահայտ խեղաթյուրում է։ Փաստն այն է, երբ XVI դարում Հոլանդիայում և XVII դարում Անգլիայում ստեղծվեցին բուրժուական պետություններ, դրանք երկար ժամանակ խաղաղ գոյակցեցին ֆրանսիական, ռուսական և այլ երկրների ֆեոդալական պետությունների հետ, առանց խաղաղ գոյակցության գաղափարական ասպարեզում։ Սպինոզան Հոլանդիայում, Ֆ. Բեկոնը, Հոբսը, Տոլանդը Անգլիայում հանդես եկան ֆեոդալական գաղափարախոսության դեմ որպես մարտնչող մատերիալիստներ, այն ժամանակ, երբ այդ մտածողների երկրների պետությունները խաղաղ գոյակցում էին ֆեոդալական պետությունների հետ։ Անշուշտ, ֆեոդալական և բուրժուական պետությունների խաղաղ գոյակցությունն ու դրանց գաղափարախոսությունների պայքարը բոլորովին այլ բնույթ ուներ, համեմատած սոցիալիստական և բուրժուական պետությունների խաղաղ գոյակցության ու դրանց իդեոլոգիաների պայքարի հետ։ Բայց դա արդեն այլ հարց է, որը սակայն չի հակասում այն իրողությանը, թե պետական տարբեր



սիստեմների խաղաղ գոյակցությունը պատմականորեն կապված չի եղել հակադիր իդեոլոգիաների խաղաղ գոյակցության հետ և այսօր էլ կապել հնարավոր չէ։ Ոչ մի ժողովուրդ իր պետությանը չի ների, եթե նա հարևանների հետ ունեցած վիճելի հարցերը խաղաղությամբ լուծելու հնարավորությունը կախման մեջ դնի նրանց դավանած աշխարհայացքից, որովհետև դա կլինի միջնադարյան կրոնական պատերազմների պրակտիկայի կրկնությունը։

Միջին դարերում կրոնների անհաշտելիությունը արյունահեղությունների պատճառ էր դառնում, որովհետև նրա հետևում թաքնված էին շահագործողների զուտ էգոիստական ձգտումները։ Թեև սոցիալիստական և բուրժուական իդեոլոգիաների հակասությունն ավելի խորն է ու սկզբունքային, բայց և այնպես ասել՝ «Եթե անհաշտ են գաղափարները, ապա անհրաժեշտ է անոնց ետին կանգնած զենքը» («Հուսաբեր» 24 հուլիսի, 1963), այսինքն պատերազմն անխուսափելի է, նշանակում է մոռանալ, որ այսօր միջնադար չէ և սոցիալիստական իդեոլոգիան, լինելով հումանիստական, իր դրույթների իրականացման հիմնական միջոցը համարում է ոչ թե պատերազմը, այլ խաղաղ ստեղծագործական աշխատանքը։ Սոցիալիստական սիստեմի հզորությունը սանձում է հակառակորդին։

Ոչ, ասում են հակակոմունիզմի ջատագովները, խաղաղության համար անհրաժեշտ է, որ «գաղափարների միջև հաշտություն կնքվի, առնվազն տրամադրություն մը հայտնվի, որ փոխադարձ զիջումներով և ատրճանական զարգացումով հաշտություն իրագործվի («Հուսաբեր», 1963, 24 հուլիսի)։ Սուտ է, գաղափարական զիջումները երբեք իրական խաղաղության գրավական լինել չեն կարող։ Երկրորդ ինտերնացիոնալի պատմությունը դրա լավագույն ապացույցն է։ Բուրժուազիայի ճնշման տակ է. Բեռնշտայնի, Կ. Կաուցկու, Մ. Ադլերի և երկրորդ ինտերնացիոնալի այլ պարագլուխների կատարած գաղափարական զիջումներն ամենուրեք սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները ենթարկեցին շահագործողներին, որոնք օգտվելով դրանից, հեշտությամբ բորբոքեցին համաշխարհային առաջին պատերազմը։ Մի՞թե այդ զիջման հետևանքը չէր նաև այն, որ ֆաշիստները կարողացան նախ Իտալիայում, այնուհետև Գերմանիայում և մի շարք այլ երկրներում գրավել իշխանությունը և սկսել համաշխարհային երկրորդ պատերազմը։ Կարելի՞ է արդյոք այլ կերպ բացատրել աջ լեյբորիստների գործունեությունն այսօր, նրանց կուրսը երբեմնի և ներկա գաղութային երկրների դեմ, Վիետնամի ազատասեր ժողովրդի նկատմամբ ամերիկյան իմպերիալիզմի վարած քաղաքականության ակտիվ պաշտպանությունը և այլն։ Ո՛չ, պատմական փաստերից հեռու փախչել հնարավոր չէ։ Իդեոլոգիական ճակատում խաղաղ գոյակցություն հաստատելու պահանջը անխուսափելիորեն տանում է դեպի գաղափարական զիջումներ, որը ոչ թե խաղաղությունն ապահովելու միջոց է, այլ աշխատավորությանը բուրժուազիային ենթարկելու, շահագործողների համար գործողությունների ազատություն ապահովելու, դրանով արդեն պատերազմը հավերժացնելու միջոց։ Մարքսից և Էնգելսից հետո Լենինն էր, որ քաջ գիտակցելով այս ճշմարտությունը, դուրս եկավ գաղափարական զիջումների դեմ, մարքսիզմը խեղաթյուրողներին կռիվ հայտարարեց, բանվոր դասակարգին դաստիարակեց հեղափոխական մարքսիզմի ոգով, գրոհի տարավ նրան հին աշխարհի դեմ և ստեղծեց առաջին սոցիալիստական պետությունը, որի առաջին դեկրետը եղավ խաղաղության մասին։

Խաղաղ գոյակցության պահանջը գաղափարական ճակատում սոցիալիստական իդեոլոգիայի դեմ պայքարելու ձև է։ Բանն այն է, որ մարքսիզմին հակադիր գիտական արժեք ունեցող որևէ այլ սկզբունք առաջադրել հնարավոր չէ։ Այս հանգամանքը հարկադրում է կապիտալիզմի ջատագովներին միջոցներ որոնել իրենց թուլացող գաղափարական ազդեցությունը մասսաների վրա պահպանելու համար։ Նրանցից ոմանք մարքսիստներից պահանջում են հրաժարվել բուրժուական իդեոլոգիայի հետևողական մերկացումից և աշխարհայացքային զիջումներ անել դասակարգային հակառակորդին, հիմք ընդունելով խաղաղ գոյակցության նշանաբանը («Հուսաբեր», 1963, 5 փետրվարի)։ Իր ժամանակին Մարքսը նկատել է, որ երբ բուրժուազիան դրության տերն է դառնում, հասարակական հարցերի լուծման գիտական նկատառումները նրա գաղափարախոսները փոխարինում են ոստիկանական նկատառումներով։ «Հուսաբերը» հավատարմությամբ կատարում է իր տերերի այդ պահանջը, հակադրվելով գիտությանը։

Գիտությունն ապացուցում է, որ դասակարգերն ու նրանց գաղափարախոսությունները հավերժական չեն։ Հասարակական տնտեսական ամեն մի ֆորմացիա ունեցել է և ունի իր դասակարգային կառուցվածքը, որը փոխվել ու փոխվում է ֆորմացիաների փոփոխման հետևանքով։ Նոր դասակարգը ասպարեզ է մտնում նոր գաղափարախոսությամբ, դուրս մղելով հինը, երբ սա դադարել է պրոգրեսիվ լինելուց։ Բուրժուազիան ու նրա իդեոլոգիան պատմական այդ օրինաչափությունից դուրս չեն։ Կար ժամանակ, երբ դրանք առաջադիմական դեր էին խաղում հասարակության մեջ։ Դա ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու շրջանում էր։ Այսօր մարդկության առաջ նոր խնդիր է դրվել՝ կապիտալիզմը փոխարինել սոցիալիզմով։ Բուրժուական իդեոլոգիան այդ խնդրին ծառայել չի կարող, որովհետև իր էությամբ դա ինդիվիդուալիստական է, ներծծված է բուրժուական էգոիզմով և պատմականորեն կոչված է սպասարկելու մասնավոր սեփականատիրության ու դրա հետ կապված բոլոր տեսակի հարաբերությունների ամրացման գործին, որպես այդ հարաբերությունների անդրադարձումը մարդկանց գիտակցության մեջ։ Սոցիալիստական հասարակության կառուցման միակ թեորիան մարքսիզմն է, բանվոր դասակարգի գիտական աշխարհայացքը։

Խ. Թյությունչյանը հավատացնում է, որ «մարքսիզմը, կամ «գիտական սոցիալիզմը» միակ ուղին չէ աշխատավորությունը կապիտալիստական շահագործումեն ազատելու և քաղաքակրթության բոլոր բարիքներուն մասնակից դարձնելու համար» («Նայիրի», 1962, նոյեմբերի 18)։ Նա գտնում է, որ մարքսիզմից բացի այդ գործին է ծառայում նաև դաշնակցական «սոցիալիզմը»։ Այդ «սոցիալիզմի» ամենամեծ ներկայացուցիչ Վահան Խորենին գրել է. «Մենք գտնում ենք, որ գիտակից և հեղափոխական մարդկանց գործոն ու բարոյական կամքից, քննադատող մտքից, արդարության և ճշմարտության համար բաբախող սրտից և ուրիշի ցավին կարեկից խղճից է կախված սոցիալիզմի թագավորությունը» (Ինչ է սոցիալիզմը, Թիֆլիս, 1917, էջ 39)։ Հնարավո՞ր է արդյոք «աշխատավորությանը կապիտալիստական շահագործումեն ազատել», եթե ընտրելու լինենք Խորենու նշած, Թյությունչյանի հավանած այս ուղին։ Ինչքա՞ն պիտի սպասի աշխատավոր մարդը, որպեսզի Մորգանների ու Ռոկֆելլերների սրտերը փափկեն և խղճի խայթ զգան, բարոյական գիտակցությունը հասունանա և միտքը սկսի քննադատորեն մտածել, սոցիալիզմը իրա-



կանություն դարձնելու համար։ Այդ սպասումը վերջ չի ունենա։ Ամերիկյան իմպերիալիզմի վայրագությունները Վիետնամում այդ են ապացուցում։ Բայց ենթադրենք, թե մի օր այդ երջանիկ ժամը հասավ, և մարդկությունը հանկարծ հայտնվեց «սոցիալիզմի թագավորության» մեջ։ Ի՞նչ է իրենից ներկայացնելու այդ «թագավորությունը»։ Դա ունենալու է «հասարակական կապիտալիստական բովանդակություն և սոցիալիստական ձև ու կազմակերպություն», պատասխանում է Խորենին («Երբ և ինչպես պետք է լինի սոցիալիստական հեղափոխություն», էջ 78)։ Այլ կերպ ասած, Խորենու «սոցիալիզմը» և դրան հասնելու ուղին ոչ մի կապ չունեն այն սոցիալիզմի հետ, որն անհրաժեշտ է աշխատավոր մարդուն, որին նա հասել է աշխարհի $1/3$ մասում և ձգտում է իրականացնել ամենուրեք։ Ահա թե ինչու մարքսիզմի ցույց տված ուղին եղել և մնում է միակ ճիշտ ուղին։

Բուրժուական իդեոլոգիան իր պատմական դերն արդեն կատարել է, նա պետք է որ ասպարեզից հեռանա։ Սոցիալիզմի հաղթանակն աշխարհի 1/3 մասում այդ պրոցեսին նոր թափ է տվել։ Բայց սխալ է կարծել, թե հնարավոր է կարճ ժամանակամիջոցում բուրժուական իդեոլոգիան լրիվին վնասազերծել։ Այդ իդեոլոգիան կոնսերվատիվ է, նրա գոյության ձևերը շարունակում են մնալ և ազդել մարդկանց վրա անգամ այն ժամանակ, երբ դրանց ծնող հիմքերն արդեն վերացել են։ Փաստ է, որ կապիտալիստական հարաբերությունները մեր երկրում վաղուց են վերացել, բայց բուրժուական իդեոլոգիան, մնացուկների ձևով, շարունակում է գոյություն ունենալ, մինչև իսկ երբեմն աշխուժանալ և ազդել հետամնաց խավերի վրա։ Ինչպե՞ս վերջ տալ դրան։ Դրա համար արվում է երեք բան՝ նախ, առաջ է տարվում կոմունիզմի կառուցումը՝ վերացնելու համար կապիտալիզմի մնացուկները մեր տնտեսական հարաբերությունների մեջ, որոնք բուրժուական իդեոլոգիային սնունդ են տալիս, երկրորդ, ծրագրված կերպով շարունակվում է նոր մարդու կոմունիստական դաստիարակությունը, հասնելու այն բանին, որ ամեն մի աշխատավոր մարդ ունենա գիտական աշխարհայացք, և, երրորդ, բոլոր ուժերով առաջ է մղվում միջազգային սոցիալիստական հեղափոխության գործը։

Սոցիալիստական երկրների պատմությունը ցույց է տալիս, որ բուրժուական դասակարգերի վերացումը անհրաժեշտորեն հանգեցնում է աշխատավորների բարոյա-քաղաքական միասնությանը, որը միաժամանակ բուրժուական գաղափարախոսության նկատմամբ կոմունիստականի տարած հաղթանակն է։

Պատմությունը ցույց է տալիս, որ սոցիալիստական և բուրժուական իդեոլոգիաները շարունակ անտագոնիստական հարաբերությունների մեջ են եղել և այդ պայքարում միշտ էլ վերջիվերջո հաղթել է առաջինը, որովհետև գիտական է։ Բայց այդ պատմությունը միաժամանակ վկայում է, որ շրջադարձային անցքերի ժամանակ պայքարող իդեոլոգիաների հարաբերությունն ավելի սուր բնույթ է ստանում։ Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, երբ սոցիալիստական երկրների մի ամբողջ բանակ ստեղծվեց, պարզ դարձավ, որ բուրժուազիան կորցրեց իր միահեծան դերն աշխարհում, որ նորելուկ սոցիալիստական սիստեմը արագորեն ամրանալով դառնում է այն հսկա և անպարտելի ուժը, որը կոչված է աշխարհի փոփոխման, ամենուրեք կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու մեջ առաջնակարգ դեր խաղալու։ Այս նոր պայմաններում բուրժուազիան հանդես եկավ **տոտալ հակակոմունիզմի** նշանաբանով,

օգտագործելով բոլոր տեսակի միջոցները՝ աշխարհայացքային վեճերից մինչև
զրպարտանք։
Ինչպես օտար, այնպես և հայ բուրժուական պարբերական մամուլը լի է
հավաստիացումներով այն մասին, թե իբր մարքսիզմը «աղանդավորություն
է», «նեղ և կամայական տեսակետ է», մարքսիստները «նեղմիտ են և անհան-
դուրժող» («Նայիրի» 1962, նոյեմբերի 4), որ դաշնակցության մերկացումը
հայության «համերաշխության և միասնության պառակտում է» («Հուսաբեր».
1963, 26 հունվարի), որ խաղաղ գոյակցության ժխտումը իդեոլոգիայի բնա-
գավառում նշանակում է. «Երբ բուրժուական գաղափարախոսության տեսա-
բաններն ըսեն, թե արվեստը գեղեցկություն է, սոցիալիստական գաղափարա-
խոսության աննահանջ «ներկայացուցիչները» պետք է ըսեն անպատճառ,—
ոչ, պարոններ, արվեստը գեղեցկություն չէ, տգեղություն է» («Հուսաբեր»,
1963, հուլիսի 22)։ Եվ այլն, և այլն։ Այս բամբասանքը բուրժուական մտքի
սնանկության նշան է միայն, նշան այն բանի, որ մեր հակառակորդներն ըն-
դունակ են իրենց տգիտությունը վերագրել ուրիշի, որպեսզի չմերկացվեն
կեղծիքի և ստախոսության մեջ։
Սակայն մերկապարանոց զրպարտանքը, մարքսիզմի ակնհայտ խեղա-
թյուրումն ու շեմքից մերժելը հակակոմունիզմի մի ձևն է միայն։ Բանն այն է,
որ սոցիալիստական սիստեմի գոյությամբ կապիտալիզմն այնպես է մերկաց-
վել, որ բուրժուազիայի գաղափարախոսներից ոմանք էլ փորձում են գիտական
սոցիալիզմի թեորիան հերքել, հավատացնելով, որ կապիտալիզմի զարգացումը
որպես թե տանում է դեպի կապիտալիզմի և կոմունիզմի սինթեզ։ Այդ սինթեզը
տեղի է ունենում առաջին հերթին բուրժուազիայի և պրոլետարիատի դասա-
կարգային հակամարտության վերացման, մի նոր հարմոնիկ հասարակության
ձևավորման միջոցով, հավատացնում են Ուեյլը Անգլիայում, Կյոնինգն ու
Շելսկին՝ Արևմտյան Գերմանիայում, Նավասարդյանը, Խաթանասյանը, Թյու-
թյունչյանը՝ Բեյրութում և այլն։
Հայտնի է, որ բուրժուական հասարակության դասակարգերի անտագոնիս-
տական հարաբերության հիմքը մասնավոր սեփականությունն է։ Որպեսզի
բուրժուազիայի և պրոլետարիատի միջև եղած հակամարտությունը վերանա,
անհրաժեշտ է վերացնել դրա տնտեսական հիմքը։ Վ. Նավասարդյանը այն կար-
ծիքին է, որ կգա մի ժամանակ, երբ «ընդհանրապես իրենց էության մեջ որոշ
ուղղումների ու սրբագրությունների պիտի ենթարկվեն այդ երկու սկզբունքներն
էլ՝ թե մասնատիրականը ու թե համայնատիրականը և նրանք պիտի դադարեն
բացարձակ հակամարտություններ լինելուց» («Հայրենիք», 1923, № 41, էջ 59)։
Քառասուն տարի հետո անդրադառնալով նույն խնդրին, դաշնակցության մեկ
այլ պարագլուխ՝ Ե. Խաթանասյանը գրում է. «Կա երկընտրանքի մեկ ուրիշ
ուղի, հաշտության մի ապրելաձև ստեղծելու, ուր բացարձակ կոչված պայ-
քարը դադարի և գոյանա մի համակեցություն» («Բագին», 1963, № 1, էջ 59)։
Իսկ Խ. Թյությունչյանը աշխատում է ցույց տալ այն ուղին, որով որպես թե
ընթանում են այդ հակամարտության վերացումն ու համակեցության ստեղծու-
մը։ Այդ ուղին բաժնետիրական ընկերությունների կազմակերպումն է, ասում
է նա, որն իբր թե վերջ է տալիս սեփականատիրության կենտրոնացմանը փոք-
րամասնության ձեռքում և տնտեսական ձեռնարկություններն ու դրանցից
ստացվող եկամուտը մատչելի է դարձնում աշխատավոր դասակարգին («Նա-
յիրի», 1962, նոյեմբերի 18)։



Ամենից առաջ մասնատիրության և համայնատիրության հաշտեցման թեորիան ցնորամտություն է, որովհետև դրանք մեկը մյուսին ժխտող սկզբունքներ են։ Մասնատիրությունը պահանջում է, որ մարդկության մեծամասնությունը սեփականազուրկ լինի, որպեսզի փոքրամասնությունը կարողանա առասպելական հարստություն կուտակել, իսկ համայնատիրությունը ժխտում է անհատ մարդկանց կամ փոքրաքանակ խմբակցության հարստության կուտակման ամեն մի հնարավորություն։ Մասնատիրության տիրապետման շրջանում համայնատիրություն լինել չի կարող, և ընդհակառակը։

Եվ որովհետև, մասնատիրությունն ու համայնատիրությունը բացարձակ հակադիր սկզբունքներ են, այդ պատճառով էլ հիշյալ սկզբունքներ ներկայացնող դասակարգերը երբեք հաշտվել չեն կարող, նրանց միջև եղած պայքարը կարող է դադարել միմիայն բուրժուազիայի վերացումով։ Այս է ուսուցանում պատմության փորձը։ Երկրորդ, բաժնետիրական ընկերությունները կապիտալիստական աշխարհում աշխատավոր դասակարգի վիճակը միայն վատթարացնում են, որովհետև այդ ընկերությունների ստեղծումով մոնոպոլիաները չեն վերանում։ Այդ բանն ընդունում է նաև Թյությունչյանը։ Պահպանվող ու հզորացող մոնոպոլիաները բաժնետիրական ընկերությունների միջոցով յուրացնում են աշխատավորների խնայած կոպեկները, օգտագործելով դրանք բանվորների շահագործումն ավելի սաստկացնելու համար։

Հակակոմունիզմի բոլոր ներկայացուցիչները չեն, որ աշխատում են կապիտալիզմը կապել սոցիալիզմի հետ։ Կան նաև այնպիսիները, որոնք գիտակցելով կապիտալիզմի ու սոցիալիզմի անհամատեղելի լինելը, իրենց կռիվը սոցիալիզմի դեմ տանում են, փորձելով հավերժացնել այն հաստատությունները, որոնց գոյությունը պայմանավորված է մասնավոր սեփականատիրության գոյությամբ։ Այդ կարգի հակակոմունիստներից Բուխհայմը գտնում է, որ պետությունը քաղաքական այն ինստիտուտներից է, որը կոչված է պաշտպանելու անհատի ազատությունը։ Առանց պետության կստեղծվի անարխիա և անհատը կկորցնի իր ազատությունը։ Պետության մահացումը տոտալիտար կամայականության համար ճանապարհ կհարթի։ Ուստի, կոմունիզմի իրականացումը, որը հանգեցնելու է պետության մահացման, մարդկության համար չարիք է, պետք է կասեցնել, ամեն կերպ խափանել, ասում է նա։

Անկասկած, դասակարգային հասարակությունն առանց պետության լինել չի կարող։ Իր բոլոր բացասական կողմերով հանդերձ, այնուամենայնիվ, պետությունը դասակարգային հասարակության մեջ կատարում է նաև որոշ դրական դեր։ Բայց հիմնովին սխալ է, թե պետությունը պաշտպանում է անհատի ազատությունը։ Ճիշտ հակառակը, պետությունը անհատին ենթարկում է իր ներկայացրած դասակարգին։ Եթե այդ անհատը հակադիր դասակարգից է, ապա պետությունը ոտնահարում է նրա իրավունքներն ու ազատությունը և բանտ է նետում նրան՝ եթե նա փորձում է հակադրվել։ Իսկ եթե հիշյալ անհատը իշխող դասակարգից է, այդ դեպքում պետությունը սահմանափակում է նրա ազատությունը հանուն դասակարգի շահերի։ Երկու դեպքում էլ պետության առկայության պայմաններում անհատը բացարձակ ազատ լինել չի կարող։ Անհատի ազատության հարցը կապված է նրա տնտեսական ապահովության հետ։ Մասնավոր սեփականատիրության պայմաններում անհատը տնտեսապես ապահով չէ, այդ պատճառով էլ ազատ լինել չի կարող։ Միայն կոմունիզմն

է ընդունակ բավարարելու մարդու բոլոր կարիքները, ուստի, ապահովելու նրա լիակատար ազատությունը։

Համաձայնելով Բուխհայմի հետ, Ժ. Ա. Պապիկյանը փորձում է որոշել պետության տնտեսական ֆունկցիան, որի իրականացումը որպես թե կապահովի ոչ միայն ազատություն, այլ նաև տնտեսական հավասարություն, բանվորին ևս դարձնելով գործարանատեր։ Նա գրում է. «Պետությունը, աշխատանքը վերակազմելով, պետք է դրամատերերուն և աշխատավորության միջև շահակցության այնպիսի առողջ ու ամուր կապեր ստեղծի, որ գործարանները վերածվեն տեսակ մը շահակցական ընկերակցության» («Համաշխարհային արդիացում», էջ 36)։ Բայց չէ որ կապիտալիստական աշխարհում «շահեկցական ընկերակցության» եկամուտը բաշխվում է ըստ ներդրած դրամագլխի։ Բանվորը կարող է ներդնել միայն կոպեկներ և նրա ստացած եկամուտը կոպեկներից ավելին լինել չի կարող։ Հիմնական դրամագլուխը կլինի մոնոպոլիստական կազմակերպությունների կամ խոշոր կապիտալիստների ներդրածը, որոնք և այդ «ընկերակցությունները» կենթարկեն իրենց, վերածելով դրանք բանվորների շահագործման նոր միջոցի։ Պապիկյանը փաստորեն ցանկանում է, որ բուրժուական պետությունն ավելի ակտիվորեն օգնի աշխատավորների հարստահարմանը կապիտալիստների կողմից։

Բայց գոյություն ունեցող պետական ձևը չի կարող առաջադրված նպատակը հաջողությամբ իրագործել, ասում են հակակոմունիզմի ներկայացուցիչները։ Մեր օրերի «դրական քաղաքական ուղղությունը» դա «համաեվրոպական ճիգն է կերտելու գերազգային այս կամ այն ձևի մեկ դաշնակցություն», գրում է «Հուսաբերը» (1963, 5 մարտի)։ Ազգերի ինքնորոշման գաղափարը իմպերիալիստական բուրժուազիայի համար անընդունելի է։ Եթե ամերիկյան իմպերիալիստները Վիետնամում կամ Կոնգոյում, Դոմինիկյան ռեսպուբլիկայում և այլ երկրներում ռումբով ու հրանոթով են կռվում ազգերի ինքնորոշման դեմ, ապա նրանց ծախված գրչակներն այդ բանն անում են «Հուսաբեր»-ում։ Զենքն ու խոսքը գործում են համատեղ։ «Հուսաբերը» դա միանգամայն բնական, մինչև իսկ անհրաժեշտ է համարում։ Բայց մեկ պետության զենքը բավական չէ Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի ապստամբ ժողովուրդներին սարկացնելու համար։ Այդ նպատակի իրականացումը պահանջում է բոլոր իմպերիալիստական պետությունների ուժերի միացում։ «Հուսաբերի» պահանջը՝ կերտել «գերազգային մեկ դաշնակցություն» այդ նպատակն է հետապնդում։

Հակակոմունիզմը ոչ միայն ազգային ինքնանկախ պետությունների գոյության է դեմ, այլև մերժում է մարդկության դասակարգերի բաժանված լինելու փաստը։ Նա պահանջում է, որ սովետական կառավարությունը հրաժարվի միջազգային ու ամեն տեսակի հարցերին «դասակարգային» կամ «համայնավարական գաղափարախոսության» տեսանկյունից մոտենալուց («Հուսաբեր», 1963, 26 հունվարի)։ Բայց ինչո՞ւ։ Որովհետև դասակարգային մոտեցումը «աղանդավորություն» է, պատասխանում են հակակոմունիստները։ Իսկ ո՞րն է աղանդավորություն. մարդկության բացարձակ մեծամասնությունը կազմող դասակարգի տեսակե՞տը, թե՞ մի խումբ շահագործողների տեսակետը։ Ամեն քիչ թե շատ բարեխիղճ մարդ կասի, որ՝ երկրորդը։ «Հուսաբերը» հակառակն է պնդում, որովհետև նա չի կարող հաշտվել այն իրականության հետ, որը շահագործողների դեմ է ուղղված։ Նա հայտարարում է. «Կատարելապես ան-



հիմն է մարքսյան կամ համայնավար այն տեսությունը, որուն համաձայն բոլոր ազգերու գործավոր դասակարգերը, համայնավար կազմակերպության ղեկավարությամբ ի վերջո պիտի հաջողին խորտակել իրենց գործատեր և դրամատեր դասակարգերը» (1963, 9 հունվարի)։ Բայց չէ որ աշխարհի 1/3 մասում այդ բանն արդեն տեղի է ունեցել։ Առնվազն կույր ու բթամիտ պիտի լինել չտեսնելու այն, ինչ որ փաստ է ու դրանից համապատասխան եզրակացություններ չանել։ Բայց ապարդյուն է հակակոմունիստների մեջ լուսամիտ մարդ փնտրել։ Դասակարգային ծայրահեղ էգոիզմը բթացրել է նրանց՝ ըմբռնելու ամենապարզ ճշմարտությունն անգամ։

Խ. Թյությունջյանը գտնում է, որ «մարքսիզմի և լենինիզմի ամենավիրավոր մեկ կետն է մարդկային մշակույթին տալ դասակարգային բնույթ» («Նայիրի» 1962, 18 նոյեմբերի)։ Մարքսիզմը երբեք իրեն խնդիր չի դրել «մարդկային մշակույթին դասակարգային բնույթ տալ», որովհետև դա անհնար է։ Եթե մարդկային մշակույթն իր բնույթով դասակարգային չէ, ապա նրան այդ բանը դրսից տալ չի կարելի։ Մշակույթը պճնասեր օրիորդ չէ, որին կարելի է ցանկացած շրջազգեստը հագցնել, նրա բնույթը ձևավորվում է նրա ստեղծման պրոցեսում։ Երբ արվեստագետը մի որևէ երկ է ստեղծում, նա դրա մեջ դնում է իր դասակարգի մտորումներն ու ըմբռնումները։ Երբ Չարենցը գրեց իր «Ամբոխները խելագարված» պոեմը, նա դրա մեջ դրեց հին աշխարհի դեմ կռվի ելած աշխատավոր մարդու մտորումներն ու ցանկությունները։ Նույնը կարելի է ասել ամեն մի գրողի և արվեստագետի երկի մասին։ Երբ մարքսիստներն ուսումնասիրում են այդ գործերը, նրանք նոր բան չեն դնում դրանց մեջ, այլ բացահայտում են այն, ինչ կա։ Թյությունջյանը մարքսիստներին վերագրում է այն, ինչ որ ինքն է անում։

Հայտնի է, որ դաշնակցությունն իր գործունեությամբ միշտ էլ ներկայացրել ու ներկայացնում է հայ բուրժուազիան և մեր պատմության վճռական բոլոր մոմենտներում էլ հակվել է իմպերիալիզմի կողմը, դրանով վնասելով մեր ժողովրդի շահերին։ Թյությունջյանը հավատացնում է, որ դաշնակցությունը «դրամատիրական» աշխարհի հետ կապել կարելի է միայն իր քաղաքականությամբ, բայց ոչ միաժամանակ գաղափարախոսությամբ։ «Ճիշտ է, թե դաշնակցությունը արևմտյան կայսերապաշտության կողքին համայնավարության դեմ ըլլալե բացի, թշնամական դիրքի մեջ է հանդեպ Սովետական Միության, բայց ատիկա հետևանք համարել գաղափարախոսական միության արևմտյան դրամատիրության հետ, մտքի վրիպումը մըն է առնվազն», գրում է նա («Նայիրի» 1962, 4 նոյեմբերի)։ Ահա սա ոչ այլ ինչ է, բայց եթե մի փորձ դաշնակցությանը տալ այն բնույթը, որը նա չունի։ Կարելի՞ է արդյոք գործնականում «արևմտյան կայսերապաշտության կողքին» լինել, իսկ թեորիայում գնալ այդ «կայսերապաշտության» դեմ։

Մի՞թե «կայսերապաշտության» պրակտիկ գործերն ու թեորիական սկզբունքները միմյանց հակադիր են։ Ինչպե՞ս կարող է դաշնակցությունը «թշնամական դիրքի մեջ լինել հանդեպ Սովետական Միության», բայց «գաղափարախոսական» որևէ կապ չունենալ «արևմտյան դրամատիրության հետ»։ Չէ՛ որ Սովետական Միության համոզված թշնամին հենց «արևմտյան դրամատիրությունն» է։ Պարզ է, որ Թյությունջյանի ասածը առնվազն անհեթեթություն է, որի նպատակը դաշնակցության արդարացումն է։

Հակակոմունիզմի թեորիական հիմքի կամ ժամանակակից բուրժուական

փիլիսոփայության բնորոշ գծերը իռացիոնալիզմն է, պոզիտիվիզմը և մետաֆիզիկան։ Այս հատկանիշներով օժտված մտածողությունից տրամաբանական հետևողականություն պահանջելը անմտություն է։ Նրա նպատակը մարքսիզմի և սոցիալիստական կարգերի վարկաբեկումն է, որի համար նա միջոցների մեջ խտրություն չի դնում։ Իսկ մարքսիզմն ու սոցիալիստական կարգերն առաջ են գնում, ամրանում ու փարթամանում են և ամեն քայլափոխին հերքում այն իդեոլոգիան, որն իմպերիալիստական բուրժուազիան հակադրում է սոցիալիստական իդեոլոգիային։

Սոցիալիստական իդեոլոգիայի թեորիական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է, որը հետևողական պայքար է մղում ոչ միայն ակնհայտ բուրժուական գաղափարախոսության, այլև քողարկված ռևիզիոնիզմի դեմ։ Ռևիզիոնիզմն այսօր դրսևորվում է երկու՝ մարքսիզմի հիմնական դրույթներից ակնհայտորեն հրաժարվելու և մարքսիզմը դոգմայի վերածելու միջոցով։ Հատկապես համաշխարհային երկրորդ պատերազմից հետո երկրորդ ինտերնացիոնալի կուսակցությունների գլխավոր գիծը մարքսիզմից հրաժարվելն է։ Պատերազմից անմիջապես հետո գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության նախագահ Կ. Շումախերը հայտարարեց, որ իրենց ծրագիրը կարող է հիմնավորվել ոչ թե գիտական, այսինքն՝ մարքսիստական, այլ կրոնա-բարոյական փաստարկումներով։ 1959 թվականին այդ հարցադրումը դարձավ ծրագրային կետ («Немецкая философия после 1945 года», 1964, էջ 104—105)։

Այլ կերպ ասած, օպորտունիզմը ոչ միայն պրակտիկայում, այլև թեորիայում բացահայտորեն անցավ բուրժուազիայի կողմը։ Նույնը ասել դոգմատիզմի մասին, դժվար է։ Բանն այն է, որ դոգմատիզմը հանդես է գալիս մարքսիզմ-լենինիզմի անունից, երդվում է նրա անունով, բայց վերածելով այն մեռած տառի, հնարավորություն չի տալիս ճիշտ պատկերացում ունենալու մեր էպոխայի հիմնական հարցերի մասին և ճիշտ կողմնորոշվելու իմպերիալիզմի դեմ տարած կռվում։ Այս նշանակում է, որ դոգմատիզմը բանվորական շարժման համար պակաս վտանգ չի ներկայացնում, որքան որ դա ևս բուրժուական ազդեցության արտահայտություն է, բայց սոցիալիստական իդեոլոգիայի շրջանակներում։

Սոցիալիստական ու բուրժուական իդեոլոգիաների պայքարի սրությունը որոշվում է դասակարգային պայքարի սրությամբ։ Դա կռիվ է մատերիալիզմի և իդեալիզմի, դիալեկտիկայի և մետաֆիզիկայի, վերջին հաշվով, գիտության և կրոնի միջև։ Բնորոշն այն է, որ այդ կռվում հակառակորդի դիրքերը գնալով թուլանում են, իսկ մարքսիզմի դիրքերն ամրանում, այսինքն՝ սոցիալիստական իդեոլոգիան հաղթում է բուրժուական իդեոլոգիային, ճանապարհ հարթելով կոմունիզմի համար։



# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՔՆԵՐՈՎ

Ս. ՔՈՉԱՐՅԱՆ

Հազարամյակներ են անցել այն օրից, երբ բնությունն ստեղծեց իր գլուխգործոցը՝ մարդուն, որի պրակտիկ գործունեությամբ է կերտվում պատմությունը։ Առաջին պատմական ակտը աշխատանքային գործունեությունն է՝ նյութական կյանքի արտադրությունը։ Հասարակության զարգացումը բնապատմական պրոցես է. այն կատարվում է օբյեկտիվորեն։ Իրենց կյանքի հասարակական արտադրության ժամանակ մարդիկ մտնում են անհրաժեշտ, որոշակի, իրենց կամքից անկախ հարաբերությունների մեջ, որոնց խայտաբղետ սիստեմում հեշտ չէր որսալ այն հիմնական օղակը, որը պահպանում և առաջ է մղում երևույթների ամբողջ ընթացքը։

Միմյանց հաջորդող բազմաթիվ սերունդներից կազմված մարդկությունը մեծ մտածողների պակաս չի զգացել։ Բայց բավական չէր միայն բնությունը ճիշտ բացատրել։ Անհրաժեշտ էր բացահայտել մարդկանց հասարակական գործունեության շարժառիթները։

Նախամարքսյան մտածողները չկարողացան ազատվել պատմության իդեալիստական ըմբռնման մոլորություններից։ Մետաֆիզիկական մատերիալիստների աքիլեսյան գարշապարը հասարակության զարգացման օրինաչափությունները չըմբռնելն էր։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ պատմության իդեալիստական ըմբռնումը ելնում էր մարդկանց գործունեության իդեական շարժառիթներից, չհետազոտելով այն, թե ինչից են առաջանում դրանք, չորսալով օբյեկտիվ օրինաչափությունը։

Հերոսների, ականավոր գործիչների, զորավարների ու նվաճողների, քննադատաբար մտածող անհատների հրաշակերտ դերի վերաբերյալ գաղափարներն էին կազմում նախամարքսյան սոցիոլոգների տեսական կոնստրուկցիաների առանցքը։ Նրանց կարծիքով, ժողովուրդը քարացած, անշարժ, իներտ մի զանգված էր, որն ամբողջովին կախված է հրաշագործ անհատի ամենակարող կամքից։ Անգլիական պատմաբան Թոմաս Կարլեյլը պատմության շարժումը դիտում է որպես աշխարհ ուղարկված առաջնորդների մտքերի գործնական իրացում ու մարմնավորում, հերոսի նկատմամբ մասսաների ունեցած պաշտամունքի դրսևորում։

Այսպիսով, հասարակական կյանքը մաքրվում էր ամեն մի այլ գործողությունից, բացի ամենազոր ինդիվիդների պատրանքների և իդեաների նյութա-

կանացումից։ Մի կողմում կանգնած է անբան ամբոխը, իսկ մյուս կողմում՝ առավել կամ պակաս ականավոր ու լուսավոր անհատները, որոնք կամածին այս կամ այն ձգտումներն ու հասկացություններն են ներշնչում անգործունյա այդ զանգվածին։ Ժողովրդական մասսաները խաժամուժ են, անթիվ զերոներ, որոնք կարող են հայտնի մեծության վերածվել միայն այն դեպքում, եթե նրանց գլխավորում է «քննադատորեն մտածող միավորը»։ Մտքի նման բռնազբոսիկ վարժությունների կողքին ներդաշնակ են հնչում Նիցշեի այն խոսքերը, թե մարդկությունը սոսկ փորձանյութ է առանձին բախտախնդիրների լաբորատորիայում։ Պատմությունը կերտում է «ուժեղ անհատը... գերմարդը», որը բարոյականության կանոններից դուրս ու վեր է կանգնած, որին ամեն ինչ թույլատրվում է։ Պատմության գերագույն իմաստը այդ անհատների իշխանատենչությունն է, իսկ ժողովուրդը «հոտ է, կույր ամբոխ»։ Ահա Նիցշեի «ֆյուրերիզմի» էությունը, որի ցինիկ դատողություններն այնպես ջերմեռանդորեն ողջունում էին ֆաշիստական ճիվաղները։

Իմպերիալիստական բուրժուազիայի ջատագովներն առաջադրել են, այսպես կոչված՝ «էլիտայի» պաշտամունքը։ Նրանց համար պատմությունը իշխանակիրների ստեղծագործական ջանքերի արդյունք է։

Ըստ Սոլտերի և նրա նմանների, ընտրյալների կաստան կապիտալիստական բիզնեսի ասպետներն են, որոնց կուռքն ու գործողությունների վերջնանպատակը ոսկին է։ Ռոկֆելլերներ, դյուպոններ, մելոններ, ֆորդեր՝ ահա այն ձեռնարկատերերը, որոնք ըստ սոլտերների առաջ են մղում պատմությունը։

Ուրեմն մարդկությունը ի սկզբանե տրոհվում է երկու մասի, երկու ստրատների՝ էլիտայի և ժողովրդի, ընտրյալ փոքրամասնության և խոտանի վերածված մեծամասնության։ Այս դրույթներն ու բարբաջանքները որոշակի իմացաբանական արմատներ ունեն։ Դրանց հեղինակները մետաֆիզիկորեն կտրում են տեսանելիությունը էությունից։ Անցյալի տեսարանի մտավոր վերարտադրության դեպքում երևան է գալիս գործիչների, զորավարների, կառավարիչների պատկերասրահը։ Ուռճացնելով տեսանելին, անտեսելով էությունը, իրադարձությունները մետաֆիզիկորեն մեկնաբանող մարդիկ կառչում են նրանից, ինչ որ անմիջապես աչքի է զարնում։ Թվացողը իրականի տեղ են ընդունում, ծառերի հետևում չտեսնելով անտառը, հեռու են մնում պատմության շարժիչ ուժերը հասկանալուց։ Նրանք սևեռում են պատմական իրադարձությունների արտաքին կեղևը։ Պլեխանովի պատկերավոր արտահայտությամբ տեղի է ունենում «օպտիկական խաբեություն», անհատը ստվերարկում է իրեն ծնող պատմական դարաշրջանը։

Պատմության մատերիալիստական ըմբռնման գոյավորմամբ, սոցիոլոգիայում թագավորող քաոսն ու կամայականությունը փոխարինվեցին զարմանալի ամբողջական ու հստակ ուսմունքով։ Մարքսիզմը սպառիչ պատասխան տվեց այն բոլոր հարցերին, որոնք առաջադրել էր մարդկության առաջավոր միտքը, ապացուցելով, որ հասարակության զարգացման հիմնապատճառը նյութական արտադրությունն է, որն իրականացնում են նյութական բարիքներ արտադրողները՝ աշխատավորները։ Նրանք են արտադրում հաց, միս, կաթ, կարտոֆիլ, բանջարեղեն և այլ սննդամթերքներ, հագուստ, կոշիկ, տնային սպասեղենի ապրանքներ, կառուցում բնակարաններ, ճանապարհներ, հաղորդակցության միջոցներ, արդյունահանում վառելանյութ, մետաղ, շինանյութեր, ստեղծում աշխատանքի միջոցներ ու գործիքներ։ Նրանք իրենց սեփական դրա-



մայի հեղինակներն ու գործող անձինք են, որոնց աշխատանքն է ապահովում հասարակության գոյությունն ու զարգացումը։ Նույնիսկ համեմատաբար ամենահանգիստ ժամանակներում մասսաների աշխատանքային գործունեությունն է որոշում պատմության ընթացքը։ Նրանց աշխատանքով են ստեղծվել քաղաքները, ֆաբրիկաներն ու գործարանները, էլեկտրակայանները, հզոր էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, ջրանցքներն ու տիեզերանավերը, այն ամենը, ինչ զարդարում է մարդուն և ինչով փառաբանված է նա։

Ինչպիսի բացառիկ ունակություններով էլ օժտված լինի անհատը, նրա գործունեությունը չի կարող հաջողությամբ պսակվել, եթե այն կտրված է մասսաներից, նրանց ձգտումներից, կարիքներից ու հոգսերից, դարաշրջանի հասունացած խնդիրներից, եթե նրա գործերը հակասում են օբյեկտիվ անհրաժեշտությանը, առաջընթաց շարժման տենդենցներին։ Իհարկե, խոշոր գործիչն ու մտածողը նախաձեռնող է, որովհետև մյուսներից ավելի հեռուն է տեսնում և ավելի ուժգին ձգտում։ Նա լուծում է հասարակության մտավոր զարգացման նախորդ ընթացքով հերթի դրված գիտական խնդիրները, մատնանշում հասարակական նոր կարիքները և հանդես գալիս որպես նախաձեռնող։ Նա հերոս է ոչ թե այն իմաստով, որ կարող է կանգնեցնել կամ փոխել իրադարձությունների օբյեկտիվ ընթացքը, այլև այն առումով, որ նրա սուբյեկտիվ գործունեությունն այդ օբյեկտիվ ու անհրաժեշտ պրոցեսի գիտակցական ու ազատ արտահայտությունն է։ Լավ է ասել Խաչատուր Աբովյանը, որ անտառում կարելի է հանդիպել հսկա կաղնու, բայց դրա մեծությունը ոչ թե իրեն կաղնուց է կախված, այլ այն բարենպաստ հողից, որի վրա այն աճել է, այլապես, եթե այն աճեր ժայռոտ, քարքարոտ կամ այլ, ոչ պարարտ հողի վրա, կլիներ թույլ ու տկար։

Նույնը վերաբերում է մարդկությանը։ Հսկա է ժողովուրդը, նա վիթխարի գործերի հզոր արարիչն է։ Սրան կարելի է ավելացնել Դոբրոլյուբովի այն պատկերավոր համեմատությունը, որ պատմական մեծ գործիչների նշանակությունը կարելի է նմանեցնել անձրևի նշանակությանը, որը կենսատու կերպով թարմացնում է հողը, բայց որն այնուամենայնիվ կազմվում է այդ հողից բարձրացող գոլորշիներից։

Դինամիկ է հասարակական կյանքը։ Գնալով անընդհատ աճում են դրա վերընթաց զարգացման տեմպերը։ Հիշենք, որ տոհմային հասարակությունը հազարամյակներ գոյություն ունեցավ, ստրկատիրականը՝ չորս հազար տարուց ավելի, ֆեոդալականը՝ մեկ ու կես հազարամյակ, իսկ որոշ երկրներում կապիտալիզմը՝ մի քանի հարյուր տարի։ Այսօր կապիտալիզմը զառամյալ ծերունի է, որի օրգանիզմը քայքայվում է մարմնի սակավարյունությունից։

Իսկ ո՞ր ուժն է այդպես համառորեն առաջ մղում պատմությունը։ Այդ ուժը ժողովուրդն է, հասարակական բոլոր վերափոխությունների սուբյեկտը։ Եվ այն անօրինակ դինամիզմը, որն արդի դարաշրջանի բնորոշ առանձնահատկությունն է, պայմանավորված է գիտատեխնիկական վիթխարի նվաճումներով, արտադրողական ուժերի բուռն աճով, որոնք պահանջում են նոր սոցիալիստական արտադրական հարաբերություններ։ Ժամանակակից արտադրողական ուժերը չեն կարող լիաթոք շնչել կապիտալիստական մասնավոր սեփականատիրական հարաբերությունների ոլորտում։ Այստեղ է իր ծանրակշիռ խոսքն ասում ժողովուրդը, որի ակտիվ ռևոլյուցիոն գործունեությունն է հարթում սոցիալական առաջադիմության ճանապարհին ընկած բոլոր խոչընդոտները։

Ստրուկների ու ճորտ գյուղացիների ելույթները, նրանց դարավոր պայքարը հող նախապատրաստեցին արտադրության ավելի բարձր եղանակի համար, և դա ընդգրկեց երկարատև ժամանակաշրջան։ Սոցիալական հարաբերությունների մեջ կատարվող փոփոխությունները դանդաղ էին ընթանում, քանի որ քարե դարում, կամ պրիմիտիվ գիտելիքների և ունակությունների պայմաններում այլ կերպ չէր կարող լինել։ Ուրիշ բան է մեքենայական ինդուստրիայի և ատոմային տեխնիկայի դարաշրջանը, երբ քաղաքականության ոլորտ են ներքաշվում միլիոնավոր մարդիկ, արագացնելով համաշխարհային զարգացման պրոցեսը։ Վ. Ի. Լենինը գրում էր. «Համաշխարհային զարգացման այդ վիթխարի արագացման հիմնական պատճառը դրա մեջ նոր հարյուր ու հարյուր միլիոնավոր մարդկանց ներգրավումն է»։ Եվ դա մեր դարաշրջանի պատմական օրինաչափություններից մեկն է։

Խոշոր մեքենայական արդյունաբերության ու ատոմային էներգիայի դարում միայն պրոլետարիատն է այն հետևողական ռևոլյուցիոն դասակարգը, որի պայքարի նպատակը՝ արտադրողական ուժերը հանուն մարդկության շահերին ծառայեցնելն է։ Ջոն Բեռնալը գրում է. «... եղած ռեսուրսներն ու գիտելիքներն այնքան մեծ են, որ եթե դրանք օգտագործվեն, ապա բավական կլինեն մեկ սերնդի կյանքի ընթացքում վերափոխելու ամբողջ աշխարհը» (Дж. Бернал, Мир без войны, Ил, 1960, էջ 16)։

Վ. Ի. Լենինը գրում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիան ճնշված ու շահագործվող մասսաների տոնն է, որի ընթացքում աշխատավորները հանդես են գալիս որպես հասարակական նոր հարաբերությունների ստեղծողներ, ընդունակ են հրաշքներ գործելու։ Սոցիալիստական ռևոլյուցիան աննախընթաց չափով արագացնում է պատմության ընթացքը։

Պատմական փորձը թաղեց կոմունիզմի թշնամիների լեգենդներն այն մասին, թե իբր հասարակ մարդիկ, աշխատավորները ինքնուրույն պատմական գործունեության ընդունակ չեն, նրանց օտար է ստեղծագործական ֆունկցիան։

Հասարակական հարաբերությունները մարդկանց գործունեության արդյունք են։ Իհարկե, նրանք չեն կարող ուզած չափով արագացնել ժամանակի ընթացքը, բայց ունակ են կարճ ժամանակամիջոցում արագացնելու պատմության վերընթաց շարժումը, եթե ապրում, աշխատում ու մաքառում են այնպիսի պայմաններում, որոնց մեջ մաքրվում են անցյալի ախտերը և կատարելագործվում բուն մարդկային հարաբերությունները։ Կարլ Մարքսն ասում էր. «Մարդու համար բարձրագույն կոչումը մարդն է, հետևապես անհրաժեշտ է ոչնչացնել այն բոլոր հարաբերությունները, այն բոլոր պայմանները, որոնց մեջ մարդը ստրկացված, նվաստացված, արհամարհված էակ է»։

Այստեղ հստակորեն բարձրացված է հասարակության և անհատի փոխհարաբերության հարցը։ Բուրժուական սոցիոլոգները փորձում են անհատի գործողությունները բացատրել բնածին հատկություններով։ Ֆրեյդիստների կարծիքով մարդու վարքագիծը հիմնականում որոշվում է սեռային խթաններով։ Ուրեմն սոցիալական չարիքների ու հակամարտությունների սկզբնաղբյուրը պետք է որոնել «մարդու անփոփոխ բնության» մեջ։ Պերսոնալիստները անհատին հակադրում են հասարակությանը, առաջադրելով «պերսոնայի» հասկացությունը, որը «տնտեսական և կենսաբանական էության» ներկայացնող մարդուն հակադրվող մի որակ է։

Մարքսիզմը գիտականորեն լուծեց անհատի և հասարակության փոխհարաբերության պրոբլեմը։ Անհատը ինդիվիդուալ ընդունակություններով օժտված և սոցիալական ֆունկցիաներ կատարող էակ է։ Մարքսը գրել է. «...մարդու էությունը առանձին ինդիվիդին հատուկ աբստրակտ չէ։ Իրականում այն հասարակական բոլոր հարաբերությունների հանրագումարն է» (К. Маркс, Ф. Энгельс, Соч. т. 3, էջ 3)։

Մասնավոր սեփականության տիրապետության պայմաններում անհնար է անհատի համակողմանի զարգացումը։ Բուրժուական գաղափարախոսները ջանում են ապացուցել, թե իբր կապիտալիզմը գտել է անհատի ազատության և հասարակության շահերի միջև եղած ճիշտ հարաբերությունը։ Բայց, ըստ բուրժուական աշխարհըմբռնման, անհատի ազատությունը՝ դա բուրժուազիայի համար ձեռնարկատիրական գործունեության և պրոլետարիատի համար իր աշխատուժը վաճառելու, փոքրամասնության հարստացման ազատություն է, գործազրկության և քաղցելու ազատություն։ Ամերիկյան բիզնեսմեն Ռենդոլը «Ազատ ձեռնարկատիրության քրեդո» գրքում ասում է. «Ազատ ձեռնարկատիրության գաղտնիքը նրանում է, որ մենք օգտագործում ենք յուրաքանչյուր մարդու բնական ճակատագիրը, նրան հնարավորություն տալով օգուտ քաղել ինքն իր համար, և ծառայելով իրեն, նա ծառայում է հասարակությանը»։ Սա բուրժուական ինդիվիդուալիզմի բացահայտ քարոզ է, որն, ի դեպ, ոչ թե մարդու նախնիների պատմությունից է գալիս, այլ կապիտալիստական մասնավոր սեփականատիրական հարաբերությունների ծնունդ է։

Ամերիկյան առաջադեմ փիլիսոփա Դանեմը ճիշտ է նկատում, որ նման պնդումների նպատակն է՝ «...խանգարել սոցիալական վերափոխումներին, իրականությունը ներկայացնելով մռայլ անելանելիության կեղծ լույսի տակ... ապացուցել կապիտալիզմի անխուսափելիությունը, ելնելով մարդու բնության անփոփոխ էությունից...» (Б. Данэм, Человек против мифов, Ил, 1961, էջ 45, 57)։

Անհատի և հասարակության միջև եղած հակամարտության վերացման, նրանց շահերի ներդաշնակությունն ապահովելու ուղին մասնավոր սեփականության ոչնչացումն է և այդ հիման վրա՝ սոցիալական անհավասարության հաղթահարումը։ Քանի որ անհատը մեկուսացված մարդ չէ, այլ հասարակական էակ, նրա ազատագրությունն իրականացվում է մասսաների ազատագրության միջոցով։ Ինչպես նշում էին Մարքսն ու Էնգելսը, կոմունիզմի օրոք յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է։

Սոցիալիզմն անհատին չի կտրում հասարակությունից, չի հակադրում նրան։ Բուրժուական ինդիվիդուալիզմն իր տեղը զիջում է սոցիալիստական կոլեկտիվիզմին, որը վերացնում է անհատի և հասարակության միջև եղած անտագոնիզմը, հաստատելով անհատի և հասարակության ներդաշնակ միասնություն։ Կոմունիզմը մերժում է ինդիվիդների համահարթումը։ Կոմունիստական հասարակությունը զորանոց չէ, այլ ազատ անհատների ազատ ասոցիացիա, որտեղ յուրաքանչյուր անհատ ազատ և համակողմանի զարգացում է ապրում։ Կոմունիստական հասարակության մեջ անհատը չի ձուլվում անդեմ սոցիալական օրգանիզմի մեջ, այլ անհատականն ու սոցիալականը այստեղ հանդես են գալիս ներդաշնակ միասնությամբ։

Սոցիալիզմը կկառուցվի միայն այն ժամանակ, ասում էր Վ. Ի. Լենինը, երբ 10 և 100 անգամ ավելի հոծ մասսաները, քան առաջ, կսկսեն իրենք կառուցել պետությունը և կառուցել նոր տնտեսական կյանք։

Սովետական ժողովրդի անցած ուղին սոցիալ-քաղաքական և գաղափարական ոլորտներում, անհատի ու հասարակության շահերի անխախտ միասնությամբ միաձուլված միլիոնավոր մասսաների անխոնջ աշխատանքի, հերոսական պայքարի և մեծ հաղթանակների պատմություն է։ Առաջին կոմունիստական շաբաթօրյակներից մինչև կոմունիստական աշխատանքի բրիգադաներն ու կոլեկտիվները, նորարարների շարժումները սոցիալիստական մրցության կոմպոնենտներն են, որոնք ծառայում են հասարակության հիմքերի ամրապընդմանն ու մասսաների բարեկամության բարձրացմանը, այն վիթխարի խնդիրների լուծմանը, որոնք դրված են մեր առջև։ Վերջին տասը տարիների ընթացքում արտադրության մեջ ներդրված են 18 միլիոն գյուտարարական ու նորարարական առաջարկություններ, որոնց ներդրման շնորհիվ տնտեսվել է 10 միլիարդ ռուբլի։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը համաժողովրդական խնդիր է։ Կոմունիզմը ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է, «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»՝ սա է պարտիայի սրբազան լոզունգը։ Կոմունիստների պարտիան ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերի շուրջ մշտապես խորհրդակցում է աշխատավորների հետ, այդ հարցերը համաժողովրդական քննարկման է դնում, ընդլայնում և խորացնում իր անխզելի կապերը ժողովրդի հետ։ Ինչպես ասված է ՍՄԿՊ ծրագրում՝ «Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը»։ Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում ու կատարելագործում, բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։

Այսպիսով, սոցիալիզմն արմատապես փոխում է անհատի դերը պատմության մեջ, անսահման հնարավորություններ է ստեղծում մարդկանց ստեղծագործական ունակությունների զարգացման համար, ավելի է ընդլայնում նրանց գործունեության ասպարեզը, որտեղ յուրաքանչյուրը կարող է դրսևորել իր անհատականությունը։ Սոցիալիզմի դարաշրջանի նշանաբանը հանրօգուտ աշխատանքն է։

Աշխատավոր զանգվածների, ժողովրդի վճռական դերը միայն արտադրողական ու սոցիալ-քաղաքական ոլորտներով չի սահմանափակվում։ Հոգևոր կուլտուրայի բնագավառում ևս վճռական է ժողովրդի դերը։ Հոգևոր ստեղծագործության մեջ վիթխարի դեր են խաղում անհատական ունակությունները, տաղանդն ու հանճարը։ Հանճարն օժտված է բացառիկ ընդունակություններով, մտքի ու մտահղացման անօրինակ խորաթափանցությամբ, հզոր երևակայությամբ, կամքով ու զգացմունքներով, արտասովոր աշխատասիրությամբ։ Նրա մտքի էներգիան և մեծ աշխատանքը համաշխարհային կուլտուրայի գանձարանը հարստացնում են հայտնագործություններով, առաջ են մղում գիտությունն ու արվեստը։

Սակայն սահմանափակ քաղքենիները կարող են միայն մասսաների գործունեությունը հակադրել անհատների ստեղծագործությանը։ Եթե լեգենդար Անթեյի ուժը հողի հետ ունեցած կապի մեջ էր, ապա նշանավոր անհատի սոցիալական ուժը ժողովրդի հետ ունեցած կապի մեջ է։ Մարդկության տարեգրության մեջ ոսկե տառերով են գրված Կոպեռնիկոսի ու Գալիլեյի, Նյուտոնի



ու Դարվինի, Ռաֆայելի ու Լեոնարդո դա Վինչիի, Շեքսպիրի ու Գյոթեի, Սայաթ-Նովայի ու Աբովյանի, Գերցենի ու Նալբանդյանի, Մոցարտի ու Չայկովսկու, Մենդելեևի ու Էյնշտեյնի, Բալզակի ու Գորկու և շատ ուրիշների անունները։ Խոսելով վերածննդի շրջանի աշխարհահռչակ ստեղծագործողների մասին՝ Էնգելսը գրել է. «Նրանք համարյա բոլորն ապրում են իրենց ժամանակի ամենախոր շահերով, կենդանի մասնակցություն են ունենում գործնական պայքարին, այս կամ այն պարտիայի կողմն են անցնում և պայքարում, որը խոսքով, որը՝ գրչով, որը սրով, իսկ որն էլ՝ և՛ գրչով, և՛ սրով»։ Պրոմեթեոսի, Դոն-Քիշոտի, Սասունցի Դավթի, Ֆաուստի կերպարներն ստեղծված են եղել ժողովրդական պատմվածքներում՝ մինչև գեղարվեստական ստեղծագործությունների պերսոնաժներ դառնալը։ Ինչպես Գորկին էր գրում՝ «Զևսին ժողովուրդն է ստեղծել, Ֆիդեասը նրան մարմարի մեջ է մարմնավորել»։ Նկարչի ծառայությունն այն է, որ նա խորապես իմաստավորում է ժողովրդի առաջ քաշած գաղափարն ու կերպարը և մարմնավորում է այն կատարյալ գեղարվեստական կեղևի մեջ։

Ժողովրդի շահերից ու ձգտումներից կտրված քաղաքականությունը ձախողման է դատապարտվում, արվեստը մեռնում է։ Ժողովրդի կյանքն ու պայքարն են գեղարվեստական ստեղծագործության աղբյուրը, ժողովուրդն է կուլտուրայի կարևորագույն տարրի՝ լեզվի ստեղծողը։

«Ժողովուրդը ո՛չ միայն նյութական բոլոր արժեքներ ստեղծող ուժն է, նա հոգևոր արժեքների միակ անսպառ աղբյուրն է, ժամանակի մեջ ստեղծագործության գեղեցկությամբ ու հանճարեղությամբ առաջին փիլիսոփան ու պոետն է, որն ստեղծել է բոլոր մեծագույն պոեմները, երկրի բոլոր ողբերգությունները և դրանցից մեծագույնը՝ համաշխարհային կուլտուրայի պատմությունը» (Գորկի)։

Ժողովրդի հետ ունեցած անխզելի կապը, նրա ձգտումների և ապրումների ստեղծագործական արտացոլումը՝ չափանիշներ են, որոնք բնութագրում են յուրաքանչյուր մտածողի ու արվեստագետի գործերի լիարժեքությունը։ Այդպիսին են մեր և այլ ժողովուրդների կլասիկները, որոնց հնարավոր չէ կտրել ժողովրդի ազնիվ ձգտումներից և ազատատենչ մաքառումներից։

Շարժման ծավալն ու ուղղությունը, խնդիրներն ու նպատակը կյանքի են կոչում այն գլխավորող անհատները։ Պրոլետարիատի դասակարգային պայքարը պահանջեց բոլորովին այլ տիպի առաջնորդներ։ Մարդկային պատմության մեջ բանվոր դասակարգի մեծագույն խնդիրներ հետապնդող շարժման ընթացքում ասպարեզ եկան այնպիսի հանճարներ, ինչպիսիք են՝ Մարքսը, Էնգելսը և Լենինը։

Վ. Ի. Լենինի մեծությունը դրսևորվում էր նրա տեսական ու պրակտիկ գործունեության բոլոր էտապներում ու ոլորտներում։ Կոմունիստական պարտիայի ուժն ու գործողությունների հաջողությունը նա տեսնում էր աշխատավոր լայն զանգվածների հետ ունեցած անխզելի կապի մեջ։

«Ժողովրդական մասսայի մեջ մենք, այնուամենայնիվ, մի կաթիլ ենք ծովում և մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը։ Առանց դրան կոմունիստական պարտիան չի կարող առաջնորդել պրոլետարիատին...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 361)։ Վ. Ի. Լենինը կոմունիստներին սովորեցնում էր հասկանալ նոր աշխարհի կառուցման հետ կապված դժվարությունները, հար-

ցերի քննարկման ու լուծման ժամանակ հեռու մնալ աղմկարարությունից, պարծենկոտությունից, ավելորդ շտապողականությունից:

Արտադրողական ուժերի բուռն աճը, գիտության ու տեխնիկայի ռևոլյուցիոն բնույթի նվաճումները, դրանց կիրառումը ռազմական ոլորտում, արմատապես փոխել են մեր բոլոր նախկին պատկերացումները պատերազմի և դրա հնարավոր հետևանքների մասին: Մեկ խոշոր ջերմամիջուկային ռումբի պայթուցիկ ուժը էկվիվալենտ է երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում օգտագործված բոլոր պայթուցիկ նյութերի ուժին: 50 մեգատոննանոց ռումբի հզորությունը հավասար է 250 մլդ. նոնակների պայթուցիկ ուժին: Դա նշանակում է, որ երկրագնդի յուրաքանչյուր բնակչին 83 նռնակ է ընկնում: Որոշ տվյալներով, մեր մոլորակի վրա ապրող յուրաքանչյուր մարդուն բաժին է ընկնում 80 տ. տրինիտրոտոլուոլ: Այդ զենքը նպատակակետին հասցնելը նույնպես դժվար խնդիր չէ: Միջցամաքային և գլոբալ հրթիռները կարող են երկրագնդի ցանկացած կետը հարվածի տակ առնել: Իսկ պայթյունների հետևանքով առաջացած մթնոլորտի ռադիոակտիվ վարակումը կարող է միլիոնավոր կյանքեր խլել: Այսպիսով խախտվել է այն սահմանը, մինչև որը զենքը ծառայում էր որպես հարձակման ու պաշտպանության միջոց, այն վերածվել է համատարած ոչնչացման ու կործանման միջոցի, կատարվել է որակական տրանսֆորմացիա: Հատկանշական է, որ զենքի նոր տեսակները կարող են գործադրվել ճամճմատաբար փոքրաթիվ մարդկանց կողմից:

Հետևաբար, պատերազմի ու խաղաղության հարցերում ժողովրդական մասսաների դերը ճիշտ հասկանալու համար անհրաժեշտ է հրաժարվել մեխանիկական մոտեցումից, ղեկավարվել ոչ թե սխոլաստիկական, մեռած սխեմաներով, այլ դիալեկտիկական դրույթներով, որոնց մեջ իր ադեկվատ արտացոլումն է գտնում կոնկրետ իրականությունը: Որոշ անհատների կարծիքով պատերազմի բախտը որոշում է մարդկանց քանակը և ոչ թե նոր զենքի մեկ կամ երկու տեսակ. ատոմային ռումբերը չեն կարող փոխել պատերազմի բնույթը, դրանք «թղթե վագրեր» են: Հազիվ թե հարկ կա հերքելու «թղթե վագրերի» տեսակետը: Թերևս կարելի է դիմել Ջոն Բեռնալին, որն այսպես է գնահատում դրանց գործողության հետևանքները. «...ամենուրեք այնպիսի սարսափ կտիրի, որ կգերազանցի միջին դարերի բոլոր պատկերացումները դժոխքի մասին: Պայթող ռումբեր. հոշոտված և վառված մարմիններ և այն քչերի ապաքինման ավելի երկարատև սարսափ, որոնք կենդանի են մնացել»:

Սակայն, քանի որ «թղթե վագրերի» արատավոր կոնցեպցիայի հեղինակներն ըստ էության տեխնիկան հակադրում են մասսաներին, մետաֆիզիկորեն «կամ-կամ» հարցը դնում, անհրաժեշտ են կոնկրետ պարզաբանումներ:

Մարքսիզմը գիտատեխնիկական ամենացայտուն ու մեծանշանակ թռիչքի պայմաններում անգամ չի դավանում այն տեսակետը, թե պատմության մեջ վճռական դերի ֆունկցիան դուրս է եկել ժողովրդական մասսաների իրավասությունից: Առանց մարդու տեխնիկան մեռած է, այս իմաստով մասսաները տեխնիկայից ուժեղ են: Բայց, առնվազն միամիտ կլիներ կարծել, թե տեխնիկայով չզինված մեծամասնությունը զինված փոքրամասնությունից ուժեղ է: Հաղթանակը մասսաների քանակական մեծությամբ չի որոշվում այնպիսի պայմաններում, երբ առկա են մասսայական ոչնչացման միջոցներ: Մասսաների դերը դառնում է վճռական, երբ նրանց գործողությունները չեն անտեսում արտադրության զարգացման մակարդակը, տեխնիկայի զարգացման առանձնահատկությունները: Ֆ. Էնգելսը գրել է. «Ոչինչ այնպես կախված չէ տնտեսական պայմաններից, ինչպես հենց բանակն ու նավատորմը: Սպառազինումը, կազմը, կազմակերպվածությունը, տակտիկան ու ստրատեգիան ամենից առաջ կախված են տվյալ մոմենտին արտադրության ձեռք բերած աստիճանից և հաղորդակցության միջոցներից»: Ոչ թե հանճարեղ զորավարների «մտքի ազատ ստեղծագործությունն» է այստեղ հեղափոխականացնող ձևով գործել, այլ լավագույն զենքի հայտնագործությունը և զինվորական մատերիալի փոփոխությունը...» (Երկ. հ. 20, էջ 171, ռուս. հրատ.): Ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում՝ «հաղթում է նա, ով մեծագույն տեխնիկա, կազմակերպվածություն, կարգապահություն և լավագույն մեքենաներ ունի» (հ. 36, էջ 116, ռուս. 5-րդ հրատ.):

Եվ, միայն կյանքից կտրված, սեփական դատարկ մտորումների զոհը դարձած մարդիկ կարող են պնդել, թե ժամանակակից զենքով զինված և տեխնիկապես ավելի հզոր թշնամու դեմ բավական է հակադրել մեծաթիվ մասսաներին:

Ջերմամիջուկային պատերազմում ոչ թե հրացաններով զինված միլիոնավոր մասսաները, այլ միջուկային լիցքով օժտված հրթիռները կարող են վճռական դեր խաղալ: Ընդգծել ժամանակակից տեխնիկայի դերը, չի նշանակում գերագնահատել այն: Ժամանակակից պատերազմում մի քանի հազար ակտիվ, մասնագիտացված մարտիկներ գործողության մեջ դնելով տեխնիկան, կարող են ավելի մեծ ավերածություններ առաջացնել, քան սովորական զենքի տեսակներով զինված բազմամիլիոն բանակները:

Միջուկային զենքով զինված իմպերիալիզմին դիմակայում է նույն զենքով զինված սոցիալիզմը: Եվ, եթե «ատոմային ատամներ» ունեցող իմպերիալիզմը անկարող է կասեցնել միլիոնավոր մասսաների ազգային-ազատագրական շարժումը, ապա դա բացատրվում է սոցիալիզմի լագերի հզորությամբ, որի ռազմատնտեսական պոտենցիալը վիժեցնում է մոնոպոլիստական կապիտալի ասպետների ձգտումներն՝ արյան մեջ խեղդելու իրենց ազատության ու անկախության համար մարտնչող ժողովուրդների պայքարը: Եթե սոցիալիստական լագերը չունենար ժամանակակից զենքի բոլոր տեսակները, աշխատավոր մասսաների ամենավճռական կամքն անգամ չէր կարող զսպել ագրեսիվ իմպերիալիզմին: Հենց սոցիալիզմի բազմակողմանի հզորությունն է բազմապատկում մասսաների վճռականությունը, ոգեշնչում նրանց, համարձակ գրոհի նետելով իմպերիալիզմի ու պատերազմի դեմ: Համաշխարհային նոր մղձավանջը կանխելու մասսաների վճռականությունն ու անընկճելի կամքը հենվում են սոցիալիզմի սիստեմի նյութական հզորության վրա: Մյուս կողմից, ջերմամիջուկային աղետի վտանգի գիտակցումը մոբիլիզացնում է ժողովուրդներին, ակտիվ բնույթ հաղորդում նրանց հակապատերազմական ձգտումներին ու գործողություններին: Այսպիսով, ճշմարտությունը ժամանակակից պատերազմի և դրա հնարավոր հետևանքների մասին խաղաղությունը պահպանելու կարևորագույն գործոն է:

Սակայն խաղաղությունը ձեռք է բերվում ոչ թե զենքի տեսակների կատարելագործման տրամաբանությամբ, այլ համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա ժողովրդական ամենալայն զանգվածների աճող ներգործությամբ: Ահա թե ինչու խաղաղությունը պահպանելու և պատերազմը կանխելու պրոբլեմը դարձել է հարյուր միլիոնավոր մարդկանց կենաց ու մահու հարցը.

մասսաների դերը գնալով աճում է, որպես հակապատերազմական գործոնի։

«Ժողովուրդների ջանքերը,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— պետք է կենտրոնացվեն իմպերիալիստներին ժամանակին սանձելու, մահաբեր զենք գործադրելու հնարավորությունից նրանց զրկելու վրա։ Գլխավորն այն է, որ կանխվի ջերմամիջուկային պատերազմը, թույլ չտրվի, որ այն բռնկվի»։

Եվ միայն անուղղելի բթամիտներն ու վայ-քաղաքագետներն են փորձում քարացած դոգմաներ հրամցնել կյանքին՝ պատերազմի վախճանը թվաբանական վարժությունների հանգեցնելով։ Մարդկանց թմրեցնող ու քնեցնող այն խոսքերով կերակրելը, թե ատոմային ռումբերը «թղթե վագրեր» և մասսաներին սարսափեցնող ու դեմոբիլիզացնող միջոցներ են միայն, ջուր է լցնում պատերազմի հրձիգների ջրաղացին։ Խնդիրն այն է, որ նոր համաշխարհային պատերազմի վտանգի դեմ համաժողովրդական պայքար ծավալվի՝ առանց սպասելու մինչև սկսեն ընկնել ատոմային ու ջրածնային ռումբերը։

Համաշխարհային պատերազմը կարելի է կանխել սոցիալիստական սիստեմի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով։

Միայն և միայն այսպես պետք է հասկանալ ժողովրդական մասսաների վճռական դերը նաև քաղաքականության մեջ, պատերազմի ու խաղաղության հարցերում։



# ԱԶԳԱՅԻՆ ԸՆԴՀԱՆՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՁԱՐԳԱՑՈՒՄԸ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

Ազգային հարաբերությունները հասարակական կյանքի բարդ երևույթներից են, և նրանց ուսումնասիրությունը հասարակական զարգացման պրոցեսի հետազոտության կարևոր մի բաղկացուցիչ մասն է։ Վ. Ի. Լենինը նշելով, որ պրոլետարական ռևոլյուցիայի ժամանակ ազգային հարցը ընդհանուր սոցիալական վերափոխման ենթակա հարց է, միաժամանակ շեշտում էր, որ այստեղ հարկավոր է յուրահատուկ մոտեցում, որովհետև մեր երկրում ազգային հարցի լուծումը ոչ թե սահմանափակ-տեղական, այլ միջազգային լայն նշանակություն ունի և կարող է ազդել համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ճակատագրի վրա։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ ազգային հարցը «...համաշխարհային հարց է, առանց չափազանցման համաշխարհային։ Այստեղ պետք է գերխիստ լինել։ Դա կանդրադառնա Հնդկաստանի վրա, Արևելքի վրա, այստեղ կատակ անել չի կարելի, այստեղ պետք է հազար անգամ զգույշ լինել» (Ленинский сборник XXXVI, էջ 321)։

Ազգային հարցում լենինյան այդ գերխստությունն ու զգուշությունը, հարցի նկատմամբ խիստ գիտական մոտեցումն իրենց անմիջական դրսևորումն են գտել մեր պարտիայի ծրագրի՝ ազգային հարցին նվիրված հատակ ու որոշակի ձևակերպումներում, իր՝ Վ. Ի. Լենինի բազմաթիվ աշխատություններում, որոնց մեջ նա անողոքաբար մերկացրել է ազգային հարցում մարքսիստական ըմբռնումից կատարված ամեն մի շեղում, ամենայն խստությամբ դատապարտել հարցի էությունը ռևոլյուցիոն ֆրազով փոխարինելու ամեն մի փորձ։ Սովետական իշխանության գոյության առաջին տարիներին վճռական հակահարված տալով պարտիայի ծրագրից ազգերի ինքնորոշման հարցը հանելու Բուխարինի և Պյատակովի փորձերին, Վ. Ի. Լենինը որոշակիորեն նշում էր, որ այդպես վարվելու դեպքում մենք ազգային հարցը ջնջած կլինենք ծրագրից, իսկ «Այդ կարելի կլիներ անել, եթե մարդիկ լինեին առանց ազգային առանձնահատկությունների։ Բայց այդպիսի մարդիկ չկան, և այլ կերպ մենք երբեք սոցիալիստական հասարակություն չենք կարող կառուցել» (Երկեր, հ. 29, էջ 231)։

Թող ընթերցողը մեզ ների այս պատմական էքսկուրսի համար։ Մենք այն միտումնավոր արինք, որովհետև այժմ էլ մեր իրականության մեջ կան մարդիկ, որոնք իրենց նեղություն չտալով ուսումնասիրելու ազգային փոխհա-

րաբերությունների և ազգային ընդհանրությունների պատմական զարգացման բարդ և հակասական պրոցեսը, «անօրինակ թեթևությամբ» սահելով հարցի մակերեսով, ազգային ընդհանրությունը նույնացնում են բուրժուական ֆորմացիայի, նույնիսկ բուրժուազիայի ու մասնավոր սեփականության հետ և հայտարարում, թե ազգը բացասական երևույթ է, որովհետև «այն՝ որպես կապիտալիզմի շրջանում կազմավորված պատմական երևույթ, բուրժուական կարգի պայմաններում մի խմբի մարդկանց մեկուսացնում է մյուս խմբի մարդկանցից, իրար նկատմամբ ատելություն է սերմանում» (**А. А. Алтмышбаев.** Коммунизм и нация, в сборнике «Вопросы коммунистического воспитания», Фрунзе, 1963, *էջ 4*), կամ էլ աներկբայորեն հռչակում են, թե իբր «Տարբեր ազգերի գոյությունը բարիք չէ, այլ բազմաթիվ սոցիալական չարիքների աղբյուր»:

Նման հայտարարություններ հնարավոր են միայն և միայն մարքսիզմի այբուբենը, նրա էությունը անտեսելու դեպքում, որովհետև մարքսիզմի հիմնաքարը հենց այն դրույթն է, որ մարդու կողմից մարդու շահագործման, սոցիալական չարիքների, դասակարգային և ազգային անտագոնիզմի աղբյուրը ոչ թե ազգերն են, այլ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը և հենց նրա վերացումն է, որ հնարավոր է դարձնում այդ բացասական երևույթների հաղթահարումը: Հենց դրա համար էլ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը նշում էին, որ «Այս իմաստով կոմունիստներն իրենց թեորիան կարող են արտահայտել մի դրույթով—մասնավոր սեփականության ոչնչացում» (Ընտիր երկեր, հ. 1, էջ 28):

Մյուս կողմից, նման հարցադրումը հասարակական-տնտեսական ֆորմացիաների և մարդկանց սոցիալական և էթնիկական ընդհանրությունների պատմական զարգացման անտեսման հետևանք է: «Մի խմբի մարդկանց մեկուսացումը մյուս խմբի մարդկանցից, իրար նկատմամբ ատելությունը» ծագում է ոչ թե կապիտալիզմի պայմաններում, այլ արդեն ստրկատիրական հասարակարգում և գոյություն ունի և՛ ֆեոդալիզմի, և՛ կապիտալիզմի ժամանակ: Դա միանգամայն օրինաչափ է ու հասկանալի, քանի որ այդ երեք հասարակարգերում էլ իշխում է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը: Անկասկած, մի հակամարտ հասարակարգից մյուսին անցնելով, մասնավոր սեփականության ձևերը փոխվում են, հետևաբար փոխվում են նաև մարդկանց խմբերի իրարից մեկուսացման ձևերն ու աստիճանը, բայց մեկուսացման ու թշնամության աղբյուրը ըստ էության նույնն է մնում:

Այդ իսկ տեսակետից ակնհայտ է, որ սխալ է հայտարարել, թե ազգերի գոյությունն է, որ մեկուսացնում է մարդկանց, ծնում սոցիալական չարիքներ: Դա ճիշտ չէ նաև այն պատճառով, որ ազգերը մարդկանց սոցիալական և էթնիկական միասնության առաջին և միակ ձևը չեն, այլ այն ձևը, այն աստիճանը, որը հանդես է գալիս արտադրության միջոցների սեփականության ու բնակչության մասնատվածության հաղթահարման, խոշոր քաղաքներում բնակչության խտացման, արտադրության միջոցների կենտրոնացման, մի լեզվով խոսող ամբողջ բնակչությունը տնտեսական միասնական կապերով միավորելու հետևանքով, որը հնարավոր է դառնում կապիտալիզմի ծագման և զարգացման պրոցեսից սկսած: Դրա համար էլ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Ազգերը հասարակական զարգացման բուրժուական դարաշրջանի անխուսափելի արդյունքը և անխուսափելի ձևն են» (Երկեր, հ. 21, էջ 78):



Բայց չէ որ կապիտալիզմից առաջ մարդկությունն ապազգային, այսինքն՝ էթնիկապես միատարր զանգված չի եղել. ստրկատիրության ու ֆեոդալիզմի և նույնիսկ նախնադարյան հասարակության մեջ մարդիկ բաժանված են եղել էթնիկական առանձին խմբերի, տարբերվել են իրարից լեզվով ու սովորույթներով, ապրել են տարբեր տերիտորիաներում, այսինքն՝ նրանք մեկուսացած են եղել իրարից: Ամեն մի հասարակարգում մարդկային խմբերի ընդհանրության ձևերը տարբեր են եղել, որովհետև տարբեր է եղել նրանց միացնող սոցիալ-տնտեսական հիմքը: Այդ ընդհանրությունների զարգացումը բնապատմական պրոցես է, որի հիմքերը բացահայտել է դեռևս Ֆ. Էնգելսն իր «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» դասական աշխատության մեջ:

Այնտեղ Էնգելսը ցույց է տալիս, մասնավորապես, որ արյունակցականազգակցական ընդհանրությունների՝ տոհմի և ցեղի քայքայումը և նրանց փոխարինումը նոր, ազգային բնույթ կրող էթնիկական ընդհանրություններով՝ աշխատանքի հասարակական բաժանման, մասնավոր սեփականության, դասակարգերի և պետության առաջացման պրոցեսի հետևանք են: Ահա այս պրոցեսում են առաջանում այն ընդհանրությունները, որոնք պատմության մեջ հայտնի են ժողովուրդ (народ, people, volk) անունով և որոնց մենք այժմ հաճախ որոշակի իմաստով անվանում ենք ազգություն:

Ազգությունը կամ ժողովուրդը վաղ ֆեոդալական շրջանի այն մարդկային ընդհանրությունն է, որը միավորում է մի ընդհանրական տերիտորիայի վրա ապրող, միևնույն լեզվով կամ նույն լեզվի տարբեր բարբառներով խոսող, ընդհանուր մշակույթով ու սովորույթներով, երբեմն էլ նույնիսկ կրոնով, քիչ թե շատ էթնիկական ընդհանրությամբ բնորոշվող մարդկանց: Նրանց տնտեսականորեն կապակցող օղակը ֆեոդալական տնտեսությունն է, որին հատուկ է մասնատվածությունը: Նույնը տեղի ունի նաև պետական-քաղաքական բնագավառում: Նման ընդհանրության գոյությունը մինչև կապիտալիզմը աներկբա է, այլ հարց է, թե արդյոք այժմյան բոլոր ազգերն են անցել այդ աստիճանը և թե որքան է տևել այդ վիճակը տարբեր խմբերի մոտ: Բայց կասկածից դուրս է, որ դրանք այնպիսի խմբավորումներ են, որոնք ներքուստ բաժանված էին հակամարտ դասակարգերի, նրանց միջև պայքար էր գնում տերիտորիաների և բարիքների բաժանման համար, առանձին խմբերը (ազգությունները) իշխում էին մյուսների վրա և այլն: Հռոմն ու Կարթագենը, ինչպես մի առիթով նշում էր Վ. Ի. Լենինը, երկու տիրապետող ազգություններ էին ներկայացնում, ազգություններ, որոնք պայքարում էին այլ ազգություններին ու ցեղերին տիրելու ու ճնշելու համար: Տասնյակ ժողովուրդներ ատելությամբ էին լցված դեպի հռոմեացիները, պարսիկները, արաբները, մոնղոլները, թուրքերը, որոնք նվաճել ու ճնշում էին նրանց երկրները: Բայց մի՞թե նրանց մեկուսացման ու ատելության պատճառը տարբեր ազգությունների գոյությունն էր: Ամենևին էլ ոչ—պատճառը ֆեոդալական (կամ ստրկատիրական) մասնավոր սեփականությունն էր, այս կամ այն ազգության տիրապետող դասակարգի՝ մյուս ազգությունների վրա իշխելու, նրանց հարստահարելու անկանգ ձգտումը:

Վերջին տասնամյակում կապիտալիզմին նախորդող հասարակարգերում մարդկանց սոցիալական և էթնիկական միավորումների ուսումնասիրությունը լայն ծավալ է ստացել: Եվ դա միանգամայն հասկանալի է. գիտության մեջ տեղ գտած դոգմատիզմի հաղթահարումն այս բնագավառում էլ իր պտուղներն

է տալիս: Վերջին շրջանում հրապարակված հոդվածների մեջ գիտական տեսակետից հետաքրքրական է հատկապես Ս. Ա. Տոկարևի «Էթնիկական ընդհանրությունների տիպերի պրոբլեմը» («Вопросы философии» ամսագրի 1964 թ. № 11-ում): Հետազոտելով էթնիկական ընդհանրությունների պատմական զարգացումը և նրանց սոցիալական կազմի փոփոխությունները տարբեր հասարակարգերում, Ս. Ա. Տոկարևը առաջադրում է չորս տիպ. ա) ցեղ՝ համայնական-տոհմական կարգին հատուկ էթնիկական ընդհանրություն, որն ընդգրկում է տվյալ տերիտորիայի սահմաններում ապրող մարդկանց ամբողջ խումբը (նրանց միավորելով առաջին հերթին արյունակցական-ազգակցական կապերով), բ) դեմոս՝ ստրկատիրական հասարակարգին հատուկ էթնիկական ընդհանրություն, որն ընդգրկում է տվյալ երկրի միայն ազատ բնակչությունը, չընդգրկելով ստրուկներին՝ այդ հիմնական արտադրող դասակարգը, գ) ժողովուրդ (ռուսերեն՝ народность)՝ վաղ ֆեոդալական կարգի էթնիկական ընդհանրություն, որը հիմնականում ընդգրկում է աշխատավոր բնակչությանը, գյուղացիներին և քաղաքացիներին, չընդգրկելով ֆեոդալների իշխող դասակարգը, դ) ազգ՝ ուշ ֆեոդալական և կապիտալիստական կարգի էթնիկական ընդհանրություն, որը կրկին ընդգրկում է տվյալ տերիտորիայի բնակչության բոլոր խավերը (մեծ մասամբ տնտեսապես-քաղաքականապես միավորված), բայց արդեն հակամարտ դասակարգերի տրոհված բնակչությունը: Ազգը գոյություն ունի նաև սոցիալիստական հասարակարգում, բայց արդեն որպես սոցիալապես միատարր զանգված:

Եզրափակելով, Ս. Ա. Տոկարևը նշում է, որ «Այսպիսով, էթնիկական ընդհանրությունը մարդկանց այնպիսի ընդհանրություն է, որը կարող է հիմնված լինել սոցիալական կապերի տարբեր տեսակների՝ ծագման, լեզվի, տերիտորիայի, պետական պատկանելության, տնտեսական կապերի, մշակութային կացութաձևի, կրոնի վրա: Կապի այդ ձևերի միջև պատմականորեն պայմանավորված հարաբերակցությունը ծնում է էթնիկական ինքնագիտակցություն, որի միջոցով մեր ժամանակաշրջանում սուբյեկտիվորեն որոշվում է այս կամ այն անձի, այս կամ այն սոցիալական խմբի էթնիկական պատկանելությունը» («Вопросы философии» 1964, № 11, էջ 53):

Այս հարցադրումների մեջ բավականին թարմություն կա, բայց կան նաև վիճելի կողմեր: Այսպես, օրինակ, կարելի է նշել, որ դեմոս կոչված տիպը դժվար է ընդհանրական համարել, որովհետև այն հատուկ է դասական ստրկությանը, իսկ այժմյան ժողովուրդների մեծ մասը դասական ստրկության աստիճան չի անցել: Այնուհետև, ժողովուրդը (народность) հակամարտ դասակարգերի տրոհված ընդհանրություն է, որովհետև այն ընդգրկում է ոչ միայն գյուղացիներին ու քաղաքացիներին, այլև, որպես կանոն, մանր ֆեոդալներին: Վերջապես, այդ բոլոր ընդհանրությունները ոչ թե սոսկ էթնիկական են, այլ, մի կողմից, էթնիկական, մյուս կողմից՝ սոցիալական:

Մի քանի խոսք գրականության մեջ գործածվող ժողովուրդ (ռուսերեն народ և ռուսերեն народность, որը հայերեն սովորաբար թարգմանվում է ժողովուրդ բառով) տերմինների մասին:

Ժողովուրդ հասկացության մեջ սովորաբար ընդգրկում են ցեղից հետո հանդես եկող բոլոր սոցիալ-էթնիկական ընդհանրությունները (և՛ դեմոսը, և՛ ազգությունը, և՛ ազգը): Ընդհանրական են հին և նոր ժողովուրդներ, ռուս ժողովուրդ, հույն ժողովուրդ, չին ժողովուրդ և այլ արտահայտությունները:



Բայց ժողովուրդ հասկացությունն ունի ևս երկու իմաստ. ա) այն նշանակում է նաև տվյալ երկրի, տվյալ պետության ամբողջ բնակչությունը (օրինակ, սովետական ժողովուրդ՝ ՍՍՌՄ մեջ մտնող բոլոր ազգերի ու ազգախմբերի հանրագումարի իմաստով), բ) ժողովուրդ ասելով հաճախ հասկանում են տվյալ ազգության աշխատավոր զանգվածները («ժողովրդի խոսքը», «ժողովուրդը՝ պատմության կերտողն է») և այս իմաստով «ժողովրդական» արտահայտությունը նշանակում է աշխատավորների հետ առնչվող («ժողովրդական ստեղծագործություն», «մշակույթի ժողովրդայնություն»): Այսպիսով, «ժողովուրդ» հասկացությունն այժմ մեծ մասամբ հանգեցվում է «աշխատավոր ժողովուրդ» հասկացությանը:

Սակայն ժողովուրդ բառով դժվար է բնութագրել հասարակական մի շարք երևույթներ, որոնք կապ ունեն մարդկանց տվյալ սոցիալ-էթնիկական ընդհանրության հետ: Օրինակ, պետությունը. լինելով շահագործող դասակարգի ձեռքին բռնության գործիք, պետությունն արտաքնապես հանդես է գալիս որպես տվյալ ժողովրդի շահագործող դասակարգի ապարատ: Դրա համար էլ մենք ասում ենք հունական, հռոմեական, հայկական պետություն՝ տվյալ ժողովրդի պետականության իմաստով: Բայց մենք չենք կարող ասել, որ պետությունը ժողովրդական բնույթ ունի: Ահա այստեղ է, որ օգնության է գալիս 18-րդ դարում, ֆրանսիական բուրժուական մեծ ռևոլյուցիայի ժամանակաշրջանում գործածության մեջ մտած ազգ (нация, nation) տերմինը: Ազգն արդեն որոշակիորեն նշանակում է տվյալ սոցիալ-էթնիկական ամբողջությունը՝ ֆրանսիական ազգ, ռուս ազգ, հայ ազգ և այլն: Եվ միանգամայն օրինաչափ ու միանշանակ են ազգային պետություն, ազգային մշակույթ, ազգային եկեղեցի, ազգային սովորույթ և այլն արտահայտությունները:

Այնուհետև, ռուսերեն народность տերմինը, որը հայերեն սովորաբար թարգմանվում է ոչ լրիվ հոմանիշ ժողովուրդ բառով, նույնպես բազմանշանակ է: Այն մի կողմից նշանակում է ժողովրդականություն («народность искусства» և այլն), մյուս կողմից՝ ավելի ու ավելի շատ է գործածվում ազգից առաջ եղած սոցիալ-էթնիկական ընդհանրությունը նշանակելու համար: Բայց այս իմաստով այն ունի նույն պակասությունը, ինչ որ ժողովուրդ (народ) տերմինը, որովհետև, օրինակ, 15—16-րդ դարերի ռուսական պետությունը չի կարելի բնութագրել որպես «народностное государство», իսկ ազգային պետություն (национальное государство) կարելի է կոչել: Մյուս կողմից, ռուսերեն ընդհանրապես անընդունելի է народностное բառաձևը:

Այդ առումով նախակապիտալիստական սոցիալ-էթնիկական ընդհանրությունները նշանակելու համար մեզ ավելի ընդունելի են թվում հայերեն ազգություն, իսկ ռուսերեն национальность բառերը: Դա ոչ թե հարմարությունից կամ զուտ բառային-ձևական տեսակետից է նախընտրելի, այլև ըստ էության: Ազգությունն այն էթնիկական հիմքն է, որի վրա բարձրանում են ազգերը: Ավելի ճիշտ կլինի ասել, որ ազգությունն ազգի նախնական աստիճանն է, քանի որ ազգությունն ու ազգը բնութագրվում են նույն հատկանիշներով՝ միայն զարգացման տարբեր աստիճաններում, բացի այդ երկուսն էլ, ինչպես նշեցինք, կապված են մի շարք հասարակական երևույթների հետ, որոնք իրենց ձևով ազգային են (պետություն, մշակույթ, եկեղեցի, որոշ սովորույթներ ու տրադիցիաներ և այլն): Ի միջի այլոց, Վ. Ի. Լենինը, որպես կանոն, գրում էր

ազգեր և ազգություններ (нации и национальности), նույն ձևով է գրված նաև պարտիայի որոշումներում։

Ազգությունների վերածումը ազգերի՝ թեև ամենուր հիմնված է արդյունաբերության զարգացման, բուրժուական հարաբերությունների ծագման վրա, տարբեր երկրներում ու դարաշրջաններում զանազան ձևերով է տեղի ունենում։ Արևմտյան Եվրոպայում ժամանակակից ազգերն առաջացել են համապատասխան ազգության տարբեր հատվածների (ազգախմբերի) համախմբման հետևանքով, օրինակ, ֆրանսիական ազգն առաջացել է բուրգունդական, պիկարդիական, գասկոնական, պրովանսալական, նորմանդական և այլ ազգախմբերի համախմբումից, Եվրոպայի Արևելքում ժամանակակից ռուսական, ուկրաինական և բելոռուսական ազգերն առաջացել են այլ ուղիով՝ մեկ հին ռուսական ազգությունից բաժանված տարբեր խմբերի համախմբումով, հայ ազգն առաջացել է միասնական հայ ազգության հիման վրա, հյուսիս ամերիկյան ազգն առաջացել է եվրոպական տարբեր ազգերի, ամերիկյան հնդկացիների և աֆրիկյան մի շարք ցեղերի ներկայացուցիչների համախմբումից՝ անգլիական ազգության գերակշռության պայմաններում, հարավ ամերիկյան ազգերը կազմավորվել են Եվրոպայի մի քանի ազգերի (իսպանացիներ և պորտուգալացիներ), ամերիկյան հնդկացիների և աֆրիկյան նեգրերի միախառնումից և այլն։

Մենք տեսնում ենք, թե որքան բազմազան են ժամանակակից ազգերի էթնիկական համախմբման ուղիները։ Եվ ամեն անգամ այս կամ այն կողմն է բնորոշ դառնում՝ մի տեղ տերիտորիան, մի այլ տեղ լեզուն, մի երրորդում՝ մշակույթը, բայց ամենուր նույն տնտեսական հիմքն է՝ ֆեոդալական հարաբերությունների ներսում բուրժուական հարաբերությունների սաղմնավորումը։

Մի հանգամանք ևս. բազմաթիվ ազգություններից բաղկացած երկրում բուրժուական հարաբերությունների զարգացման պրոցեսը նրա բաղկացուցիչ ազգություններին ավելի արագ է բուրժուականացնում՝ կապիտալիստական հարաբերությունների մեջ մտնելու իմաստով, քան եթե նրանք առանձին միավորներ լինեին, ինչպես և մի երկրի զարգացումն ազդում է նրա հետ կապված մյուս երկրների զարգացման վրա։

Այս բոլորից ելնելով կարելի է ասել, որ ամեն մի ազգ որոշակի ազգություն է, որոշակի (մեկ կամ մի քանի) ազգության զարգացման բարձր աստիճան, որ ազգությունն ու ազգը կարելի է դիտել որպես սոցիալական և էթնիկական ընդհանրության՝ ցեղից տարբեր որակական վիճակի՝ ազգային ընդհանրության տարբեր աստիճաններ։ Ինչպես մի հոդվածում մենք առիթ ենք ունեցել ցույց տալու, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ոչ միայն գործածել են ազգություն և ազգ հասկացությունները և այս կամ այն առումով դրանք իրարից տարբերակել, նշելով, որ «ազգություններն աճում են ազգերի», այլև լայնորեն գործածել են ազգ հասկացությունը, դիֆերենցելով այն՝ տարբեր ֆորմացիաներում ազգային ընդհանրության նշանակման համար։ Նրանց երկերում դրա համար էլ կարելի է հանդիպել ոչ միայն «կապիտալիստական ազգ», այլև «բարբարոս ազգ», «անտիկ ազգ», «ֆեոդալորեն կազմակերպված ազգ» արտահայտություններին։ Նույն կարգի արտահայտություններ՝ «հետամնաց ազգեր», «կապիտալիստորեն չզարգացած ազգեր», «կապիտալիստական ազգ», «սոցիալիստական ազգ» մենք հանդիպում ենք Վ. Ի. Լենինի երկերում։ Հետևապես չի կարելի չարաշահել ազգ հասկացությունը և ժամանակակից ժողովուրդների համար պնդել, թե այս մեկը, որ ավելի զարգացած է, ազգ է, իսկ մյուսը, որը հա-



մեմատաբար հետամնաց է, ազգություն է, ճիշտ չի լինի նաև պնդել, որ բոլոր ազգերը միաժամանակ են առաջացել։

Խոսելով ազգերի ինքնորոշման իրավունքի մասին, Վ. Ի. Լենինը ընդգծում է, որ «պետք է հաշվի առնել այն, թե ինչ աստիճանի վրա է կանգնած տվյալ ազգը միջնադարից դեպի բուրժուական դեմոկրատիան և բուրժուական դեմոկրատիայից դեպի պրոլետարական դեմոկրատիան ընկած ճանապարհին» (Երկեր, հ. 29, էջ 200) և պահանջում էր առանձնահատուկ վերաբերմունք «առավել հետամնաց պետությունների և ազգերի վերաբերմամբ, որտեղ գերակշռում են ֆեոդալական կամ նահապետական-գյուղացիական հարաբերությունները» (Երկեր, հ. 31, էջ 170)։

Այսպիսով, ակնհայտ է, որ մարքսիզմ-լենինիզմը չի քարացնում ազգ հասկացությունը, այլ ելնում է այն իրականությունից, որ կապիտալիզմի ժամանակ ազգերը ոչ միայն անիրավահավասար են, այլ նաև փաստորեն անհավասար, այսինքն՝ դասակարգային ու ազգային ճնշման հետևանքով ազգերի մի մեծ խումբ ետ է մնում իր տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացման մեջ։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները բացահայտել են կապիտալիզմի ժամանակ ազգային հարցի զարգացման երկու տենդենցները՝ մի կողմից ազգային կյանքի և ազգային շարժումների զարթոնք, պայքար ամեն տեսակ ազգային ճնշման դեմ, ազգային պետությունների ստեղծում, մյուս կողմից՝ ամեն տեսակ հարաբերությունների զարգացում ու հաճախացում ազգերի միջև, ազգային միջնորմների քանդում, կապիտալի, առհասարակ տնտեսական կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի ինտերնացիոնալ միասնության ստեղծում։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Երկու տենդենցն էլ կապիտալիզմի համաշխարհային օրենքն են։ Առաջինը գերակշռում է նրա զարգացման սկզբում, երկրորդը բնորոշում է հասուն կապիտալիզմը, որն ընթանում է դեպի իր փոխարկումը սոցիալիստական հասարակության» (Երկեր, հ. 20, էջ 14)։

Սա նշանակում է, որ այդ տենդենցները գործում են այնտեղ և այն ժամանակ, երբ զարգանում է կապիտալիզմը։ Իսկ կապիտալիզմը համաշխարհային մասշտաբով զարգանում է անհավասարաչափ։ Արևմտյան Եվրոպայում նրա զարգացումն սկսվել է դարեր առաջ, իսկ Ասիայի և Աֆրիկայի մի շարք երկրներում կապիտալիստական զարգացումը 20-րդ դարում է սկիզբ առել։ Հետևաբար, գաղութային և կախյալ վիճակում գտնվող շատ երկրներում մեր օրերում էլ գործում է առաջին տենդենցը՝ ազգային կյանքի զարթոնքի, ազգային պետությունների առաջացման, ամեն տեսակ ազգային ճնշման դեմ պայքարելու տենդենցը։ Եվ այդ ազգային շարժումների մեջ, ինչպես նշում է Լենինը, կա համադեմոկրատական բովանդակություն, որը մարքսիստները պաշտպանում են։

Այսպիսով, կարելի է ասել, որ ազգության սկզբունքը անխուսափելի է բուրժուական հասարակության մեջ և, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, «հաշվի առնելով այդ հասարակությունը՝ մարքսիստը լիովին ընդունում է ազգային շարժումների պատմական օրինականությունը» (Երկեր, հ. 20, էջ 23)։

Այս բոլորից հետո հարց է ծագում. կարելի՞ է արդյոք ազգը, ազգային ընդհանրությունը բնութագրել որպես զուտ բուրժուական երևույթ, նույնացնել ազգը և բուրժուազիան։ Անտարակույս, չի կարելի։ Բուրժուազիան կապիտալիզմի պայմաններում ազգի ղեկավար ուժն է, նրա վրա իշխողը, նա իր կամքն

է թելադրում ազգի աշխատավոր դասակարգերին, բնորոշում ազգերի քաղաքական և տնտեսական հարաբերությունների բնույթը (մի ազգի կողմից մյուսների ճնշում ու շահագործում), բայց ազգ, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, «նշանակում է բուրժուազիա պրոլետարիատի հետ միասին»։ Հետևաբար, կապիտալիզմի պայմաններում ազգը ներքուստ երկճեղքված է հակամարտ դասակարգերի, որոնց և՛ քաղաքական, և՛ գաղափարական, և՛ բարոյական ըմբռնումները հակադիր են։ Հենց այդ իսկ իմաստով էլ Վ. Ի. Լենինը գրում էր, որ «կա երկու ազգ ժամանակակից յուրաքանչյուր ազգի մեջ», «կա երկու ազգային կուլտուրա յուրաքանչյուր ազգային կուլտուրայի մեջ», կա երկու աշխարհայեցողություն ազգային հարցում՝ բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ «երկու թշնամական անհաշտ լոզունգներ»։

Եթե դա ճշմարիտ է, իսկ դա անկասկած ճշմարիտ է և մարքսիզմ-լենինիզմի հիմնական հասկացություններից մեկն է, ապա հարց է ծագում, որտեղի՞ց են սնունդ առնում այն թյուր պատկերացումները, թե իբր ազգերը «չարիք» են, «բացասական երևույթ» և այլն։ Իրականությունը դրա համար հիմք չի տալիս, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը՝ նույնպես։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նման ըմբռնումների տեսական հիմքը բուրժուական ազգերին Ի. Վ. Ստալինի տված ոչ ճիշտ բնութագրումն է։ Իր «Ազգային հարցը և լենինիզմը» հոդվածում նշելով, որ կապիտալիզմի ժամանակ ազգերի գլխավոր ղեկավարող ուժը բուրժուազիան և նրա ազգայնական պարտիաներն են, Ի. Վ. Ստալինը եզրակացնում էր. «Դասակարգային խաղաղություն ազգի ներսում «հանուն ազգի միասնության», իր ազգի տերիտորիայի ընդարձակում ուրիշների ազգային տերիտորիաները զավթելու միջոցով, անվստահություն և ատելություն դեպի ուրիշ ազգերը, ազգային փոքրամասնությունների ճնշում, միասնական ճակատ իմպերիալիզմի հետ,— այս է այդ ազգերի իդեական և սոցիալ-քաղաքական բագաժը» (Երկեր, հ. 11, էջ 384)։

Ակնհայտ է, որ նման բնութագիր կարելի է վերագրել ոչ թե ամբողջ ազգին, այլ սոսկ տվյալ ազգի շահագործող դասակարգերին, և այն էլ ոչ բոլոր, այլ սոսկ գաղութակալ, ուրիշ ազգերի վրա իշխող ազգերի շահագործող դասակարգերին։ Ինչպես իրավացիորեն նշում են Մ. Ա. Սվերդլինը և Պ. Մ. Ռոգաչևը. «Սխալն այն է, որ Ստալինը դոգմայացրեց «բուրժուական ազգ» հասկացությունը, տիրապետող բուրժուազիայի և իմպերիալիստական պետության հատկանիշները տարածեց ամբողջ ազգի վրա և, ըստ էության, նույնացրեց ազգի և հասարակական կարգի հասկացությունները» («Вопросы философии», 1964, № 10, էջ 179)։

Հենվելով բուրժուական ազգի ստալինյան բնութագրի վրա, որոշ հեղինակներ ժամանակին հռչակում էին, թե իբր «կապիտալիստական ազգերին հատուկ է ազգային էգոիզմը», «այդ ազգերը բուրժուական են իրենց գաղափարախոսությամբ» և նույնիսկ այնպիսի անհեթեթություն, ինչպես՝ «կապիտալիզմի պայմաններում ազգը բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության վրա բուրժուազիայի տնտեսական և քաղաքական տիրապետության հասարակական ձևն է» (Տես՝ В. Галкин, Возникновение и развитие социалистических наций в СССР, М. 1951, էջ 24)։

Իհարկե, այդպես մտածելու դեպքում ազգը կարելի է հայտարարել և՛ «բացասական երևույթ», և՛ «սոցիալական չարիքների աղբյուր», և՛ պահանջել, որ ազգերը որքան կարելի է շուտ վերացվեն։



Ասելով, որ ազգերը զարգացման բուրժուական դարաշրջանի արդյունքն են, և որ ազգության սկզբունքը անխուսափելի է բուրժուական հասարակության մեջ, Վ. Ի. Լենինը երբեք այն կարծիքին չի եղել, թե ազգը սոսկ կապիտալիզմի դարաշրջանի կատեգորիա է և կապիտալիզմի վերացումով պետք է վերանա։ Ճիշտ հակառակը կարելի է պնդել. Վ. Ի. Լենինը դեռևս Հոկտեմբերյան ռևոլյուցիայից առաջ գործածում էր սոցիալիստական ազգ արտահայտությունը, բազմիցս գրում ազգերի ինքնորոշման մասին և՛ կապիտալիզմի, և՛ սոցիալիզմի ժամանակ և հատկապես ընդգծում ոչ թե ազգերի վերացման հարցը, այլ սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ նրանց և՛ իրավական, և՛ փաստական հավասարության հաստատման անհրաժեշտությունը։ Իր մեծ ուսուցիչների՝ Մարքսի և Էնգելսի նման Լենինն էլ ելնում էր իրականությունը ճշմարիտ արտահայտող այն դրույթից, որ սոցիալիզմի հաստատումով ոչ թե ազգերն են վերանում, այլ վերանում են նրանց կղզիացումը, նրանց հակադրությունն ու թշնամությունը միմյանց նկատմամբ, որովհետև վերանում է այդ բոլորը ծնող հողը՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, հակամարտ դասակարգերը, մարդու շահագործումը մարդու կողմից։

Դեռևս «Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» մեջ, այսինքն՝ 118 տարի առաջ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը շատ որոշակիորեն կանխատեսել են այդ բանը. նրանք ուղղակի նշում էին, որ քաղաքական իշխանությունը նվաճելով, պրոլետարիատը պետք է բարձրանա, հասնի «ազգային դասակարգի դրությանը, կազմվի որպես ազգ, թեև բոլորովին ոչ այն իմաստով, ինչպես բուրժուազիան է այդ հասկանում»։ Այնուհետև նրանք նշում էին, որ արդեն բուրժուազիայի զարգացմամբ ավելի ու ավելի անհետանում են «ազգային կղզիացումն ու ժողովուրդների հակադրությունը» և եզրակացնում, որ «Պրոլետարիատի տիրապետությունն էլ ավելի կարագացնի նրանց անհետացումը։ Գոնե քաղաքակիրթ երկրների ջանքերի միացումը պրոլետարիատի ազատագրման առաջին պայմաններից մեկն է։

Ինչ չափով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից։

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերություններն ազգերի միջև» (Ընտիր երկեր երկու հատորով, հ. 1, էջ 34)։

Սա է այն տեսական հիմքը, որից ելնում էր Վ. Ի. Լենինը, որի վրա հենվում է կոմունիստական պարտիան։ Այս գաղափարն է արտահայտված և՛ Վ. Ի. Լենինի բազմաթիվ երկերում, և՛ մեր պարտիական կարևորագույն փաստաթղթերում, մասնավորապես ազգային հարցի մասին որոշումներում և պարտիայի ծրագրի մեջ. սոցիալիզմը ոչ թե վերացնում է ազգերը, այլ վերացնում է նրանց հակադրությունն ու թշնամությունը և ամենալայն պայմաններ ստեղծում ազգերի միասնության, նրանց ինտերնացիոնալ համախմբման, նրանց հավասարաչափ զարգացման և ծաղկման, նրանց անշեղ մերձեցման համար։ Հենց այս սկզբունքներն են ընկած ազգային հարցում կոմունիստական պարտիաների ազգային քաղաքականության հիմքում և իրականություն են դառնում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրներում։

Իսկ ի՞նչ հիմքից են ելնում այն ընկերները, որոնք գրում են սոցիալիզմի հաստատումով ազգերի վերացման մասին, այդ «չարիքի աղբյուրի» հաղթահարման անհրաժեշտության մասին։ Դա ըստ երևույթին Ի. Վ. Ստալինի կող-

մից ազգը զուտ բուրժուական էություն համարելու սխալ բնութագրման անմիջական շարունակությունը կազմող բուրժուական ազգերի լիկվիդացման մասին ոչ ճշգրիտ արտահայտություններն են։ Իր «Ազգային հարցը և լենինիզմը» աշխատության մեջ Ստալինն իրավացի կերպով նշում էր, որ կապիտալիզմի վերացումը ամենևին էլ ազգերի վերացում չի նշանակում, որ սոցիալիզմի ժամանակաշրջանի ազգերը «...ծագեցին և զարգացան հին, բուրժուական ազգերի բազայի վրա կապիտալիզմի լիկվիդացման հետևանքով, նրանց սոցիալիզմի ոգով արմատապես վերափոխվելու միջոցով։ Ոչ ոք չի կարող ժխտել, որ Սովետական Միության այժմյան սոցիալիստական ազգերը—ռուսական, ուկրաինական, բելոռուսական, թաթարական, բաշկիրական, ուզբեկական, ղազախական, ադրբեջանական, վրացական, հայկական և մյուս ազգերը—արմատապես տարբերվում են հին Ռուսաստանի համապատասխան հին, բուրժուական ազգերից ինչպես իրենց դասակարգային կազմով և հոգևոր կերպարանքով, այնպես էլ իրենց սոցիալ-քաղաքական շահերով ու ձգտումներով» (Երկեր, հ. 11, էջ 286)։

Ինչպես տեսնում ենք, հարցի դրվածքը հետևյալն է. ոչ թե ազգերի լիկվիդացում, այլ «կապիտալիզմի լիկվիդացման հետևանքով» ազգերի դասակարգային կազմի, հոգևոր կերպարանքի և սոցիալ-քաղաքական շահերի ու ձգտումների արմատական վերափոխում։ Բայց այս, ըստ էության ճիշտ, դրվածքի կողքին նույն աշխատության մեջ տեղ են գտել նաև այնպիսի արտահայտություններ, ինչպես արդեն ոչ թե «կապիտալիզմի «լիկվիդացում», այլ «կապիտալիզմի ժամանակ գոյություն ունեցող ազգերի լիկվիդացում», «Հին, բուրժուական ազգերի փլատակների վրա ծագում և զարգանում են նոր, սոցիալիստական ազգեր» (նույն տեղում, էջ 387)։

Ըստ էության, այստեղ նույն պատմությունն է կրկնվում. կապիտալիզմի ժամանակ կազմավորված ազգերը զուտ բուրժուական էություններ են, սոցիալիստական ռևոլյուցիայից հետո դրանք լիկվիդացվում են, մնում են ինչ-որ «փլատակներ» (իսկ թե ի՞նչ են իրենցից ներկայացնում այդ փլատակները, Ստալինը խոհեմաբար չի բացատրում), ինչ-որ մնացորդներ, որոնց բազայի վրա ծագում ու զարգանում են նոր ազգեր։

Նման պատկերացումը, որն ինքնին արդեն հակասում է ազգային հարցի մասին իր իսկ Ստալինի գրած աշխատությունների հիմնական բովանդակությանը, անընդունելի է, որովհետև բուրժուական պայմաններում գոյություն ունեցող ազգի մեջ չի տեսնում այն նոր ուժերը, որոնք ազգի սոցիալիստական վերափոխման հիմքն են կազմում՝ չի տեսնում բանվոր դասակարգին, աշխատավորներին, նրանց դեմոկրատական ու սոցիալիստական գաղափարախոսությունը, հոգևոր կերպարը, սոցիալ-քաղաքական ձգտումներն ու շահերը և այլն։ Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո ոչ թե ազգերի «փլատակներն» են մնում, այլ մնում է ազգերի հիմնական զանգվածը, նրանց 9/10-ը կազմող բանվորներն ու գյուղացիները, ազգը արդեն ոչ թե «բուրժուազիան է բանվորների հետ միասին», այլ բանվորները՝ մյուս աշխատավոր դասակարգերի ու խավերի հետ միասին։ Միանգամայն իրավացի են այս տեսակետից Մ. Ա. Սվերդլինը և Պ. Մ. Ռոգաչևը, որոնք գրում են. «Ռևոլյուցիայի ընթացքում հասարակարգը ենթարկվում է արմատական հեղաբեկման։ Իսկ ազգը ոչ թե ոչնչացվում է, այլ **վերափոխվում** սոցիալիստական ազգի։ Առանց այս բանի հաշվառման անհնարին է հասկանալ հասարակության հոգևոր կյանքի զարգացման մի շարք պրոցեսներ, օրինակ, մշակութային ժառանգականության պրոբլեմը։ Սոցիալիստական ազգն իր նախորդից տարբերվում է սոցիալական միասեռությամբ, ներքին միասնությամբ և այլ էական հատկանիշներով։ Սակայն չի կարելի բուրժուական կարգի պայմաններում գտնվող ազգը հակադրել սոցիալիստական ազգին այնպես, ինչպես հակադրվում են, օրինակ, բուրժուական գաղափարախոսությունը սոցիալիստականին, իմպերիալիզմի լագերը սոցիալիզմի լագերին։ «Բուրժուական ազգ» հասկացության նման մեկնաբանությունը խառնաշփոթում է ազգի պատմական զարգացման մեջ ժառանգականության հարցը» («Вопросы философии», 1964, № 10, էջ 179—180)։



Ազգային ընդհանրությունը սոցիալիզմի պայմաններում անփոփոխ չի մնում, նրա բոլոր կողմերը հասարակական զարգացման ընթացքում փոխվում ու զարգացման ավելի բարձր աստիճանի են հասնում։ Սակայն ճիշտ չի լինի դրանից ելնելով եզրակացնել, թե սոցիալիզմի ժամանակ ազգային հատկանիշները մարում են, թե սոցիալիզմի ժամանակ ազգերի միակ հատկանիշը մնում է ազգային լեզուն, ինչպես հայտարարում են առանձին սովետական գիտնականներ։ Այդպիսի հարցադրման անհիմն լինելը բացահայտել են Ի. Պ. Ծամերյանը, Ա. Մ. Եղիազարյանը և ուրիշներ։ Իրավացի է Ի. Պ. Ծամերյանը, երբ նշում է, որ «Սակայն այժմ վաղաժամ է խոսել ազգի բոլոր հատկանիշների «մարման» և մեն միայն լեզվի պահպանման մասին։ Այդպիսի պնդումը հակասում է բուն կյանքին։ Դա մեր կարծիքով, միակողմանի մոտեցում է պրոբլեմի նկատմամբ»։

Գրականության մեջ վերջին տարիներին «սոցիալիստական ազգեր» հասկացության հետ միասին քաղաքացիության իրավունք է ստացել նաև «կոմունիստական ազգեր» հասկացությունը։ Դա գիտականորեն արդարացված հասկացություն է, որն արտահայտում է ազգային ընդհանրությունների հետագա զարգացումը և ծաղկումը, նրանց նոր, կոմունիստական սոցիալ-տնտեսական և հոգևոր բնույթը։

Ամփոփենք. ազգային ընդհանրությունների զարգացումը բարդ ու բազմակողմանի, մի քանի հասարակական-տնտեսական ֆորմացիաներ ընդգրկող բնապատմական պրոցես է և նրա գիտական հետազոտությունը կարևորագույն նշանակություն ունի և՛ մեր սոցիալիստական իրականության, և՛ մեր միջազգային քաղաքականության համար։

Ազգերը ոչ «բացասական երևույթ» են, ոչ «սոցիալական չարիքների աղբյուր» և ոչ էլ «բուրժուազիայի կողմից բանվոր դասակարգի վրա իշխելու ձև», այլ հասարակական կյանքի բարդ երևույթ և մարքսիզմ-լենինիզմը, մեր պարտիան նպատակ են դնում ոչ թե վերացնել կամ ձուլել ազգերը մեր երկրում, այլ ապահովել մեր երկրի սոցիալիստական ազգերի հետագա ծաղկումը և ավելի սերտ մերձեցումը՝ նրանց լիակատար հավասարության, եղբայրության ու բարեկամության պայմաններում։

# ԽՈՍՔ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՊՈԵԶԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

«Ի՞նչ է պոեզիան»,— այս հարցադրումով է սկսվում Սուրեն Աղաբաբյանի հոդվածաշարը «Գրական թերթում»: Սկզբում շատերին անհասկանալի թվաց, թե ինչու է այսօրվա քննադատը դարերի խորքից հանել այդ հարցը և անգամ համարձակվել ինչ-որ նոր պատասխան տալ, երբ հինը դեռևս ուժի մեջ է, եթե չասենք ավելի խորն է ու համոզիչ: Ուղիղ 125 տարի առաջ ռուս հանճարեղ քննադատին նույնպես մտահոգել է պոեզիայի ինչ լինելը: Բայց նախքան այդ դժվարին ու կարևոր խնդրի պարզաբանումը, նա հարկ է համարել դիմել ընթերցողին՝ ճշտելու համար, թե ինչով է մարդու կենդանի դեմքը տարբերվում մոմից պատրաստածից և ինչու վերջինս, որքան ավելի արվեստով է կերտված ու ավելի նման կենդանի դեմքին, այնքան ավելի է վանող դառնում: «Պարզ է,— եզրակացրել է քննադատը,— որովհետև առաջինում կյանք կա, իսկ երկրորդում՝ ոչ: Պոեզիան հենց այդ կյանքի արտահայտությունն է, ավելի ստույգ ասած, կյանքն ինքը»: Այդքանը թերի համարելով, նա գտել է, որ պոեզիայում կյանքն ավելի է կյանք. քան իրականության մեջ. և վերջապես, «պոեզիան համաշխարհային կյանքի զարկերակի բաբախումն է, նրա արյունը, կրակը, լույսը և արևը»: Բոլոր այս մտքերն ու զգացումները բխել են ռուս և համաշխարհային պոեզիայի հարուստ փորձից և առաջին անգամ ձևավորվել Լերմոնտովի բանաստեղծությունների մասին գրած հոդվածում:

Այսպիսով, իրեն մտատանջող հարցի պատասխանը ռուս քննադատը որոնել է ո՛չ միայն ժամանակի կյանքի, այլև այդ կյանքն արտացոլող պոեզիայի մեջ, ոխերիմ հակառակորդ լինելով ամեն տեսակի գեղագիտական կաղապարների, որոնցից շատ է տուժել «աստվածային խոսքի» արվեստը: Անցել են տասնամյակներ: Փոխվել են աշխարհը, կյանքը, մարդիկ, փոխվել են նաև պոեզիան ու նրա չափանիշները: Նախնիների նույնիսկ հանճարեղ տողերի կրկնությունը, երեկվա աշխարհընկալմանը գերի մնալը, անցյալից այսօրվա կյանքը դիտելը, պոեզիան կարող են տանել դեպի կործանում: Հետևապես, եթե այդքան արմատական փոփոխություններ են կատարվել, ապա չի կարող անփոփոխ մնալ «ինչ է պոեզիան» հարցի պատասխանը, եթե, իհարկե, իրար հետ խոսենք փաստերի և ոչ թե ֆորմուլաների լեզվով:

Այդ տեսակետից միանգամայն իրավացի է Աղաբաբյանը, վերստին արծարծելով այդ հին հարցը: Ըստ երևույթին մեծ է նրա մտահոգությունը, ավելի ճիշտն ասած, նրան բնավ չի գոհացնում այսօրվա պոեզիայի վիճակը, այդ պատճառով էլ անհրաժեշտ է գտել խորքերից սկսելով զրույցը, ճշտել մի շարք սկզբունքներ, հիմնավորել իր տպավորություններն ու համոզմունքները:

Սովետական գրականություն ամսագրի հարցաթերթիկին տված նրա պատասխանում կարդում ենք. «Մեր գրականության մեջ դեռևս վաղաժամ է խոսել մեծ նվաճումների մասին, այսինքն այնպիսի նվաճումների մասին, որոնք հայտնություններ լինեն միութենական գրական ասպարեզի համար»: Այդ նվաճումները չկան, որովհետև այսօրվա և՛ արձակը, և՛ Հ. Սահյանի ու Պարույր Սևակի քնարերգությունը «դեռևս ապրում են նոր ճանապարհների ու գրական բարձունքների զգացողությամբ, նախապատրաստվում են դրան»: Այսպիսով, կան «կանխանշաններ», ստեղծագործական նոր հատկությունների «տենդագին խմորումներ», բայց բարձունքը, մեծ նվաճումը՝ չկան: Պոեզիան այն դեպքում կարող է ճաշակել այդ ամենի ուրախությունը, եթե «ամբողջ երեսով շրջվի դեպի մարդը՝ արվեստի հավերժական ուսումնասիրության առարկան»: Բոլոր այս պնդումները, առաջին հայացքից, ճշմարիտ են թվում: Արդարև, պոեզիան, գրականությունն ընդհանրապես, ինչպիսի բարձունքների էլ որ հասնի, ինչ նվաճումներ էլ որ ձեռք բերի, միևնույնն է, օրակարգից չեն հանվելու ստեղծագործական նոր հատկությունների տենդագին որոնումները, ոչ էլ նոր ճանապարհների ու գրական բարձունքների զգացողության անհրաժեշտությունը: Իրականացված իդեալը միշտ էլ նոր, ավելի բարձր իդեալ է ծնելու, այսօրվա մեծը վաղվա համեմատ փոքր է երևալու: Այդպիսին է վերելքի ուղին բռնած կյանքի ու պոեզիայի ճակատագիրը:

Մենք ոչ մի առարկություն չունենք Աղաբաբյանի երազած վաղվա մեծ նվաճումների, նույնքան մեծ պոետական բարձունքի դեմ: Ինչ վերաբերում է գալիքին, ցանկալիին— ճշմարիտ է: Անապացույց, եթե չասենք, հակասական են թվում այսօրվա պոեզիային տված նրա գնահատականը: Սկսենք հենց դրանից:

Աղաբաբյանն ասում է, որ մեր բանաստեղծները դեռևս չեն ստեղծել այնպիսի արժեքներ, որ «հայտնությունները լինեն միութենական ասպարեզի համար»: Փորձենք հասկանալ— «Հայտնություն» և «միութենական ասպարեզ» ըմբռնումները, դիմելով քննադատի՝ Գրական թերթում տպագրվող Ժամանակը և պոեզիան հոդվածի օգնությանը: Խոսելով Պարույր Սևակի, Համո Սահյանի, Վահագն Դավթյանի և Հրաչյա Հովհաննիսյանի վերջերս լույս տեսած նոր գրքերի մասին, Աղաբաբյանը գտնում է. «Հասարակական լայն մասշտաբը,— սա է այն ճանապարհը, որ բանաստեղծի ինքնակենսագրությունից, նրա աշխարհից հանված փորձը դարձնում է բանաստեղծություն»: Ուրեմն հասարակական լայն մասշտաբը կա (կա նաև «անձնական նեղ աշխարհ», որին նույնպես անդրադառնում է հեղինակը): Այդ լայն մասշտաբը Աղաբաբյանը տեսնում է Համո Սահյանի Մայրամուտից առաջ-ում... «Ահա թե ինչու նրա երգած և՛ սերն է նոր, և՛ ցավը, և՛ տառապանքը, և՛ նախազգացումը, և՛ ձեռքբերումը, և՛ կորուստը»: Նա հաստատում է «ամեն օր նոր է թվում աշխարհը սկզբունքը, դրա համար էլ նրա բանաստեղծություններում (իհարկե, լավագույն) «ծփում է մարդկայնության կանչը»: Այդ տիպի քնարական երգերի առնչությամբ է քննադատը նկատում, որ Սահյանը, Սևակը, մյուսները կարողանում են նեղ կենսագրական փորձից՝ «հոգեկան ցնցումներից», դուրս գալ պատմական փորձի՝ «բանաստեղծության բարձունքը»: Այսպիսով, պատմական փորձի՝ բանաստեղծության բարձունքը նույնպես կա այսօրվա պոեզիայում, իսկ Պարույր Սևակի գրքի վերնագրով («Մարդը ափի մեջ») «խոսում է ինքը՝ նորին մեծության պոեզիան»: Սրանք այնպիսի գնահատականներ են, որոնք հաճելի կլինեին նաև Տերյանին ու Չարենցին: Առանց վարանումի կարելի է նորին մեծության պոեզիայի այդ երկու ներկայացուցիչների մասին ասել, որ մարդը նրանց ափի մեջ «մեծանում է, խոշորանում, բարդանում իր հակասություններով», հանդես գալիս «կեցության կարևորագույն հարցերի կրողի ու թելադրողի դեմքով՝ առանց դիմակի, ժամանակի իդեալներն ու իդեաները դրամատիկորեն հաստատող անհատի կերպարանքով»: Եվ սխալված չենք լինի, թեև դրանք վերաբերում են Սևակին:

Այսքանից հետո կարող ենք ասել, որ վաղաժամ չէ խոսել մեր գրականության թեև քանակով քիչ, բայց մեծ նվաճումների մասին. որոնք հայտնություններ են նաև միութենական գրական ասպարեզի համար: Հակառակը պնդելը, պարզապես անարդարացի կլիներ. մեկ տասնամյակ առաջ թերևս այդ «կրակոցը» սթափեցնող ուժ ունենար: Այժմ ուրիշ կրակոց է հարկավոր, դարձյալ անհանգստացնող, նոր որոնումների կոչող, բայց ստեղծվածի ճշմարիտ գնահատման դիրքերից: Աղաբաբյանի «քննադատական աշխարհը» այնքան է հագեցած արդի պոեզիայով, որ այդ նույն պոեզիան հեշտությամբ հերքում է նրա ոչ ճիշտ կարծիքը: Դրությունն ավելի բարդ է Լևոն Հախվերդյանի՝ նույն հարցաթերթիկին տված պատասխանում: Եթե Աղաբաբյանը մեծ նվաճումների հեռաստանից է զննում սովետահայ պոեզիայի ներկան, ակամա ընդունելով արդեն ձեռք բերած նվաճումները, ապա Հախվերդյանին «վերամբարձ ու հոգնած» է թվում նույնիսկ «գրականության նվաճում» «գրականության վերելք» արտահայտությունը:

«Անցան ժամանակներ ու երևաց,— գրում է քննադատը,— որ չի եղել հին վերելք, ոչ էլ նորը, և վաղաժամ է վերելքներից ու նվաճումներից խոսելը, երբ միութենական ասպարեզում այնքան քիչ բան ունենք ներկայացնելու: Իհարկե, կարելի է ասել (ինչպիսի՛ մեծահոգություն— Վ. Մ.), որ նվաճում է և՛ Անլռելի զանգակատունը, և՛ Մխիթար Սպարապետը, և՛ Մայրամուտից առաջը և, հնարավոր է, ուրիշ գրվածքներ: Բայց հիմա լավագույն ժամանակն է աշխատելու, իսկ թե ինչ կմնա իբրև նվաճում, մնայուն արժեք, ցույց կտա գալիքը, ժամանակը: Գնահատության մեջ պետք չէ առաջ ընկնել ժամանակից, որպեսզի նրանից ետ չմնանք»: Փորձենք հասկանալ այս քննադատական մենախոսությունը: Ընթերցողն արդեն կռահած պետք է լինի, որ «ի՞նչ է պոեզիան», «ի՞նչ է նվաճումը» կամ «բանաստեղծական բարձունքը» հարցերը առաջացել են արդի պոեզիայի, ընդհանրապես գրականության, վիճակից դժգոհ լինելուց և առավել լավն ունենալու ցանկությունից: Այդ ցանկությունը միշտ էլ եղել է, նույնիսկ այն տարիներին, երբ ստեղծվել են մարդկության գեղարվեստական մտքի ամենափայ-

ու հեռու ծաղիկներից, «մի պտղունց ազնիվ փոշի, մի օվկիան վիշտ ու թախիծ»:

Ա՜խ, գնա, ճախրիր նորից, բանբեր իմ,
փոքրիկ, բարի.
Թափառիր իմ հայրենի ծաղկավառ հանդ ու
սարում,
Միայն թե տա՛ր թևերով կարոտիս
արցունքն աղի
Եվ ցողեր ծաղիկներին, որոնցից հյութ ես
քաղում:

Հենց որ ընթերցողը վարակվում է բանաստեղծության գաղափարով, մեղուն, ինչպես ասում են, այլևս անելիք չունի: Սկսվում է ներքին այրման մի տևական պրոցես, որ խորհրդածություն է կոչվում, ինքնազննում ու ինքնահաստատում: Այդ նույն խորհրդածություններին են մատնում ընթերցողին ծովի վրա հանգրվան փնտրող թիթեռը, և ցողի կաթիլը, որի մեջ ցոլանում է աշխարհն իր բոլոր գույներով (սևից բացի), որը մահացել է հազար անգամ և նույնքան անգամ էլ վերածնվել «լույս կամարով»: Բանաստեղծական այդ նույն օրենքի համաձայն է լորին դառնում «մի փունջ ծլվլոց», իսկ մայթը՝ խուլ տնքում քայլերի տակ», երբ մարդ սպասում է իր սիրածին և սա չի գալիս (Վ. Դավթյան):

Այսօրվա պոեզիան աշխարհը խոսեցնելու և մարդուն ծառայելու բազմաթիվ միջոցներ ունի, վերադարձրել է երեկվա կորցրածը և հայտաբերել նորերը: Սա մեր դարի 60-ական թվականներին հատուկ ընդհանուր պրոցես է, որ տեղի է ունենում սոցիալիստական բոլոր ազգերի մտավոր ու հոգևոր կյանքում: Երբ խոսում են ինտերնացիոնալիզմի մասին, ես առաջին հերթին պատկերացնում եմ այն մարդուն, որը Սևակի ընկալմամբ, լինելով աշխարհին ուղղված բացիկ, ենթակա չէ ծրարման: Միայն այդպիսի սրտաբաց մարդը կարող է մարդկայինը հագեցնել համամարդկայինով: Մտքերի ու ապրումների այս փոխներթափանցումը նոր ժամանակներում առավել շիտակ ընթացք է ընդունել:

Կարդալով Համո Սահյանի, Վահագն Դավթյանի և մյուսների նոր բանաստեղծությունները նկատում ես, որ նրանց ուղիները երբեմն հանդիպում են ինչ-որ կարևոր խաչմերուկներում, բնավ չկորցնելով իրենց ինքնուրույնությունը: Դա բնական երևույթ է, այն էլ հնից եկող և հների կողմից պաշտպանված: Բայց ահա նաև այնպես է պատահում, որ նույն բանաստեղծը, որոնումների ճանապարհին, հանդիպում է իր երեկվա հետքերին, գտնում արդեն գտածը, ստեղծում միայն իր ուղիներից կազմված մի խաչմերուկ: Դա արդեն խրախուսելի չէ: Այսօրվա պոետական գրքերում կան այդպիսի «տնամերձ» խաչմերուկներ, որոնք զգում ես, բայց ոչ միշտ է հնարավոր լինում «իրեղեն ապացույցներ» բերել զգացածդ հաստատելու համար: Համո Սահյանին կարդալիս ուզում ես բարեկամորեն հիշեցնել, որ այդ մասրենին մի այլ տեղ էլ է ծարավից կուչ եկել, որ չի կարելի այդ պատվարժան բույսին բնորդուհի դարձնել ամեն կողմից և ամեն գրքում նկարելու համար: Ես շատ կուզենայի, որ Հրաչյա Հովհաննիսյանն այլևս չասեր. «Երգ իմ, գրում եմ քեզ, որ ցավ լինես լեռ բարձրացողին»: Այդ ցավն այնքան են տարել-բերել (ինքը և ուրիշները), որի ամրությանն այլևս չի կարելի վստահել: Վահագն Դավթյանն էլ ունի իր, արդեն հանգչող, կապույտ ալիքն ու կապույտ աստղերը, որոնցից «ստացված» ապրումն այլևս չունի իր նախկին ջերմությունը: Այդ մասրենին, ցավ-երգը և կապույտ աստղերը մենք դիտում ենք որպես մտածելաձևի, աշխարհընկալման կրկնվող սկզբունքի խորհրդանիշներ, ո՛չ ավելին: Մասրենին իրավունք ունի հազար անգամ երգերի մեջ մտնելու, բայց մասրենիությունը՝ երբեք:

Կարծում ենք, ինչ-որ չափով կարողացանք ըմբռնելի դարձնել մեր միտքը, իսկ եթե ոչ, ապա արժե անել մի դիտողություն ևս: Ժամանակի վեհությամբ մինչև հատակը ներշնչվելու ճանապարհին երբեմն գլուխ է բարձրացնում դեկլարատիվությունը և «ձևաթափ» եղած այն ճշմարտությունը, որ առաջներում մերկապարանոց էր կոչվում, իսկ այսօր խաբուսիկ կշիռ է ստացել: Կան բանաստեղծություններ, որոնք առաջին հայացքից համարձակ են թվում իրենց արտահայտած մտքերով, մտրակում են ինչ-որ արատներ, որոտում են ինչ-որ գալիքի անունից, կործանում ինչ-որ... և այսպես, այդ ինչ-որը կոնկրետ, իրական հասցե չի դառնում, որպեսզի մարդ կարողանա որոշել իր անելիքը: Սա համարձակության այն չափազանցված ձևն է, որ ժողովուրդը զորբայություն է անվանում: Թող ինձ այնպես չհասկանան, որ ես ցանկանում եմ այնպիսի կոնկրետություն, ինչպիսին, ասենք, այս կամ այն իրական մարդու հասցեն է— Աբովյան №..., Կիևյան №... Դա խնդրի գռեհկացում կլիներ: Թող բանաստեղծի ասած խոսքն ընդգրկի նույնիսկ տիեզերքի անհունությունը, միայն թե չկորչի այդ տիեզերքը նվաճող բնության «փոքրիկ պատառիկը», որ մարդ է կոչվում: Դեկլարատիվությունը, մտքի զորբայությունը միշտ էլ աղքատիկ են դարձնում մարդուն, զրկում նրան իրականության խոր զգացումից: Դա (դեկլարատիվությունը) եթե կուզեք, այն մոմն է, որից կերտած դեմքը, որքան ավելի է նման կենդանի մարդուն, այնքան ավելի խորշանք է առաջացնում: Այդ արատի ճիշտ հակառակ



երևույթն էլ կա, որ կուզենայինք բանաստեղծական տժվժիկ անվանել: Այսպիսին է, օրինակ, Ս. Գրիգորյանի «Թե ինչ է սերը», որտեղ «թըշշում» է մի հովվերգություն և նույնքան պարզունակ մի սեր: Որքա՞ն կարելի է պնդել նույնը, սերը քնքույշ է ու բարի, ասպետին ջահել դարձնող, ահելին ջահելացնող, ազգ ու ազգանուն չճանաչող, խոյանքի թևեր տվող... Որքա՞ն կարելի է, կրկնում ենք, հնավաճառներից գնած այս ուլունքները հանդուրժել սիրո պարանոցին:

Վահագն Կարենցը վերջին տարիներին բավականին բեռնաթափվել է իր «սրտի փրփուրից», նրա ներշնչանքը դարձել է ավելի երկրային ու, եթե կուզեք, հողաբույր («Ես ամենքի համար», «Փոթորիկներն իմ կյանքի»): Նրան մնում է հաղթահարել մի այլ դժվարություն ևս, որ պարզապես թույլ չի տալիս հեղինակին գեղարվեստորեն կարճել դեպի ընթերցողը տանող իր խոսքի ուղին: Գեղեցիկ շատախոսությունը կամ ընթերցողին հոգնեցնող նախերգանքը պարզապես նախասիրություն է դարձել Կարենցի համար: «Այստեղ կային տներ» բանաստեղծության հղացումն, օրինակ, հետաքրքրական է, կենսական և էքսպրոմտի տարածություն պահանջող: Մի հին տուն է քանդվել և այդ տանն ապրող մի հին սեր: Բանաստեղծը թեև հնի սիրահար չէ, բայց ամեն անգամ հին երգ լսելիս, տխրում է, որովհետև դրա մեջ անցած մի կյանք կա, մարդկային մի խոր զգացում: Այսքանն ասելու համար Կարենցը այնքան հեռվից է սկսել իր խոսքը և մոբիլիզացրել այնքա՜ն տներ, թթենիներ, վարդի թփեր, հետո ծառերի տակ քարե աթոռ, քարե մի գուռ, ջրի ծորակ, որ ակամա մտաբերում ես հռչակավոր շաղգամի՝ հողից հանելու տեսարանը: Դժբախտաբար միայն Կարենցը չէ շաղգամ հանում: Աշոտ Լուսենցի «Բաոբաբ» բանաստեղծության միտքը նույնպես թարմ է, որ դարձյալ «ջրային հիվանդություն» է ստացել շատախոսության պատճառով: Զմեռնամուտը, որ իր գաղափարական բեռնվածությամբ այնքան էլ հարուստ չէ, մարդուն համակում է կյանքի սիրով, որովհետև գտնվել է ասելիքի կենսական ձևը: Վահրամ Հաճյանը, որ զգալի աճ է ապրել և հաճախ է հանդես գալիս ներշնչված տողերով, արդեն կարողացել է ունենալ «իր շաղգամը»: Սա էլ սկսել է գրի առնել ոգևորության, ուրախության ու վշտի տեսակները և ոչ թե ոգևորել ընթերցողին, ուրախացնել կամ վշտացնել նրան: Զգացմունքի նատուրալիստական այդ պատկերումը շնորհալի պոետին թույլ չի տալիս հաղթահարել վերացականության ձգողական ուժը: Որևէ միտք հաստատելու կամ դրա կարևորությունն ընդգծելու համար սովորաբար դիմում են մեծ հեղինակների օգնությանը: Ես կուզենայի դիմել բանաստեղծի ճամփան որոնող Թաթուլ Հովհաննիսյանին.

Իմ մեջ ապրել են մեծ բանաստեղծներ
Տարբեր ազգերի,
Տարբեր հավատքի,
Ու տարբեր, տարբեր, տարբեր տարիքի...
Ու զարմանում եմ, թե մանուկ հոգիս
Ինչպե՞ս է տարել
Այնքան ծանրություն,
Այնքան միտք ու բառ
Երբ մի պոետը մի ազգ է կշռում
Ու մի ողջ աշխարհ...

Այդ զարմանքը տեղի է տալիս հպարտության զգացմանը հենց որ գիտակցում ենք, որ այդ ամենը՝ միտքը, բառը, արվեստի լեզվով են խոսում, որ արվեստի բարձրացրած ծանրությունը բեռ չի դառնում մարդու ուսերին, այլ թեթևություն է բերում նրա հոգուն: Դարաշրջանի «ծանրությունը» գեղարվեստորեն հաղթահարող պոետի մասին միայն կարելի է ասել, որ նա մի ազգ է կշռում ու մի ողջ աշխարհ— Թումանյան, Տերյան, Դուրյան, Մեծարենց, Չարենց... Մի բառը մի աշխարհ է թումանյանական պնդումը դարձյալ նույն ճշմարտության գիտակցումից է ծնվել: Մի ամբողջ աշխարհ կշռող այդ մտքի, խոսքի զգացողությունը դեռևս թույլ է զարգացած մի շարք բանաստեղծների մոտ. կարող են ասել, թե դա տաղանդի հարց է: Անկասկած: Բայց ակնհայտ տաղանդը նույնպես թուլանում է, եթե չի հարստանում կյանքի փորձով, բավարարվում է միայն «աստծու տվածով»: Մտքի ոչ մի աղքատություն չի կարելի փրկել գրելու տեխնիկայով, շշմեցուցիչ պատկերներով ու խոսքի սահունությամբ: Նման դեպքերում գրելու բարձր տեխնիկան, հեղինակի կամքից անկախ, ավելի է ընդգծում բանաստեղծության բովանդակազրկությունը: Նկատված է, որ ծիածանի գույների խաղից ավելի «զրնգուն» է դառնում օճառի պղպջակի դատարկությունը: Կան մի շարք պոետներ, որոնք արդեն երկու, երեք տասնամյակի գրական ուղի են անցել, բայց, ինչպես ասում են, աստղեր չեն դարձել: Սխալ կլիներ, սակայն, աստղերի տեսանկյունից քննել նրանց ստեղծածը: Բանաստեղծներին կողք-կողքի դնելը և նրանց հասակների տարբերությունները որոշելը այնքան էլ բեղմնավոր աշխատանք չէ: Իհարկե, կան մեծ ու փոքր բանաստեղծներ: Բայց այդ մեծն ու փոքրը որոշող չափանիշը պետք է լինի նրանց ստեղծագործության մեջ բաբախող ժամանակի երակը, այդ երակով հոսող դարաշրջանի արյան հորդությունը:

Այդ տեսակետից մոտենալով մեզ հետաքրքրող հարցին, հարկ է ասել, որ Հենրիկ Թումանյանը, Արտաշես Պողոսյանը, Վահան Արամունին, Գուրգեն Շահնազը հանդիսանում են պոետական

ուղղության ներկայացուցիչներ, այն ուղղության, որ գլխավորում են ուրիշները: Դրանք եթե բանաստեղծական մեծ խարույկներ չեն վառում, գոնե չեն էլ հանգցնում: Ավելին: Դրանք նպաստում են ընդհանուր խարույկի մշտավառ լինելուն: Սխալված չենք լինի, եթե նաև ասենք, որ ակնհայտ խալտուրայի հեղեղը առաջին հերթին զարնվում է այդ բանաստեղծների ստեղծած գրական պատնեշին և փշրվում, այնպես էլ չկարողանալով սկզբնական մոլեգնությամբ ներս խուժել պոեզիայի դռներից: Վերը նշված բանաստեղծները, ինչպես ասում են, այրվում են մարմանդ կրակով: Դա էլ է հարկավոր: Վահան Արամունին իր երգերից մեկում ասում է.

Թե ճնար լիներ, ես կփակեի
Ճամփան ճողմերի, գիշերների մառ,
Էրակի նման կմոխրանայի,
Միայն բե մարդը միշտ առաջ գնար:

Նոր չէ այս միտքը, ոչ էլ Արամունին է առաջինը նման անձնազոհության նետվում: Բերված տողերից մեզ հետաքրքրում է կրակի նման մոխրանալը: Արամունին, մյուսները, նույնպես, գիտեն «մոխրանալ» լավի համար, մարդու առաջընթացի ճանապարհին: Կրկնում ենք. թող որ «մարմանդ» լինի նրանց կրակը և քիչ՝ թողած «մոխիրը»: Բոլոր դեպքերում՝ դրանք ազնիվ սրտի բաբախումներ են և որպես այդպիսին, ուշադրության արժանի:

Գրական ամսագրի դեմքը միայն ավագները չեն որոշում: Կա նաև երիտասարդություն, առանց որի անհնար է պատկերացնել պոեզիայի ապագան: Ամսագրի էջերում այնքան սակավ է հանդես գալիս այդ ապագան, որ նույնիսկ ասելու բան չկա: Միակը, որ բախտ է ունեցել հանդես գալ բանաստեղծաշարով, այն էլ հաջողված, Նանսեն Միքայելյանն է: Ուրախալի է նշել, որ Միքայելյանը ձգտում է «առարկայական» կոնկրետություն հաղորդել իր մտքերին, որոնում է կյանքից եկող և կյանք մտնող զգացումներ, արեգակի պես «աչքերը պահելով մարդուն ու հողին»:

Ընդհանուր գծերով այսպիսին է պոեզիայի պատկերը «Սովետական գրականություն» ամսագրում:

Տպագրվել են և՛ այս, և՛ այն, լավերի կողքին գորշավունը, անճաշակությունը: Ու երբ անցած տարվա պոետական հունձը համեմատում ենք ամսագրում լույս տեսածների հետ, նկատում ենք, որ այստեղ լավագույնները քիչ տեղ են բռնում: Ավելին, չի նկատվում, որ ամսագիրը գրողի ցանկությունը հաշվի առնելուց բացի, ունեցել է նաև իր կարծիքը, իր ղեկավար սկզբունքը: Այդ են վկայում բանաստեղծության կոչմանը նվիրված բազմաթիվ չափածո դեկլարացիաները: Համարյա բոլոր պոետները հարկ են համարել տարբեր ձևերով «սպառնալիք» կարդալ իրենց երգերին, ասելով՝ եթե խավարում կորածին ճրագ չես լինելու, չես թեթևացնելու մարդու վիշտը, աղյուս չես դառնալու նոր կառուցվող շենքին, լավ է լռես կամ չքանաս: Առհասարակ այդպիսի «սպառնալիքներ» վերջերս հաճախ են գրվում, մինչդեռ ավելի լավ կլիներ ստեղծել մարդուն լույս տվող, նրա վիշտը թեթևացնող երգեր: Համեմատաբար դյուրին է պատասխանել այն հարցին, թե ինչ է պոեզիան, կամ ինչպիսին պետք է լինի բանաստեղծությունը հարցին: Պոեզիա ստեղծելն է դժվար: Նույնը կարելի է ասել նաև քննադատության մասին: Քննադատության ինչ լինելը վաղուց է հայտնի մեզ, բայց չսխալվելու համար նրան հայտնի պետք է լինի նաև ստեղծագործության ժամանակակից ըմբռնումը, այլապես նա իրավունք չունի դատել որևէ բանի մասին» (Բելինսկի): Ճշմարիտ դատող, գրականության կենդանի պրոցեսը հետազոտող քննադատություն ստեղծելն է դժվար, որն, ի դեպ, ամսագիրն արտակարգ անուշադրության է մատնել: Առայժմ նշենք, որ քիչ աշխատանք է տարվում, որպեսզի արդի պոեզիան նաև ամսագրի էջերից հնչի ամբողջ ձայնով: Այդ ձայնը կա, հնչում է և՛ մեզ մոտ, և՛ միութենական ասպարեզում: Այլ կերպ չէր էլ կարող, որովհետև նոր ժամանակներում ոչ միայն պոետը, այլև պոեզիան է կյանքով լցվելով, մեծանում ու զորեղանում՝ ինչպես գրում է Հ. Սահյանը՝

Հողի, աշխարհի, տիեզերքի պես:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացումն ամենից առաջ կախված է նրանից, թե ո՞վ է կանգնած նրա գլուխ, ինչպե՞ս է նա հասկանում պարտիական աշխատանքը, կարողանո՞ւմ է արդյոք ուղղություն տալ ու ղեկավարել կոմունիստներին: Կամոյի շրջանի պարտիական կազմակերպությունների քարտուղարները, հիմնականում, երիտասարդ, քաղաքականապես պատրաստված, արտադրության ոլորտում առաջավոր, պրակտիկ աշխատանքներում իրենց լավ դրսևորած մասնագետ կոմունիստներ են: Նրանցից 39-ը բարձրագույն ու թերի բարձրագույն, 45-ը՝ միջնակարգ և միայն 8-ը՝ թերի միջնակարգ կրթություն ունեն: Կազմակերպությունների քարտուղարներից 49-ը ինժեներներ, գյուղատնտեսներ, անասնաբույծներ, անասնաբույժներ, բժիշկներ և մանկավարժներ են:

Գործը, սակայն, միայն լավ տվյալներ ունեցող քարտուղար ընտրելով չի ավարտվում: Պարտիայի շրջկոմը մշտապես հոգ է տանում սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների ուսուցման, նրանց հետ տարվող ամենօրյա աշխատանքի մասին: Այդ նպատակով պարտշրջկոմին կից ստեղծված է պարտիական կազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոց, որն արդեն ունեցել է հինգ պարապմունք:

Վերջերս շրջկոմի կազմակերպական բաժինը «Կարմիր հոկտեմբեր» կոլտնտեսությունում կազմակերպեց պարտիական աշխատանքի փորձի փոխանակում, որին մասնակցեցին շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունների քարտուղարները, որոնք ծանոթացան ծխախոտի ու կարտոֆիլի մշակության մեքենայացման ընթացքին: Նախատեսված է պարտիական աշխատանքի փորձի ուսումնասիրություն և փոխանակում անցկացնել նաև արդյունաբերական ձեռնարկություններում, հիմնարկներում և դպրոցներում:

Միայն կազմակերպական միջոցառումներով կամ փորձի փոխանակմամբ չի կարելի սահմանափակվել: Խիստ կարևոր է և պարտկազմակերպությունների քարտուղարների քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացումը: Այդ նկատառումներով էլ պրոպագանդիստների սեմինարներին մասնակցում են նաև պարտիական կազմակերպությունների քարտուղարները: Բացի այդ, նրանց համար հաճախակի կազմակերպվում են դասախոսություններ ու զեկուցումներ քաղաքական և միջազգային թեմաներով: Նրանք անցյալ քաղլուս տարում ընդգրկված էին շրջկոմին կից գործող էկոնոմիկայի համալսարանում:

Պարտիայի շրջանային կոմիտեն մտահոգված է սկզբնական կազմակերպությունների գործունեության բարելավման հարցերով։ Այդ միտումով ուսումնասիրեցինք Լճափ գյուղի կոլտնտեսության վիճակը, որտեղ տնտեսության մակարդակը ցածր էր։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ պարտիական կազմակերպությունը մարտունակ չէր, պարտիական կազմակերպության քարտուղարը բանիմաց չէր։ Փետրվար ամսին շրջկոմի բյուրոյում քննարկվեց Լճափի կոլտնտեսային պարտիական կազմակերպության գործունեության հարցը՝ կապված կադրերի ընտրության ու տեղաբաշխման հետ։ Վերանայվեցին կադրերը, կատարվեցին որոշակի տեղաշարժեր, առաջ քաշվեցին ձեռներեց, մասնագիտական կրթություն ունեցող նոր ընկերներ։ Անցան ամիսներ և արդեն նկատելի է առաջընթացը. տնտեսությունը հաջողությամբ կատարեց անասնապահական մթերքների վաճառքի առաջին եռամսյակի պլանները։ Ստեղծված են բոլոր նախադրյալները մսի և կաթի արտադրության ու վաճառքի հաջորդ եռամսյակների պլանները կատարելու համար։ Եթե սկզբունքայնության, կադրերի պատասխանատվության և պահանջկոտության բարձրացման ուղղությամբ պարտիական կազմակերպությունը շարունակի իր ներկայիս հաջող գործունեությունը, ապա կասկածից վեր է, որ մեկ-երկու տարի հետո Լճափի կոլտնտեսության վիճակը զգալիորեն կլավանա, այն կդառնա առաջավոր։

Պարտիայի շրջանային կոմիտեն համանման միջոցառումների դիմեց նաև Մուխանի ու Նորադուզի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների նկատմամբ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, նրանց ակտիվությունը բարձր կլինի միայն այն դեպքում, երբ կազմակերպություններում պատշաճ մակարդակի վրա գտնվի պարտիական կարգապահությունը, երբ կոմունիստներն անձնական պատասխանատվություն ցուցաբերեն հանձնարարված գործի նկատմամբ։ Պարտիական ակտիվի կողմից տեղերում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ շրջանի պարտիական կազմակերպություններում այդ ուղղությամբ լուրջ թերություններ կան։

Պետությանը խաբելու, աչքակապության և հավելագրումների ուղին էին բռնել կաբելի գործարանի նախկին ղեկավարները։ Նրանք թաքցրել էին իրերի իսկական վիճակը գործարանում և զգալի հավելագրումներ կատարել։ Շրջկոմի բյուրոն, քննելով այդ հարցը, աշխատանքից հեռացրեց և պարտիական պատասխանատվության ենթարկեց նրանց։ Անհրաժեշտ եզրակացություն անելով շրջկոմի բյուրոյի որոշումից՝ գործարանի պարտիական կազմակերպությունը կազմակերպական ու քաղաքական լայն աշխատանք ծավալեց՝ մոբիլիզացնելով աշխատավորների ուժերն անցյալում թույլ տրված սխալներն ուղղելու, արտադրական պլանները կատարելու համար։

Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներից, պարտիայի շրջանային կոմիտեի պլենումում քննվեց պարտիական-պետական կարգապահության վիճակը շրջանի պարտիական կազմակերպություններում։ Պլենումը կոնկրետ միջոցառումներ մշակեց թերությունների վերացման համար։ Հատկապես նշվեց կադրերի ընտրության ու տեղաբաշխման անմխիթար վիճակը Կարմիր, Մուխան, Լանջաղբյուր, Նորադուզ, Լճափ գյուղերի կոլտնտեսային, ինչպես նաև տրիկոտաժի ֆաբրիկայի և կաբելի գործարանի պարտիական կազմակերպություններում, որոնց առաջարկվեց անհապաղ բարելավել վիճակը։



Ընդամենը մի քանի ամիս է անցել այդ օրվանից, բայց շրջանի պար-
տիական կազմակերպություններում զգալի տեղաշարժ է նկատվում։ Կոլտնտե-
սությունները ու սովխոզները, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի հա-
մեմատությամբ, ընթացիկ տարվա հինգ ամիսներում կաթի արտադրությունն
ավելացրել են 20, մսինը՝ 19,5 տոկոսով։ Նրանք ավելացրել են նաև խոշոր
եղջերավոր անասունների և թռչունների գլխաքանակը։ Չնայած ընթացիկ տար-
վա կլիմայական ծանր պայմաններին, անասնակերի խիստ պակասությանը,
կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների ու պարտիական կազմա-
կերպությունների բարեխիղճ աշխատանքի շնորհիվ կրճատվեցին անասուն-
ների անկումները։ Լուրջ հաջողությունների են հասել նաև արդյունաբերական
ձեռնարկությունների աշխատողները։ Շրջանի 13 արդյունաբերական ձեռնար-
կությունների արտադրանքի թողարկման հինգ ամիսների պլանը կատարել են
101, իսկ միայն մայիս ամսվանը՝ 107 տոկոսով։

Պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացման,
պարտիական-կազմակերպական և քաղաքական աշխատանքի բարելավման
գործում վճռական դեր խաղաց գյուղատնտեսության հետագա զարգացման
անհետաձգելի միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի
որոշումը։ Ներկայումս զգալիորեն բարձրացել է սկզբնական պարտիական
կազմակերպությունների հեղինակությունը, ամրապնդվել նրանց կապը աշխա-
տավորների լայն մասսաների հետ։ Գյուղի աշխատավորները ձեռնամուխ են
եղել ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների կենսագործմանը։
Պարտիայի շրջանային կոմիտեի հերթական պլենումը քննության առավ ՍՄԿՊ
Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը գյուղատնտեսության հետագա զար-
գացման վերաբերյալ։ Նշելով շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների՝
այդ որոշումների կենսագործման ուղղությամբ կատարած աշխատանքը, պլե-
նումը մի շարք միջոցառումներ մշակեց շրջանի գյուղատնտեսության հետագա
վերելքն ապահովելու համար։

Պարտիական կազմակերպությունների հեղինակության, նրանց ակտիվու-
թյան ու մարտունակության բարձրացման կարևոր պայմաններից մեկն ըն-
դունված որոշումները հետևողականորեն կենսագործելն է, դրա պատշաճ կազ-
մակերպումը։ Պարտիայի շրջանային կոմիտեն սկզբնական կազմակերպու-
թյունների աշխատանքը ղեկավարելիս կարևոր տեղ է հատկացնում այդ հար-
ցին։ Շրջկոմի բյուրոյում հաճախ քննարկվում է սկզբնական կազմակերպու-
թյունների ընդունած որոշումների կատարման ընթացքը։ Այդ տեսանկյունով
քննարկվեց Կամոյի տրիկոտաժի ֆաբրիկայի ներկա վիճակը։ Այստեղ պար-
տիական կազմակերպությունը դատապարտելի անտարբերություն էր ցուցա-
բերում իր իսկ ընդունած որոշումների կատարման նկատմամբ։ Եվ դա այն
դեպքում, երբ ֆաբրիկայում աղաղակող թերություններ կային։ Չորս ամսվա
համախառն արտադրանքի պլանը կատարվել էր 93 տոկոսով, թերակատար-
վել էր արտադրանքի ասորտիմենտի պլանը, 29 հազար ռուբլով բարձրացել էր
ինքնարժեքը, 35 հազար ռուբլու հումքի և օժանդակ նյութերի գերածախս էր
տրվել. միայն առաջին եռամսյակում ֆաբրիկան վճարել է 3000 ռուբլի գու-
մարի տույժ և տուգանք։ Նշելով պարտիական կազմակերպության անբավարար
գործունեությունը, շրջկոմի բյուրոն կոնկրետ որոշում ընդունեց եղած թե-
րությունները վերացնելու համար։ Այժմ արդեն ֆաբրիկայում զգալի փոփո-

խումբյուններ են կատարվել։ Մայիս ամսին ֆաբրիկան համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեց 103 տոկոսով։

Պարտիական կազմակերպությունների դերի բարձրացման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունի պարտիայի կանոնադրության անշեղ կենսագործումը։ Պարտիական ժողովների, բյուրոների ժամանակին հրավիրումը, արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովումը, նրանց նկատմամբ անհրաժեշտ պահանջկոտությունը միայն կարող են հող ստեղծել պարտիական բարձր կարգապահության, պարտիական կազմակերպության մարտունակության բարձրացման համար։ Շրջանի պարտիական կազմակերպությունների մեծ մասում պարտիական ժողովներն ու բյուրոների նիստերը հրավիրվում են ժամանակին և անցնում գաղափարական բարձր մակարդակով։

Այդ ուղղությամբ լավագույն աշխատանքի փորձ է կուտակել Գեղարքունիքի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը։ Պարտիական ժողովի օրակարգը որոշելիս այստեղ հաշվի են առնվում տնտեսության հետագա զարգացման կամ նրանց խանգարող հանգամանքները, պարտիական վերադաս օրգանների որոշումներից բխող խնդիրները, ինչպես նաև կոմունիստների առաջարկությունները ու քննադատական դիտողությունները։ Այստեղ ժողովներն անցնում են քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, ընդունվում են գործնական որոշումներ։ Գյուղի կոմունիստների մեծ մասն աշխատում է արտադրության մեջ, ապահովում իր ավանգարդային դերը կոլեկտիվում։ Շրջանային կոմիտեի բյուրոն մասսայականացրեց այդ կազմակերպության դրական փորձը։

Պարտիական աշխատանքի կազմակերպման, ժողովների, բյուրոների նախապատրաստման ու անցկացման ուղղությամբ լավագույն փորձ են ձեռք բերել նաև Սարուխանի, Բադիկյանի սովխոզների և «Կարմիր հոկտեմբեր» կոլտնտեսության պարտիական կազմակերպությունները։ Նշված և մյուս կազմակերպությունները, ձգտելով ակտիվացնել կոմունիստների գործունեությունը, աշխատում են հասնել այն բանին, որ բրիգադային ու ֆերմային պարտիական կազմակերպությունների ժողովներում հաճախակի լսվեն նոր տեխնիկայի արմատավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և որակի լավացման հարցերը։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը պահանջեց հատուկ ուշադրություն հատկացնել կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխմանը, այնպես անել, որ կոմունիստների հիմնական մասն աշխատի նյութական արտադրության բնագավառում։ Շրջանի պարտիական կազմակերպություններում հաշվառման մեջ եղած 2075 կոմունիստներից անմիջապես նյութական բարիքների արտադրությամբ են զբաղված 1107-ը։ Այժմ մեր շրջանում մեծ է այն կոմունիստների թիվը, որոնք բարեխղճորեն են կատարում իրենց հանձնարարված գործը, աշխատում են ավյունով, իրենց պարտքի բարձր գիտակցությամբ։ Աճել ու առաջ են քաշվել բազմաթիվ երիտասարդ կոմունիստներ, որոնք նվաճել են աշխատավորների սերն ու համակրանքը։ Լավերի կողքին, սակայն կան մարդիկ, որոնք այլ կերպ են մտածում։ Մինչև վերջերս կոմունիստների որոշ մասը խուսափում էր անասնապահության մեջ աշխատելուց։ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումից հետո շրջանային կոմիտեի ձեռնարկած միջոցառումների



շնորհիվ ավելի քան 50 կոմունիստ գործուղվեցին անասնապահական ֆերմաները՝ որպես անասնապահներ։

Այժմ սկզբնական պարտիական կազմակերպություններից պահանջվում է էլ ավելի բարելավել կոլտնտեսային ու սովխոզային արտադրության պարտիական ղեկավարությունը, առավել մեծ ուշադրություն նվիրել պարտիական-կազմակերպչական և քաղաքական աշխատանքների կատարելագործմանը, սոցիալիստական մրցության լայն տարածմանը։

Պարտիայի շրջանային կոմիտեի գործունեության մեջ լուրջ տեղ է հատկացվում շրջանի աշխատավորության հետ տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքներում նկատվող թերությունների վերացմանը։ Այդ հարցը լրջորեն ուսումնասիրվեց պարտիական ակտիվի, շրջկոմի գաղափարական հանձնաժողովի միջոցով և արդյունքները քննարկվեցին գաղափարական աշխատողների շրջանային ընդլայնված խորհրդակցությունում։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում ավելի ու ավելի հաճախակի են օգտագործվում գաղափարական-քաղաքական աշխատանքի այնպիսի ձևեր ու մեթոդներ, ինչպիսիք են՝ արտադրության վետերանների մեծարման, հարց ու պատասխանի երեկոները, սրտաբաց զրույցները, տեսական կոնֆերանսները և այլ միջոցառումներ։ Հետաքրքրական ու բովանդակալից գործունեություն են ծավալել՝ կանանց հասարակական խորհուրդը, երիտասարդ մայրերի, կուլտուրայի և էկոնոմիկայի համալսարանները։

Աշխատավորների գաղափարական-քաղաքական աշխատանքներում եղած թերությունները դեռևս ամբողջապես չեն վերացված։ Պարտիայի շրջանային կոմիտեն գործնական քայլերի է դիմում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործն արմատապես բարելավելու համար։ Այդ ուղղությամբ ամենակարևոր ու վճռական միջոցառումը սկզբնական պարտկազմակերպությունների գործունեության ակտիվացումն է, նրանց մարտունակության բարձրացումը։

Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
ՀԿՊ Կամոյի շրջկոմի քարտուղար

## ՀՄՏՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆ

Սկզբնական պարտիական կազմակերպությունները մեր պարտիայի հիմքն են։ Նրանք կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանք են կատարում, պայքարում են արտադրական պլանների հաջող կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, սոցիալիստական օրինականության կենսագործման, պետական ու կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության պահպանման համար։ Սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեության ոլորտն, իհարկե, դրանով չի սահմանափակվում։ Նրանց գործունեության մեջ գլխավորը կանոնադրական պարտականությունների կատարումն է, որոնցից առանձնահատուկ տեղ է գրավում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքի իրականացումը։

Վերահսկողության իրավունքի հմուտ կենսագործումը ո՛չ միայն զարկ է տալիս սկզբնական պարտիական կազմակերպությունների և բոլոր կոմու-

նիստների ինքնագործունեությանն ու մարտունակությանը, այլև բարձրացնում է տնտեսության պարտիական ղեկավարման մակարդակը, նպաստում ձեռնարկությունների աշխատանքի հետագա բարելավմանը, թերությունների, պարտիական, պետական ու աշխատանքային կարգապահության խախտումների վերացմանը, ապահովում ադմինիստրացիայի բոլոր ձեռնարկումների կենսագործումը։

Չափազանց կարևոր է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների ամբողջ աշխատանքը, մասնավորապես վերահսկողության իրավունքի կենսագործումը, մշտապես գտնվեն պարտիայի շրջկոմների և քաղկոմների ուշադրության կենտրոնում։ Դա առանձնապես կարևոր է այն պատճառով, որ ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու հարցերը դեռևս հաճախ են քննարկվում պարտիական կազմակերպչական և քաղաքական աշխատանքից մեկուսացած, անջատ։ Մինչդեռ պարտիական կազմակերպությունների հարուստ փորձն ակնառու ցույց է տալիս, որ ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական պատշաճ վերահսկողություն կարելի է իրականացնել այն դեպքում, երբ բարձր մակարդակի վրա գտնվի ներպարտիական ամբողջ աշխատանքը, երբ հոգ տարվի մարդկանց պատասխանատվության զգացումը բարձրացնելու մասին։ Պարտիական կազմակերպությունը միայն այն դեպքում է հաջողությամբ ներգործում ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի աշխատանքի վրա, երբ նրա բոլոր անդամները կազմակերպված ու համախմբված են, սովորում և իրենք էլ սովորեցնում, դաստիարակում են մյուսներին, երբ նրանք իրենց անձնական օրինակով ոգևորում են անպարտիականներին, նախաձեռնող են, չեն հաշտվում թերությունների հետ։

Վերահսկողության իրավունքի իրականացումը, առաջին հերթին, նշանակում է թափանցել արտադրության էկոնոմիկայի մեջ, արագ արձագանքել հայտնաբերված բոլոր թերություններին և միջոցներ ձեռք առնել դրանք վերացնելու։ Այդ նշանակում է՝ մարդկանց աշխատանքն ուղղել ճիշտ հունով, դաստիարակել ու աճեցնել նրանց։ Այս չափազանց լուրջ հարցը բոլոր պարտիական ղեկավարներից պահանջում է խոր գիտելիքներ և սկզբունքայնություն։ Այս ասպարեզում երբեք չի կարելի թույլ տալ վարչարարություն, միանձնյա ղեկավարության խախտում, ինչպես նաև արտադրության հրամանատարների հեղինակազրկում։ Ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքի հաջող իրականացումը նշանակալի չափով պայմանավորված է պարտիական կազմակերպությունների քարտուղարների մտածված, խորաթափանց գործունեությամբ։

Պարտիական կազմակերպությունների քարտուղարներին օգնելու և սովորեցնելու նպատակով պարտիայի շրջկոմներում և քաղկոմներում հիմնված են պարտիական կազմակերպությունների քարտուղարների մշտապես գործող դպրոցներ ու սեմինարներ, ուր նրանք ծանոթանում են ներպարտիական աշխատանքի ղեկավարման մեթոդներին։ Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի և պարտիայի Երևանի քաղկոմի քաղաքական լուսավորության տունը պարբերաբար անց է կացնում պարտիական կազմակերպությունների քարտուղարների շերտավորված սեմինարներ։

Սկզբնական պարտիական կազմակերպություններին ցույց տրված հետևողական և անմիջական օգնությունը, նրանց քարտուղարների հետ կատարվող աշխատանքը դրական արդյունք են տվել։ Բազմաթիվ սկզբնական պարտկազ-



մակերպություններ այժմ կարողանում են ո՛չ միայն հմտորեն կատարել իրենց կանոնադրական պարտականությունները, այլև անհրաժեշտ նախաձեռնություն ու օպերատիվություն են հանդես բերում կյանքի առաջադրած խնդիրները ժամանակին լուծելու ասպարեզում։ Դիմենք փաստերին։

Աշտարակի շրջանի խաղողագործական-պտղաբուծական «Արայի» սովխոզն ստեղծվել է 1960 թվականին։ Հինգ տարվա ընթացքում սովխոզի կոլեկտիվը յուրացրել է ավելի քան 1000 հեկտար խոպան հող։ Խաղողի և պտղատու այգիների ընդհանուր տարածությունը սովխոզում այս տարի արդեն կազմում է 814 հեկտար, որի մի մասը պտղաբեր է։ Սովխոզը վերջին երեք տարիների ընթացքում միշտ էլ շահութաբեր է եղել։ Այսպես, 1962 թվականին սովխոզն այնպիսի վիճակում էր, որ պլանավորված էր 7451 ռուբլի վնասով փակել տարին։ Բայց կոլեկտիվի ջանասեր աշխատանքի շնորհիվ սովխոզն այդ տնտեսական տարին կարողացավ փակել 8264 ռուբլի օգուտով։ 1963 թվականին սովխոզն ունեցավ 12636, իսկ 1964 թվականին՝ 15318 ռ. շահույթ։

Ո՞րն է այդ հաջողությունների գաղտնիքը. սովխոզի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Պ. Գրիգորյան) հմտորեն է իրականացնում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքը, ապահովում է ակտիվ ներգործությունն արտադրության բոլոր ոլորտներում։ Բյուրոյի նիստերում, պարտիական ժողովներում սիստեմատիկաբար լսվում են բրիգադավարների և բաժանմունքների վարիչների հաշվետվությունները՝ պլանների և պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ Քննարկելով պլանների կատարումը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշների գծով, այդ ժողովներում հանգամանորեն պարզում են, թե կոնկրետ ի՞նչ է արվում արտադրանքի որակի բարելավման, ինքնարժեքի իջեցման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, արտադրական կարգապահության ամրապնդման համար։ Ժողովներում ժամանակին բացահայտվում են աշխատանքում եղած թերությունները, սովխոզի ամբողջ կոլեկտիվին կազմակերպելով ու ոտքի հանելով դրանց վերացման համար։

Անցյալ տարվա վերջին սովխոզում դանդաղ էր կատարվում խաղողի և պտղատու նոր այգիների տնկումը։ Պարտիական կազմակերպության բյուրոն մանրամասն ուսումնասիրեց գործերի վիճակը բոլոր 11 բրիգադներում։ Այդ հարցի մասին պարտիական ժողովում զեկուցեց սովխոզի գլխավոր գյուղատնտես, ՍՄԿՊ անդամ Ա. Կոստանյանը։ Ծավալվեց մտքերի գործարար փոխանակություն։ Ժողովը մոբիլիզացնող որոշում ընդունեց, միաժամանակ նշելով կատարման կոնկրետ ժամկետները։ Պարտիական այդ ժողովից հետո սովխոզի կոլեկտիվը ծավալեց ակտիվ գործունեություն և աշխատանքներն ավարտվեցին սահմանված ժամկետներում։

Մեքենա-տրակտորային պարկում ևս թերություններ կային։ Վատ էր կատարվում տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների վերանորոգումը. պահանջվում էր սովխոզի պարտիական կազմակերպության միջամտությունը։ Եվ ահա, պարտիական հերթական ժողովներից մեկում, գյուղատնտեսական մեքենաների նորոգման ընթացքը մանրակրկիտ ստուգելուց հետո, լսվեց գլխավոր ինժեներ Վ. Շամիրյանի զեկուցումը։ Ժողովն աշխույժ էր, հետաքրքրական։ Ելույթները հագեցած էին կոնկրետ փաստերով։ Ժողովը սովխոզի դիրեկցիային պարտավորեցրեց վերանայել նորոգման գրաֆիկը և կրճատել ժամկետները, ինչպես նաև նորոգող բրիգադայի գործունեությունը

բարելավելու համար արհեստանոցներն ապահովել օժանդակ նյութերով և պահեստամասերով։ Այդ ժողովից հետո սովխոզի դիրեկտորը, պարտիական կազմակերպության քարտուղարը, գլխավոր գյուղատնտեսը, ինժեներները սկըսեցին ավելի հաճախ լինել նորոգման բրիգադաներում և անմիջականորեն վերահսկել կատարվող աշխատանքների որակը։ Այս ամենը հնարավորություն տվեց էական բեկում մտցնելու արհեստանոցների աշխատանքներում և ժամանակին կատարելու առաջադրանքը։

Այս տարվա մարտ ամսին պարտիական դռնբաց ժողովում, որտեղ ներկա էին բազմաթիվ անպարտիական բանվորներ ու ծառայողներ, լսվեց սովխոզի դիրեկտոր Վ. Իսկանդարյանի զեկուցումը 1964 թվականի արդյունքների և սովխոզի կոլեկտիվի 1965 թվականի տնտեսական տարվա խնդիրների մասին։ Այն ողջ կոլեկտիվի և, առաջին հերթին, կոմունիստների ուշադրությունը բևեռեց աշխատանքային կարգապահությունն ուժեղացնելու, խաղողի և պտղատու այգիների մշակման աշխատանքներն ավելի կազմակերպված ու որակով կատարելու վրա։ Որոշվեց նաև 50 հեկտարով ավելացնել բազմամյա խոտաբույսերի տարածությունը, խաղողի այգիների միջշարային տարածություններում բոստանային կուլտուրաների ու բանջարեղենի տարածությունը հասցնել 20 հեկտարի, ավելի ճշտապահությամբ կատարել ագրոկանոնները, լրջորեն զբաղվել անասունների ցեղի ազնվացման գործով։

Վերահսկողության ֆունկցիայի իրականացումը դիտելով որպես ներպարտիական աշխատանքի մի ամբողջ սիստեմ, Աշտարակի շրջանի «Արայի» սովխոզի պարտկազմակերպությունը մշտական անդուլ աշխատանքով ձգտում է հասնել նորանոր հաջողությունների։ Հերթական մի ժողովում, ուր քննարկվում էին ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի արդյունքները և սովխոզի պարտիական կազմակերպության խնդիրները, հանգամանորեն մշակվեցին և ընդունվեցին այնպիսի կոնկրետ միջոցառումներ, որոնք, ըստ էության, հանդիսանում էին պարտկազմակերպության առաջիկա գործողությունների ծրագիր։

Պարտիական կազմակերպությունը կարողացել է գործարար և առողջ մթնոլորտ ստեղծել սովխոզի ողջ կոլեկտիվում։ Սովխոզի դիրեկցիան, պարտիական և արհմիութենական կազմակերպություններն աշխատում են համերաշխ, առանց վարչարարության։ Հարցերը քննարկելիս միանգամայն հիմնավորված պահանջներ են առաջադրվում և մարդկանց չեն վիրավորում։ Չէ՞ որ ոչ բոլոր թերությունների համար կարելի է մեղադրել բրիգադավարներին, մեխանիզատորներին, գյուղատնտեսության մասնագետներին կամ սովխոզի դիրեկտորին։ Չէ՞ որ հաճախ նրանցից չի կախված այս կամ այն թերությունը։ Այդ դեպքում պարտիական կազմակերպությունն անմիջական օգնություն է ցույց տալիս սխալված աշխատողին, օգնում նրան՝ հասկանալու թերության պատճառները և վերացնելու այն։

Առանձնապես խիստ հսկողություն է սահմանված կոմունիստների և կոմերիտականների գործունեության նկատմամբ, որպեսզի պարտկազմակերպության յուրաքանչյուր անդամ ապահովի իր ավանգարդային դերն արտադրության մեջ և կոմունիստական վարքագիծը՝ կյանքում։ Պարտիայի անդամների ու թեկնածուների ճնշող մեծամասնությունը և բոլոր կոմերիտականներն անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ։

Այս ամենի հետ մեկտեղ կարելի է բերել բազմաթիվ այլ փաստեր, որոնք ցույց են տալիս առանձին սկզբնական պարտիական կազմակերպությունների



վատ աշխատանքը։ Այդ կազմակերպություններն ինչպես հարկն է չեն իրագործում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրենց իրավունքն ու պարտականությունը։ Այնտեղ, որտեղ հաշվի չեն առնում կազմակերպության դերը, որտեղ ադմինիստրացիայի գործունեությունը դուրս է մնում կոմունիստների տեսադաշտից, հենց այնտեղ էլ խախտվում են օրինականությունն ու աշխատանքային կարգապահությունը, չեն կատարվում պլանները, վատնվում է հանրային հարստությունը և այլն։

Եղվարդի մեքենայական փորձակայանի պարտիական կազմակերպությունը ամենախոշոր կազմակերպությունն է Աշտարակի շրջանում։ Այստեղ կան 75 կոմունիստներ, այդ թվում՝ գիտնականներ, ինժեներներ, գյուղատնտեսության մասնագետներ։ Կայանը կազմակերպվել է 1961 թվականին՝ սովխոզի բազայի վրա և ունի հողային մեծ ռեսուրսներ։ 4564 հեկտար հողային տարածությունից 2580 հեկտարը ջրովի է։ Տնտեսությունը լիովին ապահովված է աշխատող ձեռքերով և ունի գյուղատնտեսական հարուստ տեխնիկա։ Այստեղ կան 106 տրակտոր, 86 ավտոմեքենա, 9 կոմբայն և այլ մեքենաներ։ Սակայն իր կազմակերպման օրվանից տնտեսությունն աշխատում է վնասով։ Այսպես՝ 1962 թվականին վնասը կազմեց 46636, 1963 թվականին՝ 23488, իսկ 1964 թվականին՝ 146413 ռուբլի։

Այդ տնտեսության նման վիճակը պետք է գլխավորապես բացատրել նրանով, որ տեղի պարտիական կազմակերպությունը վատ է վերահսկում ադմինիստրացիայի գործունեությունը, նրա աշխատանքում բացակայում են պարտիական սկզբունքայնությունն ու հետևողականությունը, կազմակերպության մեջ թույլ են ծավալված քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Այստեղ չեն ունկնդրում կոմունիստների քննադատական դիտողություններին, խախտում են կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման պարտիական սկզբունքը, պատշաճ պահանջկոտություն չեն դրսևորում աշխատողների նկատմամբ, իսկ արտադրության հիմնական հարցերը հաճախ չեն քննարկվում։ Պարտիական կազմակերպությունն անհրաժեշտ միջոցներ ձեռք չի առնում աշխատանքում եղած թերությունները վերացնելու ուղղությամբ։

Աշխատողների նկատմամբ անհրաժեշտ պահանջկոտություն չցուցաբերելը և կոլտնտեսության վարչության գործունեությանը պատշաճ կերպով չվերահսկելը շատ թանկ նստեցին նաև Հոկտեմբերյանի շրջանի Փշատավան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությանը (քարտուղար Հ. Հովսեփյան)։ Պարտիայի շրջկոմը աշխատանքից հանեց և ՍՄԿՊ շարքերից վտարեց կոլտնտեսության վարչության նախկին նախագահ Հ. Գևորգյանին և երկու կոմունիստների այն բանի համար, որ նրանք չեն արդարացրել իրենց նկատմամբ ցուցաբերված վստահությունը և, որպես կոմունիստներ, չեն կատարել իրենց կանոնադրական պարտականությունները, վատառողջ մթնոլորտ են ստեղծել կազմակերպության մեջ, թույլ են տվել ֆինանսական կարգապահության խախտումներ և վատնել են կոլտնտեսային բարիքները։

Պատշաճ վերահսկողության և պարտիական կազմակերպության պահանջկոտության բացակայությունից օգտվելով, կոլտնտեսության վարչության նախկին նախագահ Հ. Գևորգյանը խախտում էր ֆինանսական կարգապահությունը, որի հետևանքով գերածախսավորումների գումարը հասել էր 1578 ռուբլու։ Առանձին անձինք զանազան ձևերով յուրացրել էին 7495 ռուբլու հանրային բարիքներ։ Կոլտնտեսությունում խախտում էին նյութական արժեքների՝

ճանկռեղի, սիլոսի, խոտի, բանջարեղենի, հատիկա-ֆուրաժի այլ մթերքների օգտագործման սահմանված կարգը։ Հ. Գևորգյանը կոպիտ կերպով խախտում էր պարտիական կարգապահությունը և սոցիալիստական օրինականությունը։

Մի օրինակ ևս։ Ապարանի շրջանի Բուժական գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ա. Հովհաննիսյան) անհրաժեշտ եզրակացություններ չարեց պարտիայի շրջկոմի բյուրոյի որոշումից, ուր նշված էր, որ պարտիական կազմակերպությունն անբավարար է կատարում կոլտնտեսության վարչության գործունեությանը վերահսկելու իր ֆունկցիան։ Այդ որոշումից հետո ևս, թեպետ հազվադեպ, բայց և այնպես տեղի են ունեցել գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներ։ Եթե գործն այդպես ընթանա, բուժականցիները կկանգնեն կոտրված տաշտակի առաջ։

Վերահսկողության իրավունքի իրականացումը պարտիական աշխատանքի ամենակարևոր հարցերից մեկն է։ Պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեները պետք է հոգան սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի բարելավման մասին։ Պարտիական ղեկավարությունն աշխուժացնելու, մասսաների մեջ կատարվող կազմակերպչական ու գաղափարական աշխատանքներն ուժեղացնելու համար պետք է, առաջին հերթին, պատշաճ մակարդակի հասցնել սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությունը, բարձրացնել նրանց դերն ու պատասխանատվությունը, ծավալել կոմունիստների ակտիվությունն ու ինքնագործունեությունը։

Զ. ՍՈՒԼԹԱՆՈՎ
ՀԿՊ Կենտկոմի կազմակերպական-պարտիական բաժնի տեսուչ

## ՀՈԳԱՏԱՐ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

ՍՄԿՊ XXII համագումարը, մշակելով մեր երկրում կոմունիստական շինարարության հոյակապ ծրագիրը, ընդգծեց պարտիայի ղեկավար դերի հետագա ամրապնդման, նրա շարքերի մարտունակության բարձրացման, լայն մասսաների հետ ունեցած կապի ուժեղացման անհրաժեշտությունը։ Ժողովրդի հետ պարտիայի ունեցած անխզելի կապն ակնառու կերպով դրսևորվում է ՍՄԿՊ շարքերի անընդհատ աճմամբ, պարտիայի մեջ թարմ ուժերի մշտական հոսանքով։ Մեր պարտիան անդուլ հոգում է ո՛չ միայն իր շարքերի քանակական աճի, այլև նրա որակական կազմի մասին։ Այժմ պարտիայի շարքերն ընդունվողների ճնշող մեծամասնությունը նյութական բարիքների արտադրության բնագավառից են՝ առաջավոր բանվորներ ու կոլտնտեսականներ, սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ։ Բոլորովին էլ պատահական չէ, որ պարտիայի XXII համագումարը մի անգամ ևս խնդիր դրեց՝ խստիվ պահպանել անհատական ընտրության սկզբունքը, բազմակողմանի ստուգել պարտիայի մեջ ընդունվողների անձնական հատկանիշները։

Լենինականի սկզբնական պարտիական կազմակերպությունները և պարտիայի քաղաքային կոմիտեն, ղեկավարվելով համագումարի այդ պահանջով, վերջին շրջանում զգալի չափով բարելավել են ՍՄԿՊ շարքերի ընդունելության



և երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքները։ ՍՄԿՊ XXII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում պարտիայի շարքերն են ընդունվել 1135 մարդ, նախորդ նույն ժամանակաշրջանի 824-ի դիմաց։ Պարտիայի՝ մասսաների հետ ունեցած կապերի ուժեղացման ու ամրապնդման շնորհիվ անհամեմատ մեծացավ պարտիայի շարքերը համալրողների ռեզերվը։

Պարտիայի շարքերի աճն ու որակական կազմի բարելավումը, առաջին հերթին, տեղի է ունենում ի հաշիվ առաջատար մասնագիտությունների բանվորների։ Որպես դրական երևույթ պետք է նշել այն, որ վերջին տարիներս քաղաքի պարտիական կազմակերպություններն իրենց ուշադրությունը հավասարապես բևեռում են նաև ինժեներա-տեխնիկական աշխատողների վրա։ Այսպես՝ 1962—1964 թվականներին ՍՄԿՊ շարքերն ընդունված 983 ընկերներից բանվորներ էին 471-ը, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, բժիշկներ և մանկավարժներ՝ 367-ը։

Պարտիայի շարքերն ընդունված բանվորների ճնշող մեծամասնությունը քաղաքի էլեկտրատեխնիկական, մեքենաշինական, սարքաշինական, հաստոցաշինական, թեթև ու տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում, գիտական ու ուսումնական հաստատություններում աշխատող առաջատար մասնագիտությունների տեր բանվորներ են՝ ջուլհակներ ու մանողներ, խառատներ և փականագործներ, հղկողներ ու քարտաշներ, որմնադիրներ և դարբիններ, իսկ ծառայողների մեջ՝ ինժեներներ, տեխնիկներ, ժողովրդական կրթության, առողջապահության բնագավառների լավագույն ներկայացուցիչներ։

ՍՄԿՊ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքների դրական փորձ են կուտակել, հատկապես, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի, գուլպայի ֆաբրիկայի, միկրոէլեկտրաշարժիչների, հղկող հաստոցների գործարանների, «Լենշին» տրեստի պարտիական կազմակերպությունները։ Նրանք լուրջ և հետևողական գործ են կատարում ինչպես պարտիայի շարքերի աճի, այնպես էլ երիտասարդ կոմունիստների քաղաքական կոփվածքն ամրացնելու, նրանց դաստիարակության գործը նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու ուղղությամբ։ Այս պարտիական կազմակերպությունների բյուրոները, կոմիտեները և նրանց քարտուղարները նախապատրաստական անհրաժեշտ աշխատանք են տանում պարտիայի շարքերն իբրև թեկնածու կամ անդամ ընդունվող յուրաքանչյուր ընկերոջ հետ։ Հիշյալ կազմակերպություններում պարբերաբար հանդիպումներ են կազմակերպվում հին բոլշևիկների, անվանի մարդկանց հետ։

Երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության լավագույն դպրոցներից մեկը քաղաքական լուսավորության ցանցն է, որը մեր երկրում իրավամբ համարվում է միլիոնների լենինյան համալսարանը։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների, երկաթուղային հանգույցի, շինարարական հրապարակների հարյուրավոր երիտասարդ կոմունիստներ են ընդգրկված քաղաքական լուսավորության ցանցի տարբեր օղակներում։ Նրանցից շատերն արժանացել են, կամ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի, բրիգադայի կոչման համար։

Մեծ Լենինի անունը կրող մեր քաղաքում քիչ չեն այն երիտասարդ կոմունիստները, որոնք իրենց արտադրական լավագույն ցուցանիշներով և հասարակական աշխատանքով օրինակ են ծառայում բոլորի համար։ Այստեղ հր-

պարտությամբ կարելի է հիշել տեքստիլագործներ Մաղեն Սիմոնյանի, Հրանուշ Մուրադյանի, քաղշին տրեստի աշխատակիցներ Սիրագիկ Խաչատրյանի և Խաչատուր Զախալյանի, № 2 մանվածքային ֆաբրիկայի անվանի բանվորուհի Վերա Զիկրանի և Արփիկ Խաչատրյանի, միկրոէլեկտրաշարժիչների գործարանի կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար Գևորգ Մխիթարյանի, Մարգո Սնխչյանի և շատ ուրիշների անունները, որոնք պատվով են կրում կոմունիստական աշխատանքի առաջամարտիկների կոչումը:

Պարտիայի քաղաքային կոմիտեն միշտ էլ մեծ նշանակություն է տալիս երիտասարդ կոմունիստների դաստիարակությանը: Կազմակերպական բաժնի նախաձեռնությամբ հաճախ տեղի են ունենում հետաքրքրական միջոցառումներ: Լավ սովորույթ են դարձել, օրինակ, երիտասարդ կոմունիստների հավաքները՝ պարտիական տոմս թեմայով, ինչպես նաև պարտիայի պատմության ու կանոնադրության վերաբերյալ զեկուցումների կազմակերպումը. երիտասարդ կոմունիստների առջև հանդես են գալիս պարտիայի քաղկոմի քարտուղարները, պարտիական-սովետական ապարատի պատասխանատու աշխատողներ: Նրանք երիտասարդ կոմունիստներին պատմում են քաղաքի աշխատանքային ու ռևոլյուցիոն տրադիցիաների մասին, նրանց ծանոթացնում քաղաքի զարգացման հեռանկարներին, կատարում ներպարտիական աշխատանքի փորձի փոխանակում:

Երրորդ տարին է, ինչ Լենինականում գործում է պարտիական աշխատողների դպրոցը, որի ունկնդիրների մեծ մասը երիտասարդ կոմունիստներ են, պարտբյուրոների քարտուղարներ, պարտիական խմբերի ղեկավարներ: Դպրոցի պարապմունքները տեղի են ունենում քաղաքի արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում: Տեղի պարտիական կազմակերպության աշխատանքի փորձին ծանոթանալուց հետո ունկնդիրները շրջում են արտադրամասերն ու բրիգադները:

Սակայն պետք է նշել, որ քաղաքի որոշ պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ դեռևս լուրջ թերություններ ու բացեր կան ՍՄԿՊ շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող աշխատանքների ուղղությամբ: Մի շարք կազմակերպություններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում պարտիայի շարքերի աճմանը: Ինչո՞վ կարող են արդարանալ ապակու գործարանի (քարտուղար Ս. Սուքիասյան), կարի անհատական պատվերների ֆաբրիկայի (քարտուղար Ռ. Խչեյան), էլեկտրակենցաղային իրերի գործարանի (քարտուղար Ա. Արզումանյան) և արդյունաբերական մի շարք այլ ձեռնարկությունների պարտիական բյուրոները, որոնք պատշաճ ուշադրություն չեն նվիրում այդ գործին, չնայած պարտիայի շարքերն ընդունվելու ցանկություն ունեցողների թիվը մեծ է: Պարտիայի շարքերի աճի ուղղությամբ անհանդուրժելի դանդաղկոտություն է նկատվում նաև հացի № 1 և № 2 գործարանների, դաշտավարական, բժշկական, երկաթուղային տեխնիկումների և գրեթե բոլոր մասսայական դպրոցների սկզբնական պարտկազմակերպություններում: Ուրախալի քիչ բան կարելի է ասել նաև պարտիայի շարքերը կանանց ներգրավելու ուղղությամբ: 1959 թվականի հետ համեմատած, 1964 թվականին պարտիայի շարքերն ընդունվողների մեջ կանանց տեսակարար կշիռը կազմեց 22 տոկոս միայն, մինչդեռ քաղաքի գործարաններում ու ֆաբրիկաներում աշխատող կանանց թիվն անցնում է մի քանի հազարից:

Կոմունիստական պարտիան միշտ էլ իր շարքերը համալրել ու համալրում



է երիտասարդության այն ակտիվ միջուկի հաշվին, որը կոմունիստական դաստիարակության դպրոց է անցել կոմերիտմիության շարքերում: Մինչդեռ թվերը ցույց են տալիս, որ վերջին տարիներս պարտիայի շարքերն ընդունվողների ընդհանուր հաշվում ՀամԼԿԵՄ անդամների թիվը գնալով նվազում է: Եթե 1960 թվականին կոմերիտականները կազմում էին պարտիայի մեջ ընդունվողների 58 տոկոսը, ապա 1961 թվականին կազմեցին 55, 1962-ին՝ 50, 1963-ին՝ 40, իսկ անցյալ տարի՝ 36,7 տոկոսը միայն: Նման հանգամանքը չի կարող անհանգստություն չառաջացնել. այդ, առաջին հերթին, արդյունք է այն բանի, որ մի շարք պարտիական կազմակերպություններ ինչպես հարկն է չեն օգնում ու ղեկավարում կոմերիտական կազմակերպություններին, վատ են ճանաչում կոմերիտական ակտիվը, նրանց մասնակից չեն դարձնում պարտիական հանձնարարությունների կատարմանը:

Անտեսելով, որ պարտիայի ուժը նրա որակական կազմի մեջ է, քաղաքի մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ իրենց գործունեության ընթացքում թույլ են տալիս սխալներ, մոռանում այն կարևոր հանգամանքը, որ անհրաժեշտ է ամենօրյա հոգատար ու քրտնաջան աշխատանք պարտիայի շարքերն ընդունվել ցանկացողների հետ, ընտրել լավագույններին, նրանց հաղորդակից դարձնել հասարակական-քաղաքական կյանքին և ոչ թե բավարարվել միայն նրանց դիմումները ժամանակին քննելով: Փոխանակ խոր և բազմակողմանի ուսումնասիրելու դիմողներին, պարտկազմակերպությունները երբեմն սահմանափակվում են միայն դիմումներ ներկայացնողների աշխատանքային ցուցանիշներով, աչքաթող անելով անձնական գործարար հատկանիշները, որի հետևանքով էլ երբեմն պարտիայի մեջ են սողոսկում առանձին անարժան անհատներ: Իսկ որոշ պարտիական կազմակերպություններ ավելորդ նրբանկատություն են ցուցաբերում այն մարդկանց նկատմամբ, որոնց պետք է պարզ ու շիտակ ասել, որ իրենց բարոյական ու քաղաքական հատկանիշներով չեն կարող լինել պարտիայի անդամ:

Քիչ չեն դեպքերը, երբ պարտիական կազմակերպությունները վաղօրոք, ինչպես հարկն է, չեն զբաղվում նաև պարտիայի մեջ ընդունվողների քաղաքական պատրաստականության հարցերով: Թերևս դրանով պետք է բացատրել այն տխուր իրողությունը, որ 1963—65 թվականներին քաղաքային կոմիտեի բյուրոն մերժել է ընդունելության 16 գործ:

Անհրաժեշտ պահանջկոտության բացակայության և լիբերալ վերաբերմունքի հետևանք է այն, որ երկաթուղու շինարարության պարտիական կազմակերպությունը ՍՄԿՊ անդամության թեկնածու է ընդունել Ա. Կիրակոսյանին, կոոպառմիությանը՝ Մ. Գաբոյանին, գործվածքային ֆաբրիկայինը՝ Յ. Մինասյանին, քաղսովետի բանջարաբուծական տնտեսությանը՝ Ե. Լաչիկյանին, № 2 բանկերիտ դպրոցինը՝ Ս. Օհանյանին, որոնք իրենց քաղաքական ու գործնական հատկանիշներով խիստ անհամատեղելի են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անդամ լինելուն: ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի բյուրոն իրավամբ չհաստատեց այդ կազմակերպությունների որոշումները՝ վերոհիշյալ ընկերներին պարտիայի շարքերն ընդունելու մասին:

Երիտասարդ կոմունիստների և պարտիայի անդամության թեկնածուների շրջանում տարվող աշխատանքներում եղած թերություններից մեկն էլ այն է, որ մի շարք պարտկազմակերպություններ այս կամ այն ընկերոջը պարտիայի շարքերն ընդունելուց հետո իրենց անելիքները համարում են ավարտված և

մոռանում նրանց գոյության մասին։ Այդ է պատճառը, որ երիտասարդ կոմունիստների մի մասն սկսում է կտրվել պարտիական կյանքից ու կոլեկտիվից, շեղվում է ճիշտ ուղուց, թույլ տալիս հակահասարակական արարքներ և նույնիսկ դառնում հանցագործ։ Այսպես, օրինակ՝ 1964 թվականի մայիսին № 18 պրոֆտեխուսումնարանը պարտիայի շարքերն ընդունեց Ռ. Կաղզվանցյանին։ Վերջինս չկարողացավ մնալ իր կոչման բարձրության վրա, պարտիական կազմակերպությունն էլ չկամեցավ այլևս իր «խնամակալության» տակ պահել երիտասարդ կոմունիստին, ինչպես ասում են՝ ձեռքերը լվանալով մի կողմ քաշվեց։ Կաղզվանցյանը հանցագործություն կատարեց, ընկավ ծանր կացության մեջ և 1965 թվականի փետրվարին հեռացվեց պարտիայի շարքերից։ Այդպես պատահեց նաև «Գալվանամետր» գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության անդամ, 1962 թվականից կոմունիստ Ժորա Պետրոսյանի հետ։ Նույն գործարանի հաշվապահ Ջ. Հարությունյանի հետ հանցավոր կապերի մեջ մտնելով, նրանք իրար հետ կիսել էին սեպտեմբեր և նոյեմբեր ամիսների աշխատավարձի ցուցակում վերջինիս հավելագրած 271 ռուբլին։ Ժողդատարանը Ժ. Պետրոսյանին դատապարտեց հարկադիր աշխատանքի, իսկ քաղաքային կոմիտեի բյուրոն նրան հեռացրեց ՍՄԿՊ շարքերից։ Համանման դեպք տեղի ունեցավ և մսի-պահածոների կոմբինատում։ Երիտասարդ բանվոր, կոմունիստ Զավեն Ավետիքյանին 1963 թվականին միլիցիայի աշխատակիցները բռնեցին կոմբինատից միս գողանալիս, որի համար նա դատապարտվեց հարկադիր աշխատանքի, իսկ պարտիայի քաղաքային կոմիտեն գողության համար նրան հեռացրեց պարտիայի շարքերից։

Ցավոք սրտի, նման երևույթներ կան նաև այլ տեղերում։ Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ միայն 1964 թվականին և 1965 թվականի անցած ժամանակամիջոցում ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի բյուրոն պարտիայի շարքերից հեռացրել է 16 պարտ անդամ-թեկնածուների։

Երիտասարդ կոմունիստների դաստիարակության լավագույն դպրոցներից մեկը հասարակական հիմունքներով կատարվող հանրօգուտ աշխատանքն է։ Մեր քաղաքի մի շարք պարտիական կազմակերպություններում, սակայն, դեռևս գործնական, լուրջ քայլեր չեն արվում այդ ուղղությամբ, մի բան, որը հանդիսանում է ՍՄԿՊ Կանոնադրության կարևորագույն և պարտադիր պահանջներից մեկը։ Երկաթուղու ջրամատակարարման պարտկազմակերպությունը, օրինակ, պարտիայի անդամության թեկնածու է ընդունել Սերգեյ Կիրակոսյանին, որը ոչ մի հասարակական հանձնարարություն չի ունեցել։ Այս ցույց է տալիս, որ պարտկազմակերպության քարտուղարը և երաշխավորող կոմունիստները լուրջ չեն վերաբերվել ՍՄԿՊ շարքերն ընդունելու գործին։ Պարտկազմակերպության քարտուղար Գրիգորյանն իր երաշխավորության մեջ նշում է, թե Սերգեյ Կիրակոսյանն ակտիվ մասնակցում է հասարակական աշխատանքներին, տեղամասային պրոֆկազմակերպիչն է, մինչդեռ երաշխավորվողը գաղափար իսկ չունի իր հասարակական հանձնարարությունների մասին։ Պետք է պատասխանատվության կանչել այն կոմունիստներին, որոնք հեռանալով սկզբունքայնությունից՝ անարժան մարդկանց երաշխավորում են պարտիայի շարքերն ընդունվելու։

Պարտիական կազմակերպությունների հիմնական ու առաջնահերթ խնդիրներից մեկը պարտիայի անդամության թեկնածուների հետ տարվող համբերատար ու հոգատար աշխատանքն է, նրանց բազմակողմանի նախապատրաստումը՝ ժամանակին անդամ ընդունվելու։ Սակայն, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրություններն ու փաստերը, վերջին ժամանակներս այդ ուղղությամբ կատարված զգալի աշխատանքի կողքին, որոշ պարտկազմակերպությունների գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ, որոնց հետևանքով խախտվում են ոչ միայն պարտիայի կանոնադրական պահանջները, այլև, դուրս մնալով տեսադաշտից, պարտթեկնածուները կտրվում են պարտիական կյանքից և շատ դեպքերում իրավացիորեն մերժվում է նրանց ՍՄԿՊ անդամ ընդունելու գործը, կամ մեխանիկորեն հեռացվում են թեկնածությունից՝ այդ շրջանում իրենց չարդարացնելու համար։ 1964 թվականի հունիսին պարտիայի քաղաքային կոմիտեի բյուրոն հարկադրված եղավ պարտիայի անդամության թեկնածությունից հեռացնել կոշկի № 2 ֆաբրիկայի աշխատակից Զ. Զալալյանին՝ սոցիալիստական սեփականության վրա ձեռք բարձրացնելու համար։ Թեկնածուական շրջանում իրենց չարդարացնելու պատճառով պարտիայից դուրս մնացին նաև Հայկ Ներսիսյանը՝ № 2 ավտոգրասենյակից, Սաշիկ Հարությունյանը՝ «Լենշին» տրեստի № 2 շինվարչությունից, Ռաֆիկ Ավդալյանը՝ կավէլեկտրամոնտաժից, Ռոբերտ Սիմոնյանը՝ «Ստրոմմաշինա» գործարանից և ուրիշներ։ Պատահական չէր, որ երիտասարդ կոմունիստների շրջանում անբավարար աշխատանք ծավալելու հետևանքով քաղկոմի բյուրոն նկատողություն արեց «Ստրոմմաշինա» գործարանի պարտկազմակերպության բյուրոյի նախկին քարտուղար Ա. Գևորգյանին։

Պարտիական կազմակերպությունները երբեք չպետք է մոռանան, որ պարտիայի որակական կազմի բարելավումը, նրա մարտունակության բարձրացումը և երիտասարդ կոմունիստների նկատմամբ հոգատար վերաբերմունքն են մեր բոլոր հաջողությունների երաշխիքը։ Միայն գաղափարապես կոփված, գործիմաց կոմունիստը կարող է ճիշտ կողմնորոշվել պարտիայի քաղաքականության մեջ, հաղթահարել դժվարությունները, հաջողությամբ կատարել պարտիայի առաջադրած խնդիրները։

Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի
քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԵՐԵՎԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ*

*Հայկական ՍՍՌ արտադրողական ուժերի տեղաբաշխման հանգուցային հարցերից մեկը Երևանի զարգացման ուղղության ճիշտ որոշելն է, մանավանդ, եթե նկատի ունենանք քաղաքի բնակչության և արդյունաբերության տեղը ռեսպուբլիկայում։*

*Այժմ Երևանում առաջավոր տեխնիկայի բազայի վրա ստեղծված է խոշոր բազմաճյուղ արտադրություն, որն ապահովված է կադրերով, բարձրորակ մասնագետներով և գիտահետազոտական, նախագծային կազմակերպությունների լայն ցանցով։ Օգտագործելով տեղական բարենպաստ պայմանները և միջռեսպուբլիկական տնտեսական կապերը, սովետական կարգերի հաստատումից ի վեր արդյունաբերական տրադիցիոն ճյուղերից (գինեգործություն, պահածոների արտադրություն և այլն) բացի առաջացել է նաև խոշոր քիմիական արդյունաբերություն, մեքենաշինություն, էլեկտրատեխնիկական և թեթև արդյունաբերություն, հզոր էներգետիկ տնտեսություն։ Աճել է նաև քաղաքի բնակչությունը. 1939—1959 թվականների մարդահամարների միջև ընկած ժամանակամիջոցում այն ավելացել է 2,4 անգամ կամ միջին տարեկան աճը կազմել է 4,4 տոկոս։ 1959 թվականին քաղաքում բնակվում էր 518 հազար մարդ, 1939 թ.՝ 248 հազարի դիմաց։ Այդ աճն այժմ էլ շարունակվում է. առ մեկը հունվարի 1965 թվականի Երևանում բնակվում էին 623 հազար մարդ։*

*Գլխավոր հեռանկարում Երևանի բնակչության աճի վերաբերյալ կան տարբեր կարծիքներ, որոնք հանգում են այն բանին, որ քաղաքի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայում չպետք է աճի, քաղաքի բնակչության և ռեսպուբլիկայի արտադրանքի ծավալի միջև պետք է պահպանվի համամասնություն։ Իսկապես, 1960 թվականին Երևան քաղաքում բնակվում էր Հայկական ՍՍՌ-ի ամբողջ բնակչության մոտ 30 տոկոսը, այդտեղ էր կենտրոնացված ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերական արտադրության (համախառն արտադրանքի) մոտ 70 տոկոսը։ Արդյունաբերության բարձր տեսակարար կշռի վրա ազդել է արդյունաբերության կառուցվածքը, իսկ քաղաքի բնակչության թվի վրա՝ այն հանգամանքը, որ Երևանը ռեսպուբլիկայի վարչական ու կուլտուրական կենտրոնն է։*

*Քաղաքի արդյունաբերության զարգացման հեռանկարի հարցերի լուծման համար անհրաժեշտ է առաջին հերթին իմանալ, թե ինչպիսին կլինի նրա բնակչության թիվը, որն ավելանում է նաև մեխանիկական աճի միջոցով։*

*Ի դեպ պետք է նշել, որ ամբողջ Հայաստանում, և ոչ միայն Երևանում, բնակչության աճի տեմպերը համեմատաբար բարձր են միութենական միջինից։ 1939—1959 թվականներին բնակչության աճը ՍՍՌՄ-ում կազմել է 9,5 տոկոս, ընդ որում քաղաքային բնակչությունն ավելացել է 67 տոկոսով, իսկ գյուղականը 17 տոկոսով կրճատվել է, ՀՍՍՌ-ում աճի տեմպը կազմել է 38 տոկոս, քաղաքային բնակչության բացարձակ աճը 141 տոկոս, և 4 տոկոսով կրճատվել է գյուղական բնակչությունը։*

*Այստեղից կարելի է եզրակացնել, որ Հայաստանի քաղաքային բնակչության աճը կատարվում է հիմնականում ոչ թե գյուղից քաղաք տեղափոխվելու, այլ նրա հիմնական բնակչության բնական աճի և երկրի այլ շրջաններից, ինչպես և արտասահմանից հայ աշխատավորների ներգաղթի հաշվին։ Այս երկու հատկանիշները սխալ կլիներ արհեստականորեն սահմանափակել. պետք է հաշվի առնել, որ ՍՍՌՄ-ում ապրող հայերի 44 տոկոսը կամ ավելի քան 1200 հազար մարդ ապրում են Հայկական ՍՍՌ-ի սահմաններից դուրս։ Նրանցից շատերը բարեկամական կապերով և այլ պատճառներով վերադառնում են Հայաստան, հատկապես Երևան, նպաստելով ռեսպուբլիկայի բնակչության մեխանիկական աճին։*

*Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս Երևան քաղաքի բնակչության աճը։*

| | Բնակչության թիվը (հազ. մարդ) | | Միջին տարեկան աճը բացարձակ | | | Աճը տոկոսներով | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | սկզբնական | վերջնական | բացարձակ աճը | ժամանակամիջոց | աճ (մարդ) | բացարձակ աճը տվյալ ժամանակաշրջանում | միջին տարեկան տեմպը |
| 1914—1922 թթ. | 30 | 45 | + 15 | 8 | + 1875 | 150 | 5,2 |
| 1922—1939 թթ. | 45 | 218 | +173 | 17 | +10176 | 485 | 9,7 |
| 1939—1959 թթ. | 218 | 518 | +300 | 20 | +15000 | 238 | 4,4 |
| 1959—1964 թթ. | 518 | 606 | + 88 | 5 | +22000 | 117 | 4,0 |
| 1964—1965 թթ. | 606 | 623 | + 17 | 1 | +17000 | 103 | 3,0 |

*Բերենք Երևան քաղաքի բնակչության աճի մի քանի տարբերակներ։*

*Եթե հեռավոր հեռանկարում Երևանի աճի տեմպերը պահպանվեն անցած 20 տարիների չափով (1939—1959 թթ.), ապա բնակչությունը կկազմի 252 տոկոս և կհասնի 1305 հազար մարդու։ Իսկ եթե հեռավոր հեռանկարում ելնենք (հաշվի առնելով և գյուղական բնակչության պակասելը) ռեսպուբլիկայի համար ընդունված մինիմումի սահմանից, ապա Երևանի բնակչության թիվը կկազմի 186 տոկոս, հասնելով 964 հազար մարդու։*

*Երևանի համար բնակչության աճի միջին տարեկան տեմպը եթե ընդունենք 3 տոկոս (որը նախատեսված է ամբողջ ռեսպուբլիկայի համար), հեռանկարում այն կդառնա 155 տոկոս և բնակչությունը կհասնի 965 հազար մարդու։*

*Վերջապես, եթե պահպանվի վերջին վեց տարիների (1959—1965 թվականների) Երևանի բնակչության աճի միջին տարեկան տեմպը՝ 3,1 տոկոս,*

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։

ապա առաջիկա 15 տարում կամ գլխավոր հեռանկարում բնակչությունը կկազմի 158 տոկոս և բացարձակ աճը կհասնի 984 հազարի կամ մոտ մեկ միլիոն մարդու։

Ընդունելով, որ հեռավոր ապագայում Երևանն ունենալու է մեկ միլիոն բնակչություն, չենք կանխատեսում, որ հենց հեռավոր հեռանկարի վերջում քաղաքում կապրեն ճիշտ այդ թվով մարդիկ։ Թող այդպիսի քանակ առեղծվի մեկ տարի շուտ կամ մեկ տարի ուշ, բայց հաշվարկների համար քաղաքակազմավորման հիմնական գործոնը կարելի է ընդունել ռեալ թիվը, որը կաղատի հետագայում մի շարք այլ սխալներից։

Բնակչության այդպիսի թվի դեպքում կստեղծվի հետևյալ կառուցվածքը (տոկոսներով)

| | Մոտավոր հեռանկար | Հեռավոր հեռանկար |
|---|---|---|
| Ամբողջ բնակչությունը | 100,0 | 100,0 |
| այդ թվում՝ | | |
| աշխատունակների հասակը | 53,3 | 57,2 |
| աշխատողներ աշխատունակ հասակից դուրս | 2,5 | 3,5 |
| Ընդամենը | 55,8 | 60,7 |
| Որից արդյունաբերության մեջ զբաղված | 19,7 | 20,4 |
| Որից աշխատունակներն ու աշխատողները (տոկոսներով) | 35,3 | 33,6 |

Այդպիսի ցուցանիշների դեպքում մոտավոր հեռանկարում Ռեսպուբլիկայում Երևանը կգրավի հետևյալ տեղը։

| | Ամբողջ բնակչությունը | | Այդ թվում քաղաքային | |
|---|---|---|---|---|
| | առ 1/1 1963 թ. | մոտավոր հեռանկար | առ 1/1 1963 թ. | մոտավոր հեռանկար |
| Հայկական ՍՍՌ բնակչության ամբողջ թիվը (հազարով) | 1954 | 2520 | 1030 | 1571 |
| այդ թվում Երևան (հազարով) | 578 | 750 | 578 | 750 |
| Տոկոսներով ամբողջ բնակչության հանդեպ | 29,5 | 29,8 | 56,1 | 47,6 |

Պահպանելով Երևանի բնակչության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության մեջ (29,5—29,8 տոկոս), քաղաքային բնակչության մեջ նրա տեսակարար կշիռը կկրճատվի և 56,1-ից կհասնի 47,6 տոկոսի, որը կնպաստի ռեսպուբլիկայի մյուս կենտրոնների և շրջանների աճմանը։ Ինչ վերաբերում է արդյունաբերության մեջ ամբողջ բնակչության զբաղվածության տեսակարար կշռին՝ ապա այստեղ մոտավոր հեռանկարում կարելի է կողմնորոշել Երևան քաղաքի տեղը ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության արտադրանքի մեջ։ Մոտավոր հեռանկարում այն կկազմի 40 տոկոս, 1965 թվականի՝ 54 տոկոսի դիմաց։

Դրանով է բացատրվում Երևանի արդյունաբերության աճի որոշ կասեցումը ամբողջ ռեսպուբլիկայի ընդհանուր աճի համեմատությամբ։ Ընդ որում, եթե ռեսպուբլիկայի համար մոտավոր հեռանկարում (1965 թ. նկատմամբ) նախատեսված է աշխատանքի արտադրողականության 5—6 տոկոս աճի տեմպ,



ապա նույն ժամանակամիջոցում Երևանի համար նախատեսվում է մոտ 2,5 տոկոս։ Սակայն այդ ժամանակ Երևանում ապահովվում է մեկ աշխատողին ընկնող բացարձակ բարձր արտադրանք։ Այդ բացատրվում է աշխատանքի բարձր փոխհատուցում ունեցող քիմիական և սննդի արդյունաբերության խիստ համակենտրոնացմամբ։

Նկատի ունենալով, որ հետագայում Երևան քաղաքի արդյունաբերությունը կզարգանա մեծ մասամբ ինտենսիվացման և ընդլայնման, որոշ չափով նոր շինարարության հաշվին և, հաշվի առնելով արտադրության կառուցվածքի փոփոխությունը, ինչպես և ավելացող յուրաքանչյուր տոկոսի բացարձակ աճը, աշխատանքի արտադրողականությունը Երևանի արդյունաբերության մեջ հեռավոր հեռանկարում այնքան էլ արագ չի բարձրանա։

Ելնելով նշված հանգամանքներից կարելի է մոտավորապես որոշել արտադրության այն ծավալը, որն անհրաժեշտ է Երևանի բնակչության արդյունավետ զբաղվածությունն ապահովելու համար։

Այդ երևում է ստորև բերված աղյուսակից (1960 թվ. համեմատությամբ տոկոսներով).

| | 1965 թ. | Մոտավոր հեռանկար | Հեռավոր հեռանկար |
|---|---|---|---|
| Համախառն արտադրանքը | 146,4 | 238,7 | 410,9 |
| Արդյունաբերության մեջ ընդգրկված բնակչության թիվը | 148,4 | 188,6 | 259,2 |
| Մեկ աշխատողի արտադրանքը | 98,6 | 126,5 | 158,4 |

Այդ դեպքում Երևանի արդյունաբերության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի բնակչության համեմատությամբ կկազմի (տոկոսներով)

| | 1960 թ. | 1965 թ. | Մոտավոր հեռանկար | Հեռավոր հեռանկար |
|---|---|---|---|---|
| Համախառն արտադրանքը | 70,2 | 62,1 | 51,8 | 30,4 |
| Բնակչության ամբողջ թիվը | 29,5 | 29,9 | 29,8 | 29,0 |

Բերված տվյալներից երևում է, որ ոչ միայն մոտավոր, այլև հեռավոր հեռանկարում Երևան քաղաքի արդյունաբերության տեսակարար կշիռը նրա ներկայումս քիչ զարգացած շրջաններում, նույնիսկ ակտիվ աճի դեպքում, կիջնի և հեռավոր հեռանկարի վերջում կհամապատասխանի ռեսպուբլիկայի բնակչության թվի տեսակարար կշռին։

Որո՞նք են Երևանի արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունները և ինչպիսին կլինի արտադրության կառուցվածքը հետագայում։

Էներգետիկայում կընդլայնվի Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի նախագծային լրիվ հզորությունը։ Մետալուրգիայում հնարավոր է միայն ընդլայնել գործող արտադրությունը, ինչպես և զարգացնել ալյումինի գործարանի արտադրանքի (ֆոլգա, գլանվածք, հնարավոր է և ձուլվածքներ) վերամշակությունը։ Մեքենաշինության մեջ. նախատեսվում է ընդլայնել գործող և արդեն կառուցվող ձեռնարկությունները, նկատի ունենալով առկա հրապարակներում գործող արտադրության ինտենսիֆիկացման հնարավորությունները և ընդարձակելով գործարանների գրաված տերիտորիան, նրանց կից ազատ տարածությունների հաշվին։

Քիմիական արդյունաբերության մեջ հիմնականում կզարգանա գործող և նոր ստեղծող ձեռնարկություններից ածանցվող արտադրությունը, խոսափելով թունավոր թափուկներ, մանավանդ չորսացվող գազեր արտաբերող նոր արտադրությունից։

Փայտամշակման արդյունաբերությունը. Նախատեսվում է սահմանափակել կահույքի արտադրությունը՝ միայն Երևանի և մոտակա բնակելի վայրերի պահանջարկը բարելավելու նպատակով։ Ապակու, հախճապակու արդյունաբերությունը սահմանափակվում է հախճապակու գործարանի զարգացմամբ։ Թեթև արդյունաբերությունը կընդլայնվի գործող, մասնավորապես բրդյա և մետաքսյա գործվածքներ արտադրող ձեռնարկությունների տերիտորիալ հնարավորությունների շրջանակներում։ Նախատեսվում է կառուցել կոշկի խոշոր ֆաբրիկա։ Սննդի արդյունաբերության մեջ. առավելությունը կտրվի այն ձեռնարկություններին, որոնք քաղաքի բնակչության համար արտադրում են հատկապես վաղանեխիկ սննդամթերքներ։

Նախատեսվում է կառուցել՝ էլեկտրատեխնիկական, սարքաշինական և ռադիոէլեկտրոնային արդյունաբերության ձեռնարկություններ և ավտոմոբիլային գործարան։

Կարևոր նոր արտադրություններ. պլաստմասսայի և սինթետիկ խեժանյութերի գործարանը, պլաստմասսայի՝ լայն պրոֆիլով վերամշակման և զուտ հանքային պարարտանյութերի ձեռնարկությունները, ինչպես և նուրբ քիմիայի և բժշկական պարագաների արդյունաբերությունը։

Շինարարական նյութերի արդյունաբերությունը կզարգանա ցրված ոչ մեծ արտադրությունների կենտրոնացման ուղիով, և դրանք կհամապատասխանեցվեն քաղաքի շինարարության մասշտաբներին։ Միաժամանակ անհրաժեշտ կլինի ուսումնասիրել շինարարական ինդուստրիան հումքային բազային մոտեցնելու նպատակահարմարությունը՝ քաղաքին պատրաստի արտադրանք մատակարարելու նպատակով, եթե հանքային շրջանում (Մայմեխ և Իջևան) ստեղծվի մարմարի վերջնամշակման արտադրություն, հնարավոր կլինի Երևանի մարմարի կոմբինատը քաղաքից դուրս հանել։

Հայտնի է, որ Երևանի արդյունաբերության նորակառույցները սահմանափակվում են։ Ուստի, պետք է որոշել, թե ինչպիսի ճանապարհներով կարելի է ապահովել քաղաքի անխուսափելի ավելացող բնակչության զբաղվածությունը։ Հավանաբար, նորակառույցների շարքում առավելությունը պետք է տալ գիտական հիմնարկների, բուհերի և կուլտուրայի օջախների ավելացմանը։ Հեռավոր հեռանկարում հնարավոր կլինի նաև կրճատել վարչական ապարատը։

Վերը նշել ենք, որ անհրաժեշտ է կրճատել Երևան քաղաքի ինչպես արտադրության ծավալը, նույնպես և նրա անձնակազմը, որի հետևանքով կփոքրանա քաղաքի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայում։ Նշանակալի չափով կբարձրանա զբաղվածությունը մյուս, հատկապես նյութական արտադրության ոլորտներում։

Եթե Երևանի արդյունաբերության զարգացման մակարդակը մեր նախատեսածից ցածր լինի, ապա կառաջանա ռեսպուբլիկայի այլ շրջանների գերլարվածություն, ընդ որում արդյունաբերության մեջ զբաղված անձնակազմի տեսակարար կշիռը քաղաքի ամբողջ բնակչության թվի նկատմամբ կփոխվի հետևյալ համաչափությամբ։



| 1960 թ. | 1965 թ. | Մոտավոր հեռանկար | Հեռավոր հեռանկար |
|---|---|---|---|
| 15,0 | 18,0 | 20,0 | 20,4 |

Ըստ նախատեսված ճյուղերի զարգացման, Երևանի արդյունաբերության կառուցվածքը կլինի հետևյալը.

| Արդյունաբերության ճյուղերը | Տեսակարար կշիռը | | | | Հեռավոր հեռանկարի աճը տոկոսներով | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1960 թ. | 1965 թ. | մոտավոր հեռանկար | հեռավոր հեռանկար | 1965 թ. | 1960 թ. |
| Ընդամենը | 100 | 100 | 100 | 100 | 280,9 | 411,1 |
| Էներգետիկա | 1,1 | 1,1 | 0,9 | 1,1 | 274,5 | 397,3 |
| Սև մետալուրգիա | 0.5 | 0,3 | 0,4 | 0,3 | 218,7 | 225,8 |
| Մեքենաշինություն և մետաղամշակում | 22,3 | 26,2 | 32,0 | 43,8 | 420,2 | 808,5 |
| Շինանյութերի արդյունաբերություն | 3.5 | 4.8 | 4,6 | 5,3 | 318,2 | 636,5 |
| Անտառային և փայտամշակման արդյունաբ. | 22,3 | 2,0 | 1,3 | 1,1 | 157,8 | 200,0 |
| Ապակու և հախճապակու արդյունաբերություն | 0,3 | 0,2 | 0,1 | 0,2 | 230,0 | 328,5 |
| Թեթև արդյունաբերություն | 28,8 | 22,1 | 15,6 | 10,3 | 130,8 | 147,1 |
| Սննդի արդյունաբերություն | 22,6 | 19,2 | 15.0 | 12,0 | 176,5 | 213,8 |
| Բժշկական պարագաների արդյունաբ. | — | — | 0,6 | 0.6 | — | — |
| Այլ ճյուղեր | 1,0 | 1,0 | 0,9 | 0,9 | 250,0 | 416,6 |

Բերված աղյուսակից երևում է, որ Երևանի արդյունաբերության մեջ համախառն արտադրանքի ընդհանուր ծավալում ավելի մեծ տեսակարար կշիռ կունենա մեքենաշինությունը (1960 թ. 22,3 տոկոս). մոտավոր հեռանկարում՝ 32,0, հեռավոր հեռանկարում՝ 43,8 տոկոս, միաժամանակ համեմատաբար կրճատելով քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռն ի հաշիվ այն օբյեկտների, որոնք խախտում են քաղաքի բնակչության սանիտարա-հիգիենիկ պայմանները։

Նախատեսված է Երևանի արդյունաբերությունը զարգացնել հիմնականում առկա և մինչև 1965 թվականը կառուցվող ձեռնարկությունների ընդլայնման և վերակառուցման հաշվին, որի շնորհիվ հեռավոր հեռանկարում քիմիական արդյունաբերության մեջ մինչև 1965 թվականը գործող ու կառուցվող ձեռնարկությունները կթողարկեն ամբողջ արտադրանքի 74 տոկոսը, իսկ 1966 թվականից հետո նախագծվող ձեռնարկությունները՝ 26 տոկոսը, մեքենաշինության գծով՝ համապատասխանաբար 74,4 և 25,6, շինանյութերի արդյունաբերության գծով՝ 94,8 և 9,2 և, վերջապես, դեղորայքի արդյունաբերության գծով՝ 33,3 և 66,7 տոկոսը։ Մնացած ճյուղերի գծով Երևանում նորակառույցներ չեն նախատեսվում։

Արդյունաբերության նախատեսված զարգացումը պահանջում է համապատասխան տերիտորիա և արտադրության արդյունավետ տեղաբաշխում։ Գոյություն ունեցող օբյեկտները, բնականաբար, կընդլայնվեն նրանց կից տարածությունների և, հնարավորության դեպքում, շենքերի հարկերի ավելացման միջոցով, վերին հարկերում տեղավորելով գրասենյակները և մեծ ծանրաբեռնվածություն չունեցող արտադրությունը։ Հետևաբար, գլխավորը արդյունաբերության տեղաբաշխման գոտիների ճիշտ ընտրությունն է, որը կարոտ է առանձնահատուկ ուշադրության։

Ըստ քաղաքի գլխավոր պլանի, Երևանի բնակչությունը հիմնականում կտեղաբաշխվի նրա հյուսիսային գոտում՝ Շահումյանի և 26 կոմիսարների անվան շրջաններում։ Քաղաքի արդյունաբերությունը գերազանցապես տեղաբաշխվում է նրա հարավային մասում, Օրջոնիկիձեի և մասամբ Լենինի անվան շրջաններում։ Սակայն քաղաքի արդյունաբերության հետագա զարգացումը շարունակվում է հարավային ուղղությամբ և ընդգրկում է Արարատյան դաշտավայրի հողերը։ Մինչդեռ այդ հողերը աղազերծման դեպքում ավելի կբարելավվեն և հնարավոր կլինի դրանք օգտագործել գյուղատնտեսության համար, իսկ քաղաքի հյուսիսային մասի հողերը կարելի է հատկացնել շինարարությանը։ Միաժամանակ պետք է նշել, որ քաղաքի հյուսիսային մասի հողածածկն ավելի ամուր է, քան հարավայինը, իսկ այդ շատ կարևոր է բազմահարկ շենքերի կառուցման համար։

Վերջապես, նկատի ունենալով, որ արդյունաբերությունից արտազատվում են զանազան գազեր, նպատակահարմար է ձեռնարկությունները տեղաբաշխել Երևանի հյուսիս-արևելյան մասում։ Այդ մասերում տեղավորված ձեռնարկություններն ապահովելով միասնական կոլեկտորով և մաքրող կառուցվածքներով, հեշտ կլինի նաև ազատվել հոսող ջրերից։

Այդպիսի տեղաբաշխման դեպքում կհեշտանա Շահումյանի և 26 կոմիսարների շրջաններում ապրող բանվորներին Երևանի հյուսիս-արևելյան և, հատկապես, հյուսիսային ու հյուսիս-արևմտյան գոտիներում գտնվող նրանց աշխատավայրը տեղափոխելը։

Այդ բոլոր պատճառներից ելնելով կարծում ենք, որ ավելի ճիշտ կլինի կանխել քաղաքի զարգացումը Արարատյան դաշտավայրի ուղղությամբ։

Եթե Երևանը զարգանա հարավային ուղղությամբ և Մասիսում կազմակերպվի արտադրություն, ապա, վերջին հաշվով, այդ երկու գոտիները կդառնան մի քաղաք։ Այդ դեպքում կամ պետք է ավելի երկարացվեն քաղաքի հյուսիսային բնակելի զանգվածի և նրա հարավային արդյունաբերական թևի միջև ընկած կոմունիկացիաները, կամ Երևանի և Մասիսի միջև հարկ է ստեղծել բնակելի նոր զանգված, իսկ այդ գոտին այնքան էլ հարմար չէ բնակելի շենքերի համար։

Այդ բոլոր նկատառումներից ելնելով կարծում ենք, որ Արարատյան դաշտավայրում կարելի է տեղաբաշխել միայն այդ գոտու հետ օրգանապես կապված արդյունաբերական ձեռնարկությունները, օրինակ, պահածոներինը. իսկ քիմիական և այլ ձեռնարկություններ ճիշտ կլինի տեղաբաշխել Երևանի հյուսիս-արևելյան մասում, եթե նույնիսկ այս դեպքում արտադրության մեջ արվող ուղղակի կապիտալ ներդրումները լինեն ավելի բարձր։ Դրանք կարող են փոխհատուցվել ժողովրդատնտեսական ծախսերով՝ տրանսպորտի խնայողության հաշվին, իսկ որ գլխավորն է՝ բարելավել քաղաքի բնակչության կենսապայմանները։

Կ. ՎԵՐՄԻՇԵՎ
Տնտեսական գիտությունների թեկնածու

Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆ
Կրտսեր գիտական աշխատող

# ԿՈՒԼՏՈՒՐ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

Վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայում խոշոր հաջողություններ են ձեռք բերված կապիտալ շինարարության բոլոր բնագավառներում։ Բավական է ասել, որ 1961—1965 թվականներին կապիտալ շինարարության մեջ ներդրվել է 1300 միլիոն ռուբլի՝ 1956—1960 թվականների 571 միլիոնի դիմաց։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունն ավելի արագ զարգացնելու նպատակով 1965 թվականին կատարված կապիտալ ներդրումները ավելի քան 2,5 անգամ գերազանցում են 1960 թվականի ներդրումների մակարդակը։

Արտադրական շինարարության բնագավառում ձեռք բերված հաջողությունների հետ միասին վերջին հինգ տարում նկատելիորեն ընդլայնվել է կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։ Այսպես, եթե լուսավորության, կուլտուրայի և առողջապահության օբյեկտների շինարարության մեջ 1961—1965 թվականներին կատարված կապիտալ ներդրումների ծավալը համեմատենք 1956—1960 թվականի համապատասխան ցուցանիշների հետ, ապա կստացվի հետևյալ պատկերը։ 1961—1965 թվականներին լուսավորության օբյեկտների շինարարության մեջ պետական միջոցներից ներդրվել է 49 միլիոն ռուբլի՝ նախընթաց հնգամյակի 11,5 միլիոն ռուբլու դիմաց։ 1961—1965 թվականներին շահագործման են հանձնվել 90 հազար տեղով հանրակրթական դպրոցներ և 16 հազար տեղով նախադպրոցական հաստատություններ՝ 1956—1960 թվականների 28 հազար տեղով դպրոցների և 3,5 հազար տեղով նախադպրոցական հաստատությունների դիմաց։ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շինարարությանը հատկացվել է 3,7 միլիոն ռուբլի՝ 1956—1960 թվականների 0,4 միլիոն ռուբլու դիմաց։ Կուլտուրայի օբյեկտների շինարարության գծով արված հատկացումները համապատասխանաբար կազմել են 9,4 և 5,5 միլիոն ռուբլի։

Զգալի հաջողություններ են ձեռք բերված նաև առողջապահական հիմնարկությունների շինարարության բնագավառում։ 1961—1965 թվականներին շահագործման են հանձնվել 78 բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկություն, այդ թվում 40 հիվանդանոց՝ 3480 մահճակալով։

Չնայած այդ հաջողություններին, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը ռեսպուբլիկայում դեռևս լրջորեն ետ է մնում։ Քաղաքներում, հատկապես, բանվորական նոր ավաններում ու գյուղերում ակումբների, կինոթատրոնների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների, դպրոցների ու նախադպրոցական հիմնարկների, ինչպես և սպորտային օբյեկտների շինարարությունը չափազանց անբավարար է ընթանում։

Բնակչությանը կուլտուրայի օջախներով ապահովելը կոմունիստական շինարարության հիմնական հարցերից մեկն է, ուստի ստեղծված դրությունը պահանջում է մանրազնին քննության առնել այն և առաջիկա տարիներին վճռականորեն փոխել կուլտուր-կենցաղային շինարարության մասշտաբները։

Ամենից առաջ պետք է ասել, որ կուլտուր-կենցաղային շինարարության բոլոր ցուցանիշներով և ուղղություններով ռեսպուբլիկան զգալիորեն ետ է մնում միութենական միջին մակարդակից։ Ներկայումս ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցների առաջին հերթում սովորում է աշակերտների 61,7 տոկոսը, ամբողջ Միության 1963—1964 ուսումնական տարվա 69,5 տոկոսի դիմաց, այսինքն՝ 8 տոկոսով պակաս։ Բնորոշ է, որ հինգ տարի առաջ Հայ-

կական ՍՍՌ-ն միայն 5 տոկոսով էր ետ մնում միութենական ցուցանիշներից։ Հատկանշական է նաև, որ վերջին 3 տարում Հայաստանում երկրորդ հերթում սովորողների թիվն ավելացել է 31 տոկոսով, իսկ ամբողջ Միության մեջ միայն 11 տոկոսով։

Հայկական ՍՍՌ դպրոցներում վատ է դրությունը նաև մեկ սովորողին ընկնող միջին տարածության տեսակետից։

Ռեսպուբլիկան առանձնապես ետ է մնում նախադպրոցական հիմնարկների կառուցմամբ։ Այդ է պատճառը, որ 1965 թվականին Հայկական ՍՍՌ նախադպրոցական հիմնարկներն ընդգրկելու են նախադպրոցահասակ երեխաների միայն 12,8 տոկոսը, այդ թվում գյուղական վայրերում՝ 3,9 տոկոսը՝ միութենական միջին 22 և 7,2 տոկոսների դիմաց։ Աշխատող կանանցից շատերը զրկված են իրենց երեխաներին մանկապարտեզներում և մանկամսուրներում տեղավորելու հնարավորությունից, մի բան, որը բանվորուհիների հոսունության գլխավոր պատճառն է։

Նյութատեխնիկական բազայի ընդլայնման կարիք են զգում նաև ռեսպուբլիկայի բարձրագույն և, հատկապես, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները։ Երկար տարիներ ռեսպուբլիկայի տեխնիկումների շինարարության համար միջոցներ չէին հատկացվել, իսկ ընդունվող ուսանողների թիվը վերջին 6 տարվա ընթացքում ավելի քան կրկնապատկվել է։

Որպեսզի 1975 թվականին լուծենք 1 բարձրագույնավարտ մասնագետի դիմաց 3—4 միջնակարգավարտ մասնագետ պատրաստելու խնդիրը, մեր կարծիքով, պետք է առաջիկա տարիներին 2,5 անգամ ավելացնենք տեխնիկում ընդունվողների թիվը և համապատասխանորեն մեծացնենք կապիտալ շինարարության ներդրումները ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հաշվին։

Հայկական ՍՍՌ-ն խիստ ետ է մնում բնակչության կուլտուրական և, մասնավորապես, կինոսպասարկման բազայի ստեղծման ուղղությամբ։ Մեզ մոտ քաղաքային 1000 բնակչին ընկնում է 27 տեղ՝ միութենական միջին 45 տեղի դիմաց։ Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը 1964 թվականի վերջերին քննարկեց բնակչության կինոսպասարկումը բարելավելու հարցը և որոշեց 1966—1970 թվականների պլանը մշակելիս միջոցներ նախատեսել այդ բնագավառում եղած թերությունները վերացնելու համար։

Խիստ անբավարար է ակումբների և կուլտուրայի տների շինարարությունը։ Ռեսպուբլիկայի 174 սովխոզներից միայն 26 սովխոզում են գործում ակումբային հիմնարկներ, իսկ մյուսներում ոչ մի հարմար վայր չկա մասսայական աշխատանք կատարելու համար։ Բանվորական նորաստեղծ ավանների ու քաղաքների մեծ մասը նույնպես չունի ակումբներ և կուլտուրայի տներ։ Գրադարանները, երաժշտական դպրոցները, թատրոնները, թանգարանները և կուլտուրայի մյուս օբյեկտները բավարար չափով ապահովված չեն համապատասխան շենքերով։ Նման վիճակը խիստ բացասաբար է անդրադառնում երիտասարդության դաստիարակության վրա. նրանց զգալի մասը փաստորեն զրկված է իր ազատ ժամանակը կազմակերպված անցկացնելու հնարավորությունից։

Խոսելով կուլտուր-կենցաղային շինարարության ընդարձակման անհրաժեշտության մասին, չի կարելի չհիշատակել ռեսպուբլիկական նշանակություն ունեցող մի քանի օբյեկտներ, որոնց կառուցման հարցը ևս պետք է լուծվի առաջիկա տարիներին։ Ամենից առաջ խոսքը վերաբերում է «Հայֆիլմ» կինո-



ստուդիայի շինարարությանը։ Ունենալով ամենահիանալի տրադիցիաներ այդ ամենամասսայական արվեստի բնագավառում, հայ կինեմատոգրաֆիստները փաստորեն ոչ մի բազա չունեն։ Բացի դրանից, անհրաժեշտ է կառուցել պատկերասրահ, հանրային պետական գրադարանի գրապահոց, պատանի հանդիսատեսի թատրոն և թատերական մի քանի այլ շենքեր՝ ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում, մի քանի թանգարաններ։

Այս հարցերը, մեր կարծիքով, պետք է լուծվեն առաջիկա հնգամյակում։

Երիտասարդության դաստիարակման գործում պակաս կարևոր նշանակություն չունի սպորտային բազաների՝ լողավազանների, մարզադահլիճների, ստադիոնների և այլ օբյեկտների շինարարությունը։ Մեր ռեսպուբլիկայում այդ ուղղությամբ գրեթե ոչինչ չի արվում։ Բանն այնտեղ է հասել, որ վերջին ժամանակներս այդ նպատակին անբավարար միջոցներ են հատկացնում։ Ավելին, սպորտային օբյեկտների շինարարության սահմանափակումը հնարավորություն չի տալիս տեղերում այդ նպատակի համար օգտագործել հիմնարկների, սովխոզների և կոլտնտեսությունների ունեցած միջոցները։ Անհրաժեշտ է վերջ տալ այդ վիճակին և առաջիկա հնգամյա պլանում լուծել սպորտի զարգացման հարցերը։

Հարկավոր է Երևանում կառուցել սպորտի պալատ, մեծ ստադիոն, սպորտի բազաներ բոլոր քաղաքներում, բանվորական ավաններում ու գյուղերում, առավելագույն չափով օգտագործելով սեփական միջոցներն ու տեղական նյութերը և ապահովելով կոմերիտական կազմակերպությունների լայն մասնակցությունը նշված օբյեկտների շինարարությանը։

Անհրաժեշտ է միութենական կառավարության առաջ բարձրացնել կուլտուր-կենցաղային և սպորտային շինարարության սահմանափակումը վերացնելու հարցը և ամեն կերպ խրախուսել ձեռնարկությունների, կազմակերպությունների ու սովխոզների նախաձեռնությունը՝ այդ շինարարությունն առավելագույն չափով ընդլայնելու ուղղությամբ։

Մեր կարծիքով, նշված շինարարությանը պետք է հատկացվի նաև արտադրական շինարարության համար նախատեսված միջոցների մի մասը, որովհետև ձեռնարկությունը շահագործման հանձնելուց հետո բանվորներն ու ծառայողները պետք է ունենան սպորտային հրապարակ, լողավազան, ակումբ, գրադարան և այլն։ Նույնը վերաբերում է նաև առողջապահական օբյեկտների շինարարությանը։ Առաջիկա հնգամյակում դրա համար պետք է միջոցներ նախատեսել այնպիսի չափով, որն անհրաժեշտ է մեր ռեսպուբլիկայի բնակչության և, հատկապես, գյուղի բնակիչների նվազագույն պահանջմունքները բավարարելու համար։

Դարձյալ մի բնորոշ մոմենտ. 1961 թվականին կուլտուր-կենցաղային շինարարության մեջ կատարված կապիտալ ներդրումների ծավալը կազմում էր ռեսպուբլիկայի կապիտալ ներդրումների 6,8, 1963 թվականին՝ 6,2, իսկ 1964 թվականին՝ 6,1 տոկոսը։ Այդ էլ հենց ցույց է տալիս, թե կենսականորեն անհրաժեշտ այդ օբյեկտների շինարարությունը որքան ետ է մնում կապիտալ շինարարության ընդհանուր տեմպերից։ Ահա թե ինչու 1966—1970 թվականների հնգամյա պլանի նախագծում պետք է զգալի չափով ավելացնել նշված շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը։

***

Մեր առաջադրած հարցն ունի թե՛ ժողովրդատնտեսական և թե՛ քաղաքական մեծ նշանակություն, քանի որ խոսքը վերաբերում է ժողովրդի գաղափարական դաստիարակությանը, նրա հոգևոր և կենցաղային պահանջմունքների բավարարմանը։ Ուստի, այդ հարցը, լիովին հիմնավորված, պետք է դրվի պլանավորող օրգանների առջև և արմատապես լուծվի մոտակա տարիներին։

Մ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ
Հայկական ՍՍՌ պետպլանի նախագահի տեղակալ

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԴԵՐԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԵՎ ՆՐԱ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՄԵՋ

Յոթնամյակի անցած տարիների ընթացքում մեր քաղաքների էկոնոմիկան, նրա բուռն զարգացման շնորհիվ, դարձել է մեծ ու բազմաբնագավառ տնտեսություն։ Այն առաջնակարգ ու խոշոր նշանակություն ունի աշխատավորների նյութական-կենցաղային պայմանների բարելավման, նրանց ռեալ աշխատավարձի բարձրացման, կուլտուրայի վերելքի, առողջապահության գործում։

Հայաստանի մայրաքաղաք Երևանը մեր երկրի բարգավաճող քաղաքներից մեկն է։ Յոթնամյակի վեց տարիներին նրա բնակչությունն ավելացել է 114 հազարով՝ հասնելով 623 հազարի։ Բնակչության նման աճն արդյունք է քաղաքի էկոնոմիկայի և կուլտուրայի անշեղ վերելքի։ Բավական է ասել, որ քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը այդ նույն տարիներում կրկնապատկվել է, իսկ բանվոր-ծառայողների թիվն ավելացել է 155 տոկոսով։ Բնակչության 70 տոկոսից ավելին զբաղվում է հանրօգուտ աշխատանքով և սովորում է. մոտ մեկ հինգերորդ մասն զբաղված է անմիջապես արդյունաբերական արտադրության մեջ։ Մեր քաղաքը դարձել է Սովետական Միության ինդուստրիալ ու կուլտուրական խոշոր կենտրոններից մեկը։

Անցած վեց տարիների ընթացքում Երևանում կառուցվել և շահագործման է հանձնվել մեկ ու կես անգամ ավելի բնակելի տարածություն, քան սովետական իշխանության մնացած տարիներին։ 37 հազար ընտանիք ստացել են նոր, բարեկարգ բնակարաններ։

1963—1964 թվականներին բնակչության հազար շնչի հաշվով Երևանում 2 անգամ ավելի բնակարաններ են կառուցվել, քան Անգլիայում ու Իտալիայում. միջին հաշվով ամեն օր շահագործման են հանձնվել 20 բնակարան։

Յոթնամյակի անցած վեց տարում կառուցվել են 44 դպրոց, որոնցից 5-ը՝ գիշերօթիկ։ Կառուցվել են կուլտուր-կենցաղային և կոմունալ շատ օբյեկտներ, զգալիորեն լայնացել է ջրմուղ-կոյուղու, առևտրի, հասարակական սննդի ու բուժհիմնարկների ցանցը։ Ջրմուղ գծերի երկարությունը 1958 թվականի 310 կիլոմետրից 1964 թվականին հասել է 480-ի։ Համապատասխանորեն կոյուղու գծերը 1964 թվականի 83-ից հասել են 215 կմ-ի։ Տրամվայի վագոնների թիվը 1959 թվականի 158-ից հասել է 240-ի, տրոլեյբուսներինը՝ 78-ից 149-ի, ավտոբուսներինը՝ 153-ից 400-ի։



Շատ բազմազան, բարդ ու պատասխանատու է տեղական սովետների աշխատանքը քաղաքի տնտեսության զարգացման, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման, ինչպես և նրա աշխատանքի ու կյանքի համար նորմալ պայմանների ստեղծման բնագավառում։

Մեր պարտիան բազմիցս ընդգծել է տեղական սովետների տնտեսական կազմակերպչական խոշոր դերը էկոնոմիկայի հարցերի լուծման մեջ։ Որպես իշխանության տեղական օրգաններ սովետները բազում թելերով կապված են աշխատավորական լայն մասսաների, բնակչության բոլոր խավերի հետ։

Դեռևս 1931 թվականին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման մեջ նշված էր, որ քաղաքային տնտեսությունը պետք է ի սպաս դրվի աշխատավորներին ծառայելու, իսկ քաղաքային սովետները պետք է ընտրողների հարյուրավոր ու հազարավոր դիտողությունների ու առաջարկությունների հիման վրա դառնան քաղաքային տնտեսության հարցերի գործնական լուծման կենտրոնները։ Ինչպես հայտնի է, ՍՄԿՊ ծրագրում նշված է, որ կոմունիստական շինարարության ընթացքում գնալով մեծանում է սովետների դերը. նրանք պետք է վերջնականապես լուծեն տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը։

Սակայն վերջին տարիներս տնտեսության ղեկավարման հաճախակի վերակառուցումները որոշ չափով նեղացրին տեղական սովետների դերը, սահմանափակեցին նրանց գործունեության, սպասարկման ոլորտը, զրկելով նրանց նյութական արտադրության ոլորտի նկատմամբ պատասխանատվությունից, դրանով իսկ կաշկանդելով տեղական սովետների ակտիվությունն ու ինքնագործունեությունն այդ բնագավառում։

Արդյունաբերության ղեկավարության և հետագայում կենցաղ-սպասարկման վերակառուցման կապակցությամբ վերացվեց քաղաքային ու շրջանային սովետների պատասխանատվությունը տեղական արդյունաբերության զարգացման հանդեպ։ Արդյունաբերական ձեռնարկությունները տրվեցին ժողտնտխորհի համապատասխան վարչություններին, բաղնիք-լվացքատների տնտեսությունը, վարսավիրների միավորումը, կենցաղային սպասարկման նշանակություն ունեցող մնացած բոլոր ձեռնարկություններն ու կազմակերպությունները հանձնվեցին մինիստրների սովետին առընթեր կենցաղ-սպասարկման գլխավոր վարչությանը, իսկ էլեկտրատնտեսությունն անցավ Մինիստրների սովետին առընթեր էլեկտրիֆիկացիայի գլխավոր վարչությանը։

Տարիներ առաջ կենցաղ-սպասարկման օբյեկտները և արդյունաբերական որոշ ձեռնարկություններ ղեկավարում էին տեղական սովետները։ Քաղաքային և շրջանային սովետներն, ավելի մոտ լինելով բնակչությանը, տեղյակ էին նրան հուզող հարցերին, հետևաբար միջոցներ էին ձեռնարկում նրանց կարիքները հոգալու համար։ Այդ ձեռնարկություններում նկատված թերությունների մասին բնակիչները հայտնում էին համապատասխան սովետների գործկոմներին, խնդրում վերացնել դրանք։ Տեղական սովետները հասարակության հսկողության միջոցով բարելավում էին բնակչության սպասարկման գործը։ Այժմ էլ բնակիչները տրադիցիոն կարգով դիմում են տեղական սովետներին՝ կենցաղ-սպասարկման կարիքները հոգալու համար։

Եթե մինչև վերակառուցումները շրջանային և քաղաքային սովետներն էին քաղաքային տնտեսության այդ բնագավառների տերն ու տնօրենը և իրենց ուժերով ու միջոցներով բնակչության աճող պահանջներին համապատասխան

կարգավորում էին իրենց տնտեսությունը, ապա այժմ նրանք չեն կարող այդ անել և հանդես են գալիս խնդրողի դերում։

Կարելի է բերել հետևյալ օրինակը։ Երբ անհրաժեշտ էր անցնել հացի փոխադրման պրոգրեսիվ ձևին, որի միջոցով պահպանվում է հացի որակը և ապահովվում բնակչության անխափան սպասարկումը, Երևանի քաղսովետի գործկոմն իր շինվերանորոգման կազմակերպությունների միջոցով պատրաստեց հացի արկղներ, հացի գործարաններում ստեղծելով բարձման, խանութներում՝ դատարկման հարմարանքներ։ Այդ մեթոդն անմիջապես կիրառվեց, որովհետև թե՛ հացի գործարանները, թե՛ տրանսպորտը և թե՛ խանութները գտնվում էին նրա ենթակայության տակ։ Իսկ այժմ նման միջոցառում կենսագործելու համար քաղսովետի առևտրի վարչությունը պետք է խնդրի ժողտնտխորհին և ռեսպուբլիկայի ավտոտրանսպորտի մինիստրությանը։ Նման վերակառուցումը նաև տնտեսապես շահավետ չէ։ Այսպես, քաղսովետն անցյալում սեփական տրանսպորտով էր փոխադրում հացը և մեկ տոննայի փոխադրական ծախքերը հասնում էին 2 ռուբ. 20 կոպեկի, իսկ այժմ, երբ տրանսպորտը պատկանում է ավտոտրանսպորտի մինիստրությանը՝ այն նստում է 3 ռուբլի։

Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմն ուներ տեղական արդյունաբերության 37 ձեռնարկություն, տարեկան մոտ 38 միլիոն ռուբլու համախառն արտադրանքով, որը նպաստում էր քաղաքի բնակչության պահանջների ու քաղաքային տնտեսության կարիքների բավարարմանը։ Տեղական արդյունաբերության սեփական միջոցների հաշվին ամեն տարի մեծանում էին նրա արտադրական հրապարակները, ավելանում էր արտադրանքը։ 1957—1960 թվականներին Երևանում կառուցվել են հացի 5-րդ գործարանը (Զեյթունում), լավաշի 5 արտադրամասեր (քաղաքի տարբեր վայրերում), նոր արտադրամասեր՝ հացի 3-րդ, 4-րդ գործարաններում և հացաբուլկեղենի կոմբինատում։ Ընդլայնվել են անհատական պատվերների կարի և կոշկի ֆաբրիկաները, բացվել լայն սպառման ապրանքների ֆաբրիկայի, կենցաղ-սպասարկման կոմբինատի, կոշկի վերանորոգման գործարանի նոր ցեխեր։ Քաղաքային տնտեսության և քաղաքի բարեկարգման կարիքները հոգալու համար կառուցվեց երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարան, խոշորացվեց մեխանիկական գործարանը, տեղական արդյունաբերության ձեռնարկությունների բանվոր-ծառայողների համար կառուցվեցին երեք բնակելի շենքեր և այլն։

Տեղական արդյունաբերության օգուտներից ամեն տարի 1,5—2 միլիոն ռուբլի մասհանվում էր քաղաքի բարեկարգման և կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման համար։ 3—4 տարվա ընթացքում կառուցվեցին 2 բաղնիք՝ մեքենայական լվացքատներով և այլ օբյեկտներ։

Հիմնվել է գազի տնտեսությունը. բնակարանային, քաղաքացիական, կուլտուր-կենցաղային ողջ շինարարությունը (պետական կապիտալ ներդրումների հաշվին) կենտրոնացվել է գործկոմի կապիտալ շինարարության վարչությունում. գործկոմը հանդես է գալիս որպես միասնական պատվիրատու, գրեթե ամբողջ պետական բնակարանային ֆոնդը՝ ավելի քան 1,5 միլիոն քմ, հանձնված է գործկոմի բնակարանային տնտեսության վարչությանը. կոոպերատիվ բնակարանային շինարարության պատվիրատուի ֆունկցիաները նույնպես կատարում է գործկոմը։ Այս ամենի շնորհիվ 1958 թվականի համեմատ ավելի քան 3 անգամ մեծացել է կապիտալ ներդրումների ծավալը. այն տարե-



կան անցնում է 50 միլիոն ռուբլուց։ Գրեթե այդքան էլ ավելացել են բնակարանային ֆոնդը և նրա վերանորոգման վրա կատարվող ծախսերը։

Զգալիորեն ավելացել է էլեկտրատրանսպորտը։ Խոշոր տնտեսություն է դարձել ջրմուղ կոյուղին. այն ունի 6 ջրատար, որի շնորհիվ կրկնապատկվել է քաղաքի խմելու ջրի բալանսը։ Անհամեմատ մեծացել են նյութական ֆոնդերը, իսկ բազմաճյուղ տնտեսության նյութական մատակարարման պլանավորումը առաջնակարգ նշանակություն է ստացել։

Իսկ ի՞նչ է արվել վերակառուցումից հետո։ Չի կառուցվել հացի և լավաշի արտադրության ո՛չ մի ձեռնարկություն, ո՛չ մի բաղնիք կամ լվացքատուն և տեղական նշանակություն ունեցող այլ ձեռնարկություն։ Երքաղսովետի գործկոմը զրկվեց բարեկարգումների լրացուցիչ աղբյուրներից։

Նման վիճակում է նաև քաղաքի էլեկտրատնտեսությունը։ Պլանավորումը, բնակարանային, քաղաքացիական շինարարության պատվիրատուի ֆունկցիան կատարում է քաղսովետի գործկոմը։ Նախագծման էտապում և շինարարության ընթացքում ծագում են բազմաթիվ հարցեր, որոնք վերաբերում են կառուցվող օբյեկտների էլեկտրականացմանը։ Անհրաժեշտ է այդ հարցերը օպերատիվ կերպով, անմիջականորեն լուծել էլեկտրատրեստի հետ, բայց գերատեսչական սահմանները հնարավորություն չեն տալիս այդ անելու, որովհետև էլեկտրատրեստը ենթակա է այլ գերատեսչության։

Քաղաքային տնտեսությունը մի միասնական ու ամբողջական տնտեսություն է, չի կարելի այն մասնատել։ Քաղաքի զարգացման շահերից ելնելով, քաղաքային տնտեսության բոլոր ճյուղերի նորմալ աշխատանքի, բնակչության կանոնավոր սպասարկման, ինչպես և լայն հասարակայնությանը այդ բազմերանգ աշխատանքներում մասսայականորեն ընդգրկելու համար անհրաժեշտ է ակտիվացնել տեղական սովետները, բարձրացնել նրանց դերը ժողովրդական տնտեսության պլանավորման ու ղեկավարման գործում։ Դրա համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է քաղաքային տնտեսության բոլոր ճյուղերը, առանց բացառության՝ տեղական արդյունաբերությունը, կենցաղ-սպասարկումը, էլեկտրատնտեսությունը և տրանսպորտը ենթարկել տեղական սովետներին։

Մեր կարծիքով, այդ պետք է անել այժմ, երբ մշակվում է ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի նախագիծը, որպեսզի հաշվի առնվի մայրաքաղաքի տնտեսության բոլոր բնագավառների հարմոնիկ զարգացումը։ Հարկավոր է բարձրացնել տեղական սովետների տնտեսական-կազմակերպական դերը ժողովրդական տնտեսության զարգացման ու ղեկավարման գործում, որպեսզի նրանք ավելի ինքնուրույն լուծեն քաղաքի էկոնոմիկայի հարցերը։

Տեղական սովետները պետք է իրավունք ունենան ակտիվ ներգործելու քաղաքի տերիտորիայում գտնվող ժողովրդական սպառման ապրանքների, կուլտուր-կենցաղային, տնային կահկարասու և իրերի արտադրության արդյունաբերական այն ձեռնարկությունների պլանավորման ու զարգացման վրա, որոնց արտադրանքը հիմնականում սպառվում է քաղաքի բնակչության կողմից։ Արտադրության այդ ճյուղերի զարգացման պլանների նախագծերը պետք է նախօրոք քննության առնվեն քաղսովետի մշտական հանձնաժողովի կամ գործկոմի, անգամ սեսիայի նիստերում։ Գործկոմը պետք է զբաղվի նաև

այն ձեռնարկությունների հարցով, որոնք չեն կատարում պետական բյուջեով նախատեսված ֆինանսական մասհանումների պլանը։

Երևանի քաղաքային, շրջանային սովետների 1431 դեպուտատների կեսից ավելին արտադրական ձեռնարկությունների առաջավոր բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ են։ Կարելի է այնպես անել, որ նրանք ակտիվ ներգրավվեն քաղաքային տնտեսության, բնակչության կենցաղ-սպասարկման օբյեկտների և արդյունաբերական այլ ձեռնարկությունների արտադրական պլանային հարցերի լուծման գործում։ Իրենց փորձով, հմտությամբ ու գիտելիքներով նրանք մեծ օգնություն կարող են ցույց տալ մեր գործարանների և ֆաբրիկաների առաջադրանքների կատարմանը։

Ինչպես տեսնում ենք, փոխվել են գործկոմի և նրա քաղպլանի պլանային-տնտեսավարման աշխատանքի ծավալն ու բնույթը։ Եթե առաջ քաղաքային տնտեսության, կոմունալ-բնակարանային, դպրոցական, կուլտուր-կենցաղային շինարարության հեռանկարային պլանավորման հարցերը չէին զբաղեցնում գործկոմին, ապա այժմ գործկոմի պլանային հանձնաժողովի հիմնական աշխատանքի բաղկացուցիչ մասն են դրանք։ Պետք է վճռականորեն բարձրացնել տեղական սովետների և նրանց պլանավորող օրգանների դերը քաղաքի էկոնոմիկայի և պլանավորման մեջ։

Ինչպես նշվել է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1931 թվականի հունիսյան պլենումի որոշման մեջ, քաղաքային տնտեսության աճը, այդ ասպարեզում դրված մեծ խնդիրները պահանջում են ամրապնդել քաղաքային սովետները, դրանք դարձնել քաղաքային տնտեսության բոլոր բնագավառների ամենապատասխանատու տնօրենը։ Անհրաժեշտ է անշեղորեն կենսագործել ՍՄԿՊ ծրագրի պահանջը, ինչպես և Կենտկոմի հոկտեմբերյան ու նոյեմբերյան պլենումների որոշումները՝ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների իրավունքների ընդլայնման մասին։

Գ. ՓԱՆՈՍՅԱՆ
Երևանի քաղաքային սովետի գործկոմի
պլանային հանձնաժողովի նախագահ



# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Հանրային արտադրության մեջ, առավել ևս երբ խոսքը վերաբերում է գյուղատնտեսությանը, արտադրողների, արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցը ավելի բարդ է, քան այն թվում է առաջին հայացքից։ Ավելին, այն ոչ թե սոսկ հարց է, այլ հարցերի ու խնդիրների մի բավականին բարդ հանգույց, որի պրակտիկ լուծումը պահանջում է կենսագործել այնպիսի արմատական միջոցառումներ, որոնք անձնական շահագրգռվածությունը կդարձնեն ոչ թե ճառերի ու զեկուցումների նյութ, ինչպես էր, այլ արտադրության բնորոշ կողմը, նրա իմմանենտ հատկանիշը։ Այլ կերպ ասած, որպեսզի նյութական շահագրգռվածությունը դրսևորվի ոչ թե որպես արտադրությունը պայմանավորող հանգամանք, այլ լինի վերջինիս բնական ելակետը և նրա անվերապահ արգասիքը, որպեսզի արտադրության պրոցեսը միաժամանակ լինի նյութական շահագրգռվածության վերարտադրության պրոցես։ Գյուղատնտեսության և, հատկապես, կոլտնտեսային արտադրության մեջ նյութական շահագրգռվածության հարցը շատերի ուշադրությունն է բևեռել իր վրա, այդ առթիվ շատ է գրվում, խոսվում, սակայն տվյալ դեպքում կարևորը ոչ թե այն պրոպագանդելն է, այլ նրա ճիշտ լուծման ուղիների որոնումը, նյութական բարձր շահագրգռվածության սիստեմատիկ վերարտադրության համար համապատասխան պայմանների ստեղծումը։ Մենք համոզված ենք, որ գյուղատնտեսության մեջ նյութական շահագրգռվածության բարձրացման խնդրի հաջող լուծմանը զգալիորեն կնպաստեն ստորև բերվող առաջարկությունները, եթե դրանք կենսագործվեն կյանքում։

Հասարակական արտադրության մեջ անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը հաջող կենսագործելու համար պետք է համապատասխանորեն կազմակերպել արտադրությունը և կանոնավորել բաշխման հարաբերությունները։ Այս երկու կողմերից որևէ մեկի անտեսումը խոչընդոտում է նշված սկզբունքի կիրառումը, իսկ երբեմն այն դարձնում անհնարին։ Այսպիսով, երբ խոսքը վերաբերում է գյուղատնտեսությանը և, առաջին հերթին՝ կոլտնտեսային արտադրությանը, ապա անհրաժեշտ է պարզել, թե այն կազմակերպելու որ ձևերն են առավելապես նպաստում կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Ի դեպ, այս հարցում տարատեսակության պակաս չի զգացվում. ոմանք գտնում են, որ պետք է հողը

ամրացնել առանձին կոլտնտեսականների կամ կոլտնտեսային ընտանիքների, նրանց տալ պլան ու դրան համապատասխան արտադրանք պահանջել [1], մյուսները խորհուրդ են տալիս ստեղծել խոշոր դաշտավարական-տրակտորային, կամ կոմպլեքսային մեքենայացված բրիգադներ և դրանց միջոցով բարձրացնել արտադրության մակարդակը [2], իսկ ոմանք էլ հակված են կարծելու, թե գյուղատնտեսության բնագավառում հազիվ թե հնարավոր է կոլտնտեսային արտադրության մեջ անձնական նյութական շահագրգռվածությունը բարձրացնել ու ենթադրում են, որ հարցը վերջնականապես լուծելու համար լավ կլիներ ստեղծել առանձին գյուղացիական տնտեսություններ՝ խարսխված հողի համապետական սեփականության վրա: Հիշատակված կարծիքների հետ դժվար է համաձայնել, որովհետև դրանցից և ոչ մեկը չի արտահայտում սոցիալիստական գյուղատնտեսության ոչ միայն զարգացման հեռանկարները, այլև նրա ներկա վիճակի որոշակի բարեփոխման ուղղությունը:

Առաջին տեսակետը, այսինքն՝ հողերի ամրացումը առանձին կոլտնտեսականներին կամ կոլտնտեսային ընտանիքներին, մեզ թվում է անընդունելի՝ հետևյալ նկատառումներով. Նախ՝ հանրային արտադրության նման կազմակերպումը բնավ չի նպաստի նրա ինտենսիվացմանը, մեքենայացմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրմանը և աշխատանքի մասնագիտացմանը, կարճ ասած, դա կլինի նահանջ դեպի գյուղատնտեսական աշխատանքների կազմակերպման նահապետական ձևը: Երկրորդ, արտադրության նման կազմակերպումը կվերացնի հողի կոլեկտիվ մշակման ու հանրային աշխատանքի առավելությունները, կթուլացնի կոլտնտեսականների պատասխանատվությունը կոլտնտեսային արտադրության ու արտադրանքի նկատմամբ, ինչպես և նրանց աշխատանքային կարգապահությունը: Կոլեկտիվ աշխատանքի պայմաններում ամրապնդված կոլեկտիվիզմի զգացումը տեղի կտա անձնական հարստացման ու անձնական տնտեսության ուռճացման ձգտումին, իսկ կոլտնտեսությունը համայնական սեփականության վրա խարսխված արտադրական կազմակերպությունից կդառնա կոլտնտեսականներին ամրացված հողերի դիմաց «վարձակալական հարկերի» հավաքման դրասենյակ: Եվ երրորդ՝ կոլտնտեսային արտադրության կազմակերպման նման ձև կիրառվել է մեր ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում, սկսած 30-ական թվականներից, և դրա նախաձեռնողները գործերը ձախողելուց բացի ոչնչի չեն հասել:

Մյուս տեսակետը, այսինքն՝ խոշոր տրակտորա-դաշտային կոմպլեքսային մեքենայացված բրիգադների ստեղծումը անհարիր է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության արտադրապայմաններին, ուստի և չի դիմանում քննադատության: Արտադրության կազմակերպման այս ձևի արատավորությունն այն է, որ այն ենթադրում է, նախ՝ համատարած մեքենահարմար հողատարածություններ, որտեղ դաշտավարական բոլոր աշխատանքները կատարվեն բացառապես մեքենաների միջոցով: Հանրահայտ է, որ մեր ռեսպուբլիկայի հողատարածություններն այդպիսին չեն: Երկրորդ, կոմպլեքսային բրիգադները պիտանի են հիմնականում մասնագիտացված տնտեսություններում, մինչդեռ

1 Տե՛ս «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» № 8, 1962, էջ 12 և Հ. Հ. Հովակիմյան, Նյութական շահագրգռվածության սկզբունքը կոլտնտեսային արտադրության մեջ, Երևան, 1959, էջ 93:

2 Տե՛ս Յ. Ասատրյան, Կոլտնտեսություններում մեքենա-տրակտորային պարկի ռացիոնալ օգտագործման ուղիները, Երևան, 1962, էջ 28:



մեզ մոտ այդպիսի տնտեսություններ համարյա թե չկան: Նույնիսկ ամենալավագույն հողատարածություններ ունեցող տնտեսությունների՝ Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրությունը բազմաճյուղ է և հնարավոր չէ այն ժամանակակից էտապում ամբողջապես մեքենայացնել: Երրորդ, կոմպլեքսային բրիգադների կազմակերպումը ենթադրում է մանր բրիգադների խոշորացում, իսկ վերջիններս անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման համար նվազ պիտանի են: Եվ, չորրորդ, մեքենայացված կոմպլեքսային բրիգադները մերժվել են կյանքի, պրակտիկայի կողմից: Հայտնի է, որ 1958—59 թվականներին պարտիական և տնտեսական որոշ ղեկավարներ, առանց նկատի ունենալու տեղական առանձնահատկությունները, հանձնարարեցին ռեսպուբլիկայի խոշոր տնտեսություններում, ինչպես, օրինակ, Իջևանի շրջանի Աչաջրի, Գորիսի շրջանի Խնձորեսկի և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսություններում կոմպլեքսային մեքենայացված բրիգադներ ստեղծել: Իհարկե, դրանք ստեղծվեցին, որից և գործը զգալիորեն տուժեց ու որոշ ժամանակ անց, ինչպես նշված, այնպես էլ մյուս տնտեսությունները հրաժարվեցին կոմպլեքսային բրիգադներից:

Ինչ վերաբերում է առանձին գյուղացիական արտադրական տնտեսություններ ստեղծելու տեսակետին, ապա այն ոչ մի քննադատության չի դիմանում: Տուրք տալ գյուղատնտեսական արտադրությունն այս ձևով վերակառուցելու և այդ հիման վրա աշխատանքները կազմակերպելու տեսակետին, նշանակում է անտեսել այն հսկայական պոտենցիալ հնարավորությունները, որ ունի տնտեսավարման սոցիալիստական սիստեմը, չտեսնել զարգացման այն հեռանկարները, որոնք բխում են հասարակական արտադրության էությունից: Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն արագ զարգացման անսպառ հնարավորություններ: Սակայն կա մի հանգամանք, առանց որի հազիվ թե հնարավոր լինի հանրային արտադրության առավելությունների դրսևորումը. դա մարդկանց անձնական նյութական շահագրգռվածությունն է, որը և հանդիսանում է արտադրության կազմակերպման հարցերի հարցը, որովհետև, վերջին հաշվով, ամենադժվարը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, մարդկանց շահագրգռելն է:

Հետևապես, ներկա պայմաններում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման այն ձևերն են առավել նպատակահարմար ու արգասավոր, որոնք նպաստում են հանրային արտադրության մեջ արտադրողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Մեր կարծիքով զարգացման ներկա էտապում հենց այդպիսին է կոլտնտեսություններում ու սովխոզներում փոքր արտադրական բրիգադների ստեղծումը և դրանցում ըստ արտադրանքի վարձատրության կազմակերպումը:

Արտադրական փոքր բրիգադների (մինչև 25 հոգուց բաղկացած) առավելությունը խոշորների նկատմամբ այն է, որ այստեղ համեմատաբար պարզորոշ է հանդես գալիս բրիգադայի յուրաքանչյուր անդամի աշխատանքի արդյունքի կախվածությունը քանակական ու որակական ցուցանիշներից: Այսպիսով, բրիգադների ներսում տնտհաշվարկային սկզբունքով աշխատանքի վարձատրության կիրառումը զգալիորեն նպաստում է բրիգադայի անդամների նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Բանն այն է, որ կոլտնտեսային արտադրության մեջ յուրաքանչյուր աշխատողի վարձատրության չափը պայմանավորվում է ո՛չ միայն սեփական աշխատանքի ցուցանիշներով, այլև ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքով: Օրինակ, կոլտնտեսականը լա-

վագույն դեպքում կարող է շատ աշխատել և շատ աշխօր վաստակել, բայց փոխել իր աշխօրի դիմաց տրվող եկամտի չափը, չի կարող, որովհետև վերջինս պայմանավորվում է տնտեսության արտադրական գործունեության ընդհանրական արդյունքով։ Այսպիսով, որքան մեծ է կոլեկտիվը, որի շրջանակներում կատարվում է հանրային արդյունքից անհատական աշխատանքի վարձատրությունը, այնքան շատ են տատանումներն այդ աշխատանքի և նրա դիմաց տրվելիք վարձատրության միջև, այնքան դժվար է այդ երկուսի համապատասխանեցումը։ Մինչդեռ փոքր բրիգադներում նման համապատասխանությունն ստեղծվում է ինքնին, շնորհիվ այն բանի, որ այստեղ աշխատանքի ընդհանրական արդյունքը գոյանում է նեղ շրջանակներում ու բաժանվում համեմատաբար քիչ աշխատողների միջև։

Եթե գյուղատնտեսության աշխատողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման գործում առաջնակարգ նշանակություն ունի արտադրության ճիշտ կազմակերպումը, ապա պակաս կարևոր չեն պետության և առանձին տնտեսությունների, ինչպես և վերջինների ու անմիջական արտադրողների նյութական փոխհարաբերությունների, մթերքների իրացման, աշխատանքի վարձատրության կանոնավորումն ու գիտական հիմնավորումը։ Քանի որ այս բոլոր հարցերը սերտորեն կապված են միմյանց հետ և անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման բնագավառում վճռական նշանակություն ունեն միայն իրենց ընդհանրության մեջ, ուստի անդրադառնանք այդ ընդհանրությանը՝ առանց այն տրոհելու։

Անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը, ինչպես նշվեց, բազմապիսի կարևոր հանգամանքների հետ մեկտեղ ենթադրում է նաև աշխատանքի ճիշտ վարձատրություն, այսինքն՝ ըստ աշխատանքի քանակական և որակական ցուցանիշների բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքի հետևողական ու անսխալ կիրառում։ Սակայն այս խնդրի լուծումը գյուղատնտեսական արտադրության մեջ կապված է մի շարք հարակից հարցերի հետ, որոնք պարզաբանման կարիք են զգում։

Սկսենք կոլտնտեսային արտադրության արդյունքի իրացումից։ Այս հանգամանքի կարևորությունը բխում է նրանից, որ ապրանքա-դրամային հարաբերությունների գոյության պայմաններում եկամտագոյացման մեջ նշանակալից դեր ունի և արդյունքի իրացումը։ Ինչպե՞ս է կատարվում կոլտնտեսային արտադրանքի իրացումը. համապատասխանո՞ւմ է այն արտադրության բնույթին։ Մենք հակված ենք կարծելու, որ այս բնագավառում գոյություն ունեն լուրջ թերություններ։ Ամենամեծ թերությունը, մեր կարծիքով, դա արտադրության ու նրա արդյունքի իրացման արհեստական անջրպետումն է, այն, որ կոլտնտեսությունները տնօրինելով արտադրամիջոցներն ու լինելով արտադրության կրողներ, միաժամանակ ամբողջապես չեն տնօրինում նրա արդյունքը, մինչդեռ նրանք պետք է հանդիսանան իրենց արտադրանքի լիիրավ տնօրեններ։ Կ. Մարքսը նշել է, որ «բաշխումն արդյունքների բաշխում լինելուց առաջ՝ արտադրության գործիքների բաշխում է» [1], այսինքն՝ արդյունքը տնօրինելուն նախորդում է արտադրամիջոցների տնօրինումը։ Հայտնի է, որ կոլտնտեսային սեփականությունն, իր էությամբ լինելով սոցիալիստական, համաժողովրդական չէ, այլ հանդիսանում է տվյալ կոլեկտիվի սեփականությունը։ Այս երև-

[1] Կ. Մարքս, Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, Երևան, 1948, էջ 254։



վույթը ավելի նշանակալից է դարձել ՄՏԿ-ների վերացումից և գյուղատնտեսական մեքենաները կոլտնտեսություններին վաճառելուց հետո, երբ արտադրության հիմնական միջոցները (բացառությամբ հողի) պատկանում են հանրային տնտեսությանը, որը և այս հիման վրա պետք է տնօրինի նաև արտադրության արդյունքը, այսինքն՝ կազմակերպի դրա իրացումը՝ ելնելով ընդլայնված վերարտադրության և ամբողջ կոլեկտիվի նյութական շահերից և, որ ամենակարևորն է, վաճառի իր մթերքները, ելնելով դրանց ինքնարժեքից և իր զուտ եկամտի ստացման անհրաժեշտությունից։

Իսկ ի՞նչ է տեղի ունենում իրականում։ Կոլտնտեսություններն արտադրում են գյուղատնտեսական մթերքներ, որոնց գները սահմանվում են պետության կողմից, այսինքն՝ գնորդն ինքն է որոշում գնվելիք ապրանքի գինը։ Այսպիսով, տեղի է ունենում արտադրանքի որոշակի օտարում, որը թուլացնում է տնտեսությունների նյութական շահագրգռվածությունը։ Կարող են հարցնել, իսկ ո՞վ կարող է որոշել գյուղատնտեսական մթերքների գները, եթե ոչ պետությունը։ Այս հարցին կարելի է տալ երկու պատասխան, նախ՝ գները պետք է որոշի այն կազմակերպությունը, որն արտադրում է տվյալ ապրանքը և, երկրորդ, եթե պետությունն է որոշում այդ գները, ապա դրանք պետք է որոշվեն ճիշտ, տնտեսապես հիմնավորված և ելնեն ոչ թե միայն գնորդի, այլև արտադրության ու արտադրողի շահերից։ Անհրաժեշտ է նշել, որ առավել կարևորը տվյալ դեպքում ոչ թե այն է, թե ում կողմից են որոշվում գները, այլ այն, որ նրանք ճիշտ որոշվեն։ Ցավոք, պետք է նշել, որ գյուղատնտեսական մթերքների գնման գների որոշման գոյություն ունեցող կարգը լիակատար համարել չի կարելի։ Համառոտակի նշենք գնակազմման հիշյալ կարգի հիմնական թերությունը։

Ինչպես հայտնի է, ներկայումս գյուղատնտեսական մթերքների պետական գնման գները որոշվում են ըստ երկրի առանձին գոտիների, նկատի ունենալով դրանց բնակլիմայական պայմաններն ու արտադրական առանձնահատկությունները։ Իհարկե, գնորոշման այս ձևը որոշակի առավելություն ունի նախկինում գործող միասնական գների սահմանման համեմատությամբ, սակայն այս ձևը նույնպես զերծ չէ լուրջ թերություններից։ Այսպես, սահմանել գյուղատնտեսական մթերքների պետական գնման մեկ միասնական գին թեկուզ և մեկ գոտու տնտեսությունների համար, նշանակում է, Մարքսի արտահայտությամբ «խախտել ապրանքափոխանակության օրենքները» [1], այսինքն՝ անտեսել այդ տնտեսությունների արտադրապայմանների ու ապրանքային արտադրանքի ինքնարժեքի տարբերությունը։ Հնարավո՞ր է արդյոք, որ միևնույն գոտու բոլոր տնտեսություններն ունենան նույնանման բնակլիմայական պայմաններ։ Պարզ է՝ ո՛չ։ Նամանավանդ, երբ խոսքը վերաբերում է մի այնպիսի ռեսպուբլիկայի, ինչպիսին մերն է, որի ամենաբնորոշ գծերից մեկը նրա տարբեր շրջանների բնակլիմայական պայմանների տարատեսակությունն է։

Մի պահ վերանանք իրականությունից և ենթադրենք, որ մեր բոլոր տնտեսությունները գտնվում են միանման բնակլիմայական պայմաններում. մի՞թե դա հիմք կտա մեզ ենթադրելու, որ նման դեպքում նշված տնտեսությունները կունենան նույնանման արտադրապայմաններ։ Իհարկե, ո՛չ։ Որովհետև բնակլիմայական պայմանների նույնությունը դեռևս արտադրապայմանների նույնություն չէ, քանի որ առաջինն ունի աշխարհագրական բովանդակու-

[1] Տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 23, էջ 169 (ռուս.)։

թյուն, իսկ երկրորդը՝ սոցիալ-տնտեսական։ Մեր միտքը հաստատելու համար բերենք միայն երկու օրինակ։ Գորիսի շրջանի Խնձորեսկ և Ջորագյուղ գյուղերի կոլտնտեսությունները հարևան տնտեսություններ են և գտնվում են բացարձակ միանման բնակլիմայական պայմաններում։ Սակայն նրանց արտադրական պայմանները խիստ տարբեր են շնորհիվ այն բանի, որ առաջին տնտեսությունը երկրորդից մոտ տասն անգամ մեծ է։ Եթե առաջինը տարիների ընթացքում հանդիսանում էր առաջավոր, ապա երկրորդը, իր ստեղծման պահից մինչև վերջ, մնացել է տնտեսապես թույլ ու ետ մնացող։ Կամ, Շահումյանի շրջանի Շորբուլաղ և Տոլք գյուղերի տնտեսություններն ունեն միևնույն բնակլիմայական պայմանները, երկուսն էլ մայրաքաղաքից հեռու են հավասարապես, բայց նրանց արտադրապայմանները տարբեր են, որովհետև առաջինի բնակիչները վաղուց ի վեր զբաղվում են օժանդակ արհեստով, իսկ երկրորդի բնակիչները՝ ոչ։ Այսպիսով, եթե նույնիսկ մեր բոլոր տնտեսությունները գտնվեին նույնանման բնակլիմայական պայմաններում, դա չէր կարող հիմք ծառայել նույնացնելու նրանց արտադրապայմանները։ Իսկ այս հանգամանքը պայմանավորում է տարբեր տնտեսությունների արտադրանքի ինքնարժեքի անխուսափելի տարբերությունը, որը հաշվի չառնել գների սահմանման ժամանակ, նշանակում է անտեսել հանրային արտադրության կարևոր օրինաչափություններից մեկը՝ ապրանքների գների ու նրանց ինքնարժեքի օբյեկտիվ փոխպայմանավորվածությունը։ Մարքսը բազմիցս նշել է, որ գինը ապրանքի արժեքի դրամական արտահայտությունն է, որ այն ապրանքում նյութականացված հասարակական աշխատանքի քանակի անվանումն է, որ գինը պայմանավորվում է ապրանքի արժեքով և միշտ դառնում է նրա շուրջը[1]։ Հանրահայտ է, որ արժեքի հիմքում ընկած է ապրանքի ինքնարժեքը, այսինքն՝ տվյալ ապրանքի արտադրական ծախքերը, այդ թվում և աշխատավարձը։ Հետևապես, գյուղատնտեսական մթերքների գնման գների սահմանումը ենթադրում է դրանց ինքնարժեքից ելնելու անհրաժեշտություն։

Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի որոշումը մեր տնտեսավարության ամենացավոտ կողմերից մեկն է։ Կարելի է ասել, որ կոլտնտեսություններում արտադրանքի ինքնարժեքի որոշումը համարյա ձևական բնույթ ունի։ Այժմ կոլտնտեսություններում հիմնականում կիրառվում է, այսպես կոչված, փաստացի ինքնարժեքի հաշվառման մեթոդը, ըստ որի արտադրական ծախքերի մեջ մտցվում է ոչ թե ծախսված աշխատանքի արժեքի հասարակականորեն չափակցելի արտահայտությունը, այլ այդ աշխատանքի դիմաց տրված վարձատրությունը։ Վերը նշված մեթոդով կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի հաշվարկումը ոչ միայն իր էությամբ սխալ է, այլև հաճախ հանգեցնում է անհեթեթությունների։ Այսպես, նման հաշվառման դեպքում ետ մնացող, տնտեսապես թույլ տնտեսություններում մթերքների ինքնարժեքն ավելի ցածր է ստացվում, քան արտադրական բարձր մակարդակ ունեցող, առաջավոր տնտեսություններում։ Եվ դա տեղի է ունենում այն պարզ պատճառով, որ կոլտնտեսություններում աշխօրերին հասանելիք եկամուտները չեն արտահայտում կոլտնտեսականների ներդրած աշխատանքի իսկական ծախսերը։ Օրինակ, մի տնտեսության մեջ կոլտնտեսականի օրվա աշխատանքի դիմաց տրվում է 50 կոպեկ, մեկ ուրիշ տնտեսությունում՝ 5 ռուբլի, հետևապես, նույ-

1 Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 23, էջ 111, 113 և 117 (ռուս.)։



նանման աշխատանքը գնահատվում է մեծ տարբերությամբ ու այդ ձևով էլ օգտագործվում ինքնարժեքի որոշման ժամանակ։ Շահումյանի շրջանի երկու առաջավոր և երկու ետ մնացող կոլտնտեսությունների տվյալների ուսումնասիրությունը մեզ կրկին անգամ համոզեց, որ այն տնտեսություններում, որտեղ աշխատանքի անթույլատրելի ցածր արտադրողականության, արտադրության ոչ ճիշտ կազմակերպման և այլ պատճառով քիչ մթերքներ են արտադրվում, ուստի և կոլտնտեսականները ցածր վարձատրություն են ստանում, այնտեղ ցածր է կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքը, իսկ այն տնտեսություններում, որտեղ անհամեմատ բարձր է աշխատանքի արտադրողականությունը, և կոլտնտեսականները բարձր վարձատրություն են ստանում, այնտեղ, ընդհակառակը, մթերքների ինքնարժեքը բարձր է։

Մեկ ցենտներ մսի ինքնարժեքը ՍՄԿԿ XXII համագումարի անվան կոլտնտեսությունում կազմում է 146 ռուբլի 27 կոպեկ, իսկ Շորբուլաղի կոլտնտեսությունում՝ 55 ռուբլի 51 կոպեկ։ Ի դեպ, առաջին տնտեսությունում մեկ ցենտներ մսի արտադրության վրա ծախսվել է 9,94 մարդ-օր, իսկ երկրորդում՝ 30,6 մարդ-օր, այսինքն՝ վերջինում աշխատանքի արտադրողականությունը, առաջինի համեմատությամբ, ցածր է ավելի քան 3 անգամ։ Ստացվում է, ինչպես ասվեց, ցածր ինքնարժեք աշխատանքի ցածր արտադրողականության դեպքում և բարձր ինքնարժեք՝ բարձր արտադրողականության դեպքում։ Չնայած սա անտրամաբանական է, բայց փաստ է, որի շուրջ արժե ավելի լուրջ խորհել։ Իսկ թե ինչու է այդպես, դժվար չէ պարզել։ Առաջին տնտեսությունում մեկ աշխատանքային օրվա դրամական արտահայտությունը հավասար է 6 ռուբլի 48 կոպեկի, երկրորդում՝ 1 ռուբլի 35 կոպեկի, այդ պատճառով էլ առաջինում մեկ ցենտներ մսի դիմաց կոլտնտեսականները ստացել են 64 ռուբլի 50 կոպեկ, իսկ երկրորդում՝ 4 ռուբլի 30 կոպեկ։ Այսպիսով, տնտեսապես թույլ կոլտնտեսության անդամները 3 անգամ ավելի շատ աշխատանք են ծախսել մեկ ցենտներ մսի համար, բայց դրա դիմաց ստացել են մոտ երկու անգամ պակաս, քան առաջավոր տնտեսությունում։ Ստացվում է՝ ինչքան քիչ է վարձատրվում կոլտնտեսականը, այնքան ցածր է նրա աշխատանքի արդյունքի ինքնարժեքը և ընդհակառակը։

Չնայած կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի հաշվառման նշված մեթոդը չի բացահայտում արտադրության իրական վիճակը և հեռու է գիտական լինելուց, բայց և այնպես կան մարդիկ, որոնք պաշտպանում են այն, պնդելով, թե աշխօրի դիմաց ստացված եկամուտը օբյեկտիվորեն հանդիսանում է կոլտնտեսականի աշխատանքի միակ չափանիշը[1]։ Բայց կարելի է կոլտնտեսականին իր աշխատանքի դիմաց նույնիսկ չվարձատրել, դա չի նշանակում, թե նրա աշխատանքը նման դեպքում արժեք չունի։ Այս առիթով դժվար է չհամաձայնել Ն. Վ. Ստարովսկու հետ, որ «Ստալինի ժամանակ արմատավորված արհամարհանքը տնտեսական օրենքների նկատմամբ, մինչև այժմ էլ որոշ գիտնական-տնտեսագետներ չեն վերացրել։ Որպեսզի թաքցնեն ինքնարժեքի և կոլտնտեսային մթերքների վճարման այն ժամանակ գոյություն ունեցող հսկայական տարբերությունը, այդ գիտնականները հորինել են կոլտնտեսականների աշխատանքային ծախսերի գնահատումը աշխօրերի դիմաց տր-

1 Տե՛ս «Коммунист» № 13, 1962, էջ 56։

վելիք փաստացի վճարումներով»[1]: Սակայն գործն ավելի է բարդանում, երբ նման տեսակետի ջատագովները, այսինքն՝ փաստացի ինքնարժեքի հաշվարկման մեթոդի կողմնակիցները, փորձում են իրենց կարծիքը հիմնավորել, վկայակոչելով Կ. Մարքսին, ինչ խոսք, յուրովի մեկնաբանելով նրա դրույթները[2]: «Ապրանքի մեջ պարունակված արժեքը,— գրել է Կ. Մարքսը,— հավասար է այն բանվորական ժամանակին, որ նստում է նրա պատրաստումը, իսկ այս աշխատանքի գումարը կազմված է վճարված ու անվճար աշխատանքից: Ապրանքի արտադրության ծախքերը **կապիտալիստի համար, ընդհակառակը, կազմված են ապրանքի մեջ առարկայացված աշխատանքի լոկ այն մասից, որի համար նա վճարել է**»[3]: Հասկանալի է, որ արտադրության ծախքերի որոշման հարցում մենք չենք կարող ելնել կապիտալիստի տեսակետից, ուստի և պետք է հաշվի առնենք ոչ թե այն, ինչ ստացել է կոլտնտեսականն իր աշխատանքի դիմաց, այլ այն, ինչ համարժեք կլինի նրանց անհրաժեշտ կենսամիջոցներին:

Գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի գիտականորեն հիմնավորված հաշվարկումը հնարավորություն կստեղծի ճիշտ սահմանելու այդ մթերքների պետգնման գները, որն, ի դեպ, պետք է որոշվի ոչ թե ըստ տնտեսական գոտիների, այլ տնտեսության առանձին խմբերի համար:

Գյուղատնտեսական մթերքների գնման գները վճռական նշանակություն ունեն հանրային տնտեսությունների, ինչպես և գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում: Սակայն նշենք, որ պետգնումների գոյություն ունեցող կարգը կատարելագործելու դեպքում այն կստեղծի ավելի բարձր շահագրգռվածություն ու ավելի կխթանի արտադրության զարգացումը: Մեզ թվում է, որ պետության կողմից գնվելիք մթերքների պլանավորման գործող սիստեմը, այսինքն՝ այդ մթերքների քանակի սահմանումը, ինչպես ասվում է՝ վերևից, քիչ է նպաստում նյութական շահագրգռվածության բարձրացմանը:

Եթե տնտեսությունից պահանջում են, որ նա պետությանը վաճառի, ասենք հարյուր տոննա հացահատիկ, դա արդեն ենթադրում է, որ տվյալ տնտեսությունը պետք է այդ կուլտուրային հատկացնի համապատասխան ցանքատարածություն, կամ, եթե պահանջվում է, հարյուր տոննա միս, ապա տնտեսությունը պետք է իր հնարավորություններն օգտագործի այդ խնդրին համապատասխան: Ստացվում է, որ գյուղատնտեսության պլանավորման ասպարեզում մենք նախկինում գոյություն ունեցող ամեն ինչ վերևից սահմանելու պրակտիկայից այնքան էլ շատ չենք հեռացել, մինչդեռ, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշման մեջ, պետք է հնարավորություններ ստեղծել, որպեսզի կոլտնտեսականները լայնորեն մասնակցեն «կոլտնտեսային արտադրության հիմնական խնդիրների լուծմանը»[4]: Ավելի հիմնական արտադրական խնդիր, քան բարձր եկամտաբերություն ապահովելու նպատակով արտադրության բոլոր ճյուղերի միջև համապատասխան համամասնության ստեղծումն է, դժվար է պատկերացնել: Բայց նշված և նման հարցերում գյուղա-

---

1 Նույն տեղում, էջ 46:

2 Նույն տեղում, էջ 57:

3 Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 3, մաս 1, գիրք 3, Երևան, 1947, էջ 18 (ընդգծումը մերն է):

4 «Պրավդա», 27 մարտի, 1965 թ.:



տնտեսության բնագավառի անմիջական արտադրողները հանդես են գալիս համարյա թե միայն կատարողի դերում: Իսկ ՍՄԿԿ մարտյան պլենումը պահանջում է անվերապահորեն հրաժարվել վարչարարության, հրամաններ տալու, կոլտնտեսության ու սովխոզների ղեկավարներին փոխարինելու պրակտիկայից և տնտեսություններին արտադրական հարցերի լուծման իրավասություն տալ ոչ թե խոսքով, այլ գործով: Ավելորդ չէ նշել, որ հանրային տնտեսությունների տնտեսական-արտադրական ինքնուրույնության ամենափոքր խախտումն իսկ անդրադառնում է նրանց արտադրական գործունեության վրա, թուլացնում նրանց նյութական (նաև բարոյական) շահագրգռվածությունը, իսկ վերջինիս հետևանքները հանրահայտ են:

Որպեսզի հնարավոր լինի պետգնման գների միջոցով առավելապես խրախուսել հանրային տնտեսություններին, նպաստել անմիջական արտադրողների նյութական շահագրգռվածության բարձրացմանը, անհրաժեշտ է գյուղատնտեսական մթերքների պետգնումները սահմանել ոչ թե բնամթերային ձևով, ինչպես արվում է այժմ, այլ դրամական արտահայտությամբ: Այսպես, այժմ յուրաքանչյուր տնտեսությունից պահանջվում է վաճառել պետությանը սահմանած քանակությամբ հացահատիկ, խաղող, միս, կաթ, ձու և այլն: Այս հանգամանքը որոշակիորեն կաշկանդում է հանրային տնտեսությունների արտադրական ձեռնարկությունը, զրկում այն ինքնուրույնությունից, առանց որի զգալիորեն դժվարանում է նրանց նյութապես շահագրգռելու հարցի լուծումը: Մեզ թվում է, որ և՛ պետությունը, և՛ հանրային տնտեսությունները ավելի շատ կշահեին, եթե կոլտնտեսային արտադրանքի վաճառքը պետությանը սահմանվեր դրամական արտահայտությամբ, առանց վերևից կոնկրետ մթերքների, կոնկրետ քանակի սահմանման: Այսինքն՝ յուրաքանչյուր տնտեսություն, համաձայն պետական պլանի, պարտավոր կլիներ վաճառելու պետությանը, ասենք, հարյուր հազար ռուբլու արժեքով գյուղատնտեսական մթերքներ, իսկ թե յուրաքանչյուր մթերատեսակից նա ինչքան կվաճառի, այդ արդեն թողնել տնտեսության իրավասությանը: Իսկ հասարակության մասշտաբով այդ մթերքների անհրաժեշտ համամասնությունը հեշտությամբ կարելի է ստեղծել պետգնման գների համապատասխան քաղաքականության միջոցով:

Կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի և նրանց վարձատրության ձևերի հետագա կատարելագործումը: Այժմ կոլտնտեսային արտադրության մեջ կիրառվում են վարձատրության տարբեր սիստեմներ՝ մի տնտեսության մեջ աշխատանքի դիմաց վճարումը կատարվում է բնամթերքով, մյուսում՝ դրամով, մեկում աշխատանքը գնահատվում է աշխօրերով, մյուսում՝ դրամական արտահայտությամբ և այլն: Սակայն անկախ ձևից, վարձատրության սիստեմը պետք է նպաստի աշխատավորի նյութական շահագրգռվածության բարձրացմանը, այլապես այն պետք է անվերապահորեն կատարելագործվի: Վերջին ժամանակաշրջանում մի շարք առաջավոր տնտեսություններում մտցվեց երաշխավորված մինիմումով դրամական վարձատրության սիստեմը, որն անհամեմատ առաջադիմական է գոյություն ունեցող մյուս ձևերից: Սակայն վարձատրության նման սիստեմը հնարավոր է կիրառել միայն տնտեսապես ամուր կոլտնտեսություններում, որոնք ի վիճակի են երաշխավորված դրամական ֆոնդեր ստեղծելու. ինչ վերաբերում է մյուս կոլտնտեսությունների մեծ մասին, ապա նրանցում վարձատրությունը կատարվում է աշխօրերի միջոցով:

Աշխօրը հանդիսանալով կոլտնտեսային արտադրության մեջ աշխատանքի ծախսման, ինչպես և արտելային եկամտի մեջ կոլտնտեսականի բաժնի որոշման չափ, խոշոր դեր է խաղացել կոլտնտեսային կարգի զարգացման գործում։ Կոլտնտեսությունների կազմակերպման սկզբնական տարիներին նրանցում՝ կիրառվող ըստ շնչի հավասար բաշխման ձևի համեմատությամբ աշխօրն ունի մի շարք առավելություններ և հնարավորություն է տալիս եկամուտների բաշխումը կոլտնտեսականների միջև կատարելու գործավարձի սկզբունքով։ Սակայն, աշխօրը, որպես հանրային արտադրության մեջ արտելի անդամների մասնակցության աստիճանի որոշման, ուստի և ըստ աշխատանքի քանակական ու որակական ցուցանիշների նրանց վարձատրության չափ, ունի անառարկելի թերություններ։ Աշխօրի թերությունը նախ և առաջ նրա երկակիության ու հակասականության մեջ է, որն արտահայտվում է հետևյալում. նրա քանակական կողմը կախված է հանրային տնտեսության մեջ կոլտնտեսականի մասնակցությունից, իսկ արժեքը՝ բազմապիսի օբյեկտիվ (երաշտ, անբերրիություն և այլն) ու սուբյեկտիվ գործոններից, որոնք պայմանավորվում են ոչ թե առանձին աշխատողի, այլ համայնական արտադրության բոլոր մասնակիցների աշխատանքի որակով։ Այսպիսով, աշխօրի հակասականության հետևանքով առանձին կոլտնտեսականը կարող է միայն շատ կամ քիչ աշխօր վաստակել, մինչդեռ փոխել վերջինիս բովանդակությունը, բարձրացնել նրա արժեքը չի կարող։ Իհարկե, դա չի նշանակում, որ յուրաքանչյուր կոլտնտեսական իր լավ աշխատանքով չի նպաստում աշխօրի նյութական բովանդակության մեծացմանը, սակայն տվյալ դեպքում խոսվում է հարցի այլ կողմի մասին, այն է՝ թե ինչքանով է աշխօրը համապատասխանում անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Բանը նրանում է, որ երբ աշխօրը դրսևորվում է քանակական տեսակետից, այն նպաստում է անձնական շահագրգռվածությանը՝ ով շատ է աշխատում, շատ աշխօր է ստանում, բայց իր նյութական կշռելիության առումով աշխօրը անձնական շահագրգռվածության անբավարար, կիսամիջոցային ձև է հանդիսանում, քանի որ նրանում նյութականացված աշխատանքը ոչ թե սոսկ նույն աշխօրը վաստակողի աշխատանքն է, այլ ամբողջ կոլեկտիվի անդամների տարվա ընթացքում կատարած բոլոր տեսակի աշխատանքների որոշակի մասնիկը։ Աշխօրը, որպես վարձատրության ձև, ամբողջապես համապատասխանում է կոլեկտիվ շահագրգռվածության բնույթին, իսկ կոլտնտեսային կարգերի զարգացման ներկա էտապում հանրային արտադրության վերելքը խթանող կարևորագույն պայմաններից մեկը՝ դա անձնական շահագրգռվածության հետևողական բարձրացումն է, որի համար աշխօրը նվազ պիտանի է։

Մեր կարծիքով, նպատակահարմար կլիներ բոլոր կոլտնտեսություններում անցնել վարձատրման դրամային սիստեմի, միաժամանակ վերակառուցելով արտադրության կազմակերպումն այն հաշվով, որպեսզի կոլտնտեսականի աշխատավարձն ավելի համապատասխանի արտադրության մեջ ներդրված նրա աշխատանքի քանակական ու որակական ցուցանիշներին և նվազ չափով կախված լինի կոլեկտիվի մյուս անդամների աշխատանքի արդյունավետությունից։

Անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման տեսակետից ուշագրավ է և կոլտնտեսականների հիմնական ու լրացուցիչ վարձատրության հարցը։ Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում որոշ նշանակություն ունի և լրացուցիչ վարձատրությունը. պատահական չէ, որ ՍՄԿՊ մարտյան պլենումն իր որոշման մեջ նշում է վարձատրման այդ ձևի ճիշտ և նպատակային իրականացման մասին։ Վերջին ժամանակներս գյուղատնտեսության որոշ մասնագետներ, ղեկավար աշխատողներ չափազանց հրապուրվում են լրացուցիչ վարձատրությամբ և անհարկի մեծացնում նրա դերը կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում, այնինչ լրացուցիչ վարձատրությունը չի կարող արմատական նշանակություն ունենալ գյուղատնտեսության աշխատողներին նյութապես խթանելու հարցում։



Ի դեպ, վարձատրման այս ձևն ունի մի շարք ստվերոտ կողմեր, որոնք բացասաբար են անդրադառնում կոլտնտեսային արտադրության վրա։ Նախ՝ քանի որ լրացուցիչ վարձատրությունը տրվում է գերպլանային արտադրանքի դիմաց, ուստի յուրաքանչյուր կոլտնտեսական, բրիգադավար, ֆերմայի վարիչ կամ կոլտնտեսության նախագահ ձգտում է ցածր պլաններ սահմանել, որը և, որպես կանոն, ուղեկցվում է ներտնտեսային ռեզերվների ու հնարավորությունների քողարկմամբ։ Այսպես, կթվորուհին համոզված է, որ իր խնամած կովերից կարող է ստանալ 500 ցենտներ կաթ, բայց ձգտում է, որ իր պլանը լինի 400 ցենտներ, որպեսզի պլանից ավելի արտադրվելիք 100 ցենտների համար ստանա լրացուցիչ վարձատրություն։ Ճիշտ այդպես են վարվում մյուս կոլտնտեսականներն ու արտադրության ղեկավարները։ Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Փշատավանի կոլտնտեսությունում հացահատիկի միջին բերքը 1955 թվականին կազմել է հեկտարից 24,8 ցենտներ, բայց հաջորդ տարվա համար պլանավորել են՝ 19,8 ցենտներ, իսկ 1957 թվականի համար՝ նախորդ տարվա միջին բերքատվությունից 3 ցենտներով պակաս։ Կարելի է բերել բազմաթիվ նման օրինակներ։

Վերջապես, լրացուցիչ վարձատրության կենսագործման հնարավորությունը արտադրության առաջավոր ճյուղերում և անհնարինությունը մյուս՝ ետ մնացող ճյուղերում, դժգոհություն է ստեղծում տնտեսության ետ մնացող արտադրամասերում զբաղված կոլտնտեսականների շրջանում։ Հենց այդպես էլ եղել է օրինակ «Լենինյան ուղի» կոլտնտեսությունում, որտեղ լրացուցիչ վարձատրություն ստանում էին միայն անասնապահության աշխատողները, իսկ մյուս բոլոր կոլտնտեսականները՝ ոչ. վերջիններս էլ հարց բարձրացրին ընդհանուր ժողովում և վերացրին լրացուցիչ վարձատրությունը։

Այսպիսով, չնայած լրացուցիչ վարձատրությունը չի հանդիսանում կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացման արմատական ու ամենուր կիրառելի միջոց, բայց նրան ավելի մեծ ուշադրություն է նվիրվում, քան հիմնական վարձատրության կատարելագործմանը, որի միջոցով միայն կարելի կլինի բեկում ստեղծել հանրային արտադրության նկատմամբ գյուղատնտեսական անմիջական արտադրողների վերաբերմունքի մեջ։

Վ. ԲԱՂԴԱԳՈՒԼՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու



# ՀԱՄԱՄԻՏ ՉԵՆՔ

«Լենինյան ուղիով» ամսագիրը 1963 թ. № 9-ում զետեղելով սոցիալիստական ազգերի երեք հատկանիշների մարման կոնցեպցիայի առթիվ ընկ. Ա. Եղիազարյանի՝ «Սոցիալիստական ազգերի հատկանիշների հարցի շուրջը» հոդվածը, ծավալեց շատ օգտակար մի բանավեճ, որը, բնականաբար, մտքերի բախման առիթ տվեց նաև ազգային հարցի լենինյան տեսության, ծրագրի և քաղաքականության հետ առնչվող մի շարք այլ խնդիրների շուրջ:

Գտնելով, որ այդ բանավեճը մեծապես նպաստում է ազգային հարաբերությունների վերաբերյալ կոմունիստական շինարարության ներկա էտապի պրակտիկ խնդիրների ճիշտ ըմբռնմանը, մենք ևս հնարավոր գտանք արտահայտվել այդ հարցերից մեկի շուրջ: Դա հիմնականում, եթե կարելի է այսպես անվանել, ազգերի զարգացման խոր հեռանկարների կամ նրանց ապագայի հարցն է:

Ամենից առաջ ազգերի ասիմիլյացիայի և սոցիալիստական ազգերի ապագայի մասին: Պետք է նշել, որ մեր օրերում առանձին հեղինակներ, մեր կարծիքով, չեն նկատում, որ Վ. Ի. Լենինը, խոսելով կապիտալիզմի օրոք ազգերի միախառնման պրոցեսի մասին, այն անվանել է ասիմիլյացիա, իսկ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո ապրող ազգերի միախառնման օբյեկտիվ պրոցեսը՝ միաձուլում: Ոմանց կողմից անտեսվում է նաև այն, որ կապիտալիստական հասարակարգում տեղի ունեցող ասիմիլյացիոն պրոցեսի մեջ Լենինը տեսնում էր երկու կողմ՝ բռնի ասիմիլյացիա և պատմականորեն անխուսափելի, օբյեկտիվ ասիմիլյացիա, որպիսին նա համարում է պրոգրեսիվ պրոցես: Ահա այդ, պատմականորեն անխուսափելի, պրոգրեսիվ ասիմիլյացիան էլ սոցիալիստական հասարակարգում վերաճում է ազգերի մերձեցման և ապա միաձուլման նախադրյալի, պայմանավորում է ազգերի զարգացման հեռավոր ապագայի ընթացքը: Մի քանի մեջբերումով հաստատենք մեր ասածը:

Հայտնի է, որ 1913 թվականին, Ռուսաստանի մարքսիստական պարտիայի ազգային ծրագրի մշակման կապակցությամբ, օպորտունիստներ Յուրկևիչը և Դոնցովը բանվոր դասակարգի ինտերնացիոնալ համախմբման լենինյան դրույթը հայտարարեցին «Հին ասիմիլատորական հերյուրանքներ», իսկ նրանց համախոհ Լիբմանը նույնիսկ ծաղրաբար բացականչեց. «Հետևաբար այն հարցին— թե ինչ ազգության եք պատկանում, բանվորը պետք է պատասխանի՝ ես սոցիալիստ եմ»: Ահա այս առիթով Վ. Ի. Լենինը Լիբմանին ու նրա համախոհներին անվանեց «նացիոնալիստական քաղքենիներ» և ցույց տվեց, որ այդ մարդիկ գաղափար չունեն ասիմիլյացիայի էության մասին, որպես կապիտալիստական հասարակարգի պայմաններից բխող օբյեկտիվ, պատմականորեն անխուսափելի երևույթի: Հենց այստեղ էլ թվական տվյալներով Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ միայն XIX դարի վերջին և XX դարի սկզբի երկու տասնամյակներում կապիտալիստական արտադրության մեջ աշխատելու համար տասնյակ միլիոնավոր օտարազգի մարդիկ վերաբնակություն են հաստատել ԱՄՆ-ի խոշոր քաղաքներում և ձուլվել նրանց հետ: Կապիտալիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— «...նման է ջրաղացի, որ աղում, տրորում է ազգային տարբերությունները: Եվ այն, ինչ խոշոր միջազգային չափերով է կատարվում Նյու-Յորքում, կատարվում է նույնպես յուրաքանչյուր մեծ քաղաքում և գործարանային ավանում:

Ով չի թաղվել ազգայնական նախապաշարմունքներում, նա չի կարող կապիտալիզմի կատարած ազգերի ասիմիլյացիայի այդ պրոցեսում չտեսնել մեծագույն պատմական առաջադիմություն (ընդգծումը մերն է— Ա. Ս.), քայքայումն այն ազգային քարացածության, որ պահանջվում է խուլ անկյուններում, մանավանդ Ռուսաստանի նման հետամնաց երկրներում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 17): Հրեա սոցիալ-դեմոկրատների այսօրինակ հետամնացությունը Վ. Ի. Լենինն առավել անվայել էր համարում, քանի որ ասիմիլատորական պրոցեսի դեմ հանդես չեն եկել «...հրեության այն համաշխարհային պատմականորեն հռչակված մարդիկ, որոնք աշխարհին տվել են դեմոկրատիայի և սոցիալիզմի առաջավոր պարագլուխներ» (նույն տեղում, էջ 16):



Նույն աշխատության մեջ Վ. Ի. Լենինը գրել է. «...պրոլետարիատը ո՛չ միայն հանձն չի առնում պաշտպանելու յուրաքանչյուր ազգի ազգային զարգացումը, այլ ընդհակառակը, մասսաներին նախազգուշացնում է նման պատրանքներից, պաշտպանում է կապիտալիստական շրջանառության լիակատար ազատությունը, ողջունում է ազգերի ամեն մի ասիմիլյացիա (ընդգծումը մերն է—Ա. Ս.)՝ բացառությամբ բռնի կամ արտոնությունների վրա հիմնված ասիմիլյացիայի» (նույն տեղում, էջ 24—25):

Մարքսիստական-լենինյան այս տեսակետներն անտեսող հեղինակներն ասիմիլյացիայի մասին խոսում են հախուռն կերպով: Այսպիսի մոտեցում է հանդես բերում, օրինակ, դոցենտ ընկ. Մ. Մելիքյանը: Իր հոդվածներից մեկում նա գրել է. «Մինչսոցիալիստական հասարակարգերում ասիմիլյացիան, որպես կանոն, քաղաքական կախվածության հետևանք է, ստիպողական երևույթ, որը տեղի է ունենում մեծ մասամբ հարկադրման, այս կամ այն ազգի լեզուն պաշտոնապես սահմանափակելու և այլ նման ուղիներով» («Լենինյան ուղիով» № 2, 1964, էջ 15):

Ընկ. Մ. Մելիքյանն իր երկրորդ հոդվածում օգտագործելով Վ. Ի. Լենինի մտքերն, ազատ շարադրանքի ձևով գրում է, թե «ԱՄՆ-ը մի աղաց է, որը միախառնում է ու ձուլում է այնտեղ գաղթած բոլոր ազգերի ներկայացուցիչներին, որ նույնը տեղի է ունենում ամեն մի խոշոր քաղաքում՝ Փարիզում, Լոնդոնում և այլուր»: Սակայն հաստատելով, որ սա իսկապես «միանգամայն օրինաչափ երևույթ է», ընկ. Մ. Մելիքյանը բոլորովին անհիմն հարց է տալիս՝ «Բայց մի՞թե դրա հիման վրա կարելի է պնդել, թե կապիտալիզմի ժամանակ եվրոպական ազգերը, օրինակ, անգլիացիները, գերմանացիները, ֆրանսիացիները, շվեդները, իտալացիները, իռլանդացիները և այլն ասիմիլացվում են մյուս ազգերի մեջ, վերանում որպես ինքնուրույն ազգեր»: Ոչ մի դեպքում,— ասում է ընկ. Մ. Մելիքյանը և պնդում, թե Վ. Ի. Լենինի ասածն էլ հենց այն էր «որ այդ ազգերի որոշակի հատվածներ ձուլվում, ասիմիլացվում են իրենց մայր երկրից դուրս այն ժամանակ, երբ կորցնում են տնտեսական, տերիտորիալ, կուլտուրական կապերը մայր ազգի հետ, բայց իրենց երկրում նրանք իրենք են ասիմիլացնում ուրիշ ազգերի հատվածներին» («Լենինյան ուղիով» № 8, 1964, էջ 22): Այժմ էլ մենք ենք հարցնում ընկ. Մ. Մելիքյանին. երբ ազգերի՝ իրենց մայր երկրից դուրս գտնվող որոշակի հատվածների ասիմիլացմանը զուգընթաց այդ նույն ազգերը իրենց երկրում իրենք են ասիմիլացնում ուրիշ ազգերի հատվածներ, ապա դա ասիմիլացման օբյեկտիվ պրոցեսի գոյության կրկնակի ապացույց չէ՞: Մի՞թե դա հիմք է տալիս մեզ պնդելու, թե ազգերը ներկայումս միայն և միայն ամրապնդվում և աճում են, կամ հերքելու, որ ազգերի այդ առանձին հատվածների՝ այլ ազգերի հետ միաձուլվելու օբյեկտիվ պրոցեսը ներկայումս գնալով ավելի է ակտիվանում, քանի որ սոցիալիստական հասարակության կյանքի կազմակերպման բոլոր սկզբունքները նպաստում են դրան:

Որ ազգերի միաձուլման օբյեկտիվ պրոցեսը շարունակվում է նաև սոցիալիզմի պայմաններում, այդ բանն ընկ. Մելիքյանն, ըստ էության, ինքն էլ է ցույց տալիս, բայց չի ուզում այդպես անվանել: Ընկ. Մ. Մելիքյանը գրում է. «Համանման պրոցես ընթանում է նաև մեր երկրում: Ազգերի հատվածներն իրենց ազգային տերիտորիայից դուրս, եթե նրանք չեն կազմում զգալի կոմպակտ ամբողջություն, ըստ էության տեղում ապրող մյուս ազգերից տարբերվում են միայն լեզվով և հոգեբանությամբ և դա էլ արագ կորցնում ու ասիմիլացվում են՝ ոմանք ավելի, ոմանք պակաս չափով: Ինչպես ցույց ենք տվել մի հոդվածում (տե՛ս «Լենինյան ուղիով» № 2, 1964), սոցիալիզմի պայմաններում դա միանգամայն կամավոր, մասնակի և քիչ թե շատ փոխադարձ ասիմիլյացիա, ձուլում է» («Լենինյան ուղիով» № 8, 1964, էջ 22):

Ի՞նչ է նշանակում՝ «Դա միանգամայն կամավոր, մասնակի և քիչ թե շատ փոխադարձ ասիմիլյացիա, ձուլում է»: Իսկ մի՞թե այն, ինչ նկարագրում է Վ. Ի. Լենինը տարբեր ազգերի պրոլետարական խավերի՝ ամերիկացիների հետ ձուլվելու մասին, կամավոր ու մասնակի չէր: Մի՞թե ամերիկացիները այլազգիների տասնյակ միլիոններին զանազան երկրներից բռնությամբ էին քաշում իրենց մոտ: Իհարկե, ո՛չ: Տարբեր ազգերի այդ մասնակի հատվածները հասարակական կյանքի օբյեկտիվ պայմանների հետևանքով հարկադրված էին գնալու, աշխատանք գտնելու այնտեղ: Վ. Ի. Լենինն այդ անվանում է ասիմիլյացիա, որ հենց այդ օբյեկտիվության շնորհիվ պրոգրեսիվ բնույթ ունի: Ուրեմն ընկ. Մ. Մելիքյանի նկարագրած՝ սոցիալիզմի օրոք ազգերի առանձին հատվածների այլ ազգերի հետ միաձուլվելու ամեն մի երևույթ նույնպես միաձուլման միանգամայն բացահայտ, պատմականորեն օբյեկտիվ պրոցես է: Սակայն ընկ. Մելիքյանն ուղղակի է ասում, թե դա ասիմիլյացիա չէ: «Բայց այդ նշանակո՞ւմ է,— գրում է նա,— որ մեր երկրի ազգերը՝ ռուսները, ուկրաինացիները, վրացիները, մոլդավացիները, ադրբեջանցիները, ուզբեկները և այլն իրենց հիմնական

պես «ազգային կուլտուրայի» համար— անպայման ոչ» (Երկեր, հ. 20, էջ 24):

Հասկանալի է, որ այստեղ ևս խոսքը ազգերի դեմոկրատական զարգացման և սոցիալ-դեմոկրատիայի կողմից բովանդակությամբ դեմոկրատական, սոցիալիստական կուլտուրայի պաշտպանության մասին է: Սակայն հենց այս մեջբերման առթիվ է, որ ընկ. Ա. Եղիազարյանը դոգմատիզմի մեջ է մեղադրել ոմանց և նշել, թե՝ «Այստեղ խոսքը վերաբերում է բուրժուական հասարակարգին» և պնդում է, թե չի կարելի «պրոլետարիատի անելիքը բուրժուական հասարակության շրջանակներում տարածել սոցիալիստական հասարակության վրա»: Դուրս է գալիս, որ Լենինի նշած պայքարն ամեն մի ազգային ճնշման դեմ, ընդհանրապես «ազգային կուլտուրայի» դեմ, հետևապես սոցիալիստական կուլտուրայի համար, ռևոլյուցիոն պրոլետարիատի, մարքսիստների անելիքն է միայն բուրժուական հասարակության շրջանակներում (ուրեմն և սոցիալիստական կուլտուրան պետք է ստեղծվի կապիտալիստական հասարակարգի պայմաններում) և այն սոցիալիստական հասարակության վրա տարածել չի կարելի: Ավելին, քանի որ ընկ. Ա. Եղիազարյանն այս մտքի մեջ ոչ մի վերապահում չի արել, ապա նրան պետք է հասկանալ այսպես. մարքսիզմ-լենինիզմի այն բոլոր դրույթները, որ մշակվել են կապիտալիզմի օրոք, հանդիսանում են պրոլետարիատի անելիքը բուրժուական հասարակարգի շրջանակներում: Սա, իհարկե, անհեթեթություն է: Մարքսիզմ-լենինիզմի տեսության մեջ, անշուշտ, կան շատ դրույթներ, որ մշակվել են միայն կապիտալիստական հասարակարգի շրջանակներում կիրառվելու համար: Սակայն, դժբախտաբար, ընկ. Ա. Եղիազարյանն իր առարկություններն արել է ոչ այդպիսի մի դրույթի վերաբերյալ և չի էլ մասնավորացրել այդ առարկությունը:

Մենք գտնում ենք, որ ազգերի միաձուլման և ազգերի զարգացման ու ազգային կուլտուրայի վերաբերյալ մարքս-լենինյան բոլոր այն դրույթները, որոնց մասին այստեղ խոսվեց, ռևոլյուցիայից առաջ հենց նրա համար են մշակվել, որպեսզի իրագործվեն ռևոլյուցիայի միջոցով, ռևոլյուցիայից հետո, և չի կարելի հերքել, որ մինչև այսօր էլ այդ դրույթները մնում են մարքսիստական պարտիայի ազգային ծրագրի հիմքում:

Պետք է նշել նաև, որ ընկ. Ա. Եղիազարյանը հակասության մեջ է ընկնում, երբ, մի կողմից, գտնում է, որ ռևոլյուցիայից հետո արմատապես փոխվել է բանվոր դասակարգի և պարտիայի դիրքը դեպի «ազգային զարգացման» և այլ դրույթները, իսկ մյուս կողմից՝ պնդում է, թե ազգի հին բնորոշումը և նրա չորս հատկանիշները մինչև օրս ո՛չ միայն որևէ փոփոխություն չեն կրել, այլ որոշ հատկանիշներ (օրինակ, տնտեսական հատկանիշը) այժմ նույնիսկ ավելի ուժեղ են դրսևորվում:

Այս բոլորից հետո մի հետևություն կարելի է անել՝ ազգերի ապագա միաձուլման դրույթը մարքս-լենինյան տեսության մեջ միանգամայն պարզորոշ է, բայց թե՛ Մարքսը և թե Լենինը այն վերագրել են ազգերի հեռավոր ապագային՝ հասունացած և ամրապնդված համաշխարհային կոմունիզմին: Այդ բանը հաստատեց նաև ՍՄԿՊ XXII համագումարը:

Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

# ԿՈՄՈՒՆԻԶՄՆ ԷՐ ՆՐԱ ԴԱՎԱՆԱՆՔԸ



Մի առավոտ Վանում լուր տարածվեց, որ անհնազանդ բանտարկյալներից մեկն սպանել է բանտի պաշտոնյային ու փախել... Տարիներ անց նույն բանտում սպանված մշակութային գործիչ, «Երկիր» թերթի խմբագիր, «Հավսե» և 1895 թվականի Վանի պաշտպանության կռիվներին նվիրված «Կարմիր օրեր» գրքերի հեղինակ, Ասո կեղծանունով հայտնի Տիգրան Օթյանի եղբայրն էր՝ Գևորգը. մահից մազապուրծ՝ նա հաստատվեց Պարսկաստանի Սալմաստ գավառի Հավթվան գյուղում, որտեղ և 1898 թվականին ծնվեց նրա երկրորդ տղան՝ Սեդրակը: Ընդամենը հինգ տարեկան էր երեխան, երբ մեռավ ծպտյալ քահանա հայրը, չորս մանուկներին թողնելով անօգնական կնոջ խնամքին:

Լվացարարությամբ, կար ու ձևով էր պահում երիտասարդ կինն իր որբուկներին: Դերձակի աշկերտ էր Սեդրակը մորեղբոր արհեստանոցում, միաժամանակ՝ նրա տնային ծառայողը: Տնտեսական չարքաշ կյանքի պատճառով չէր կարողացել քաղաքային չորսդասյա դպրոցի առաջին դասարանից այն կողմն անցնել: Մինչև իր կյանքի վերջը ուսման պակասը նա լրացրել է ինքնակրթությամբ: Եվ այդ հաջողվել էր նրան: Նրան ճանաչող մարդկանցից ոչ մեկի մտքով չի անցել, որ այդքան քիչ է աշակերտել այդ իրոք կուլտուրական մարդը:

Առևտրական խոշոր մի տան գործակատարն էր նա, երբ մահացավ ռևմատիզմից անդամալույծ դարձած մայրը՝ խոր վշտի մեջ թողնելով դյուրազգաց, կյանքում դեռևս միայն կարիքի ու զրկանքի բաժակը ճաշակած իր զավակներին: Ինչե՜ր ասես չի արել Սեդրակը եղբայրների և միակ քրոջ ապրուստը հոգալու համար. է՛լ մշակություն կայարաններում, բանվորություն հացի փռում՝ Հյուսիսային Կովկաս գաղթելուց հետո:

Մինչև 1917 թվականը քաղաքական ոչ մի պարտիայի չի հարել Օթյանը: «Փետրվարյան հեղափոխությունը,— գրում է նա իր ինքնակենսագրության մեջ,— շփոթեց իմ հասկացությունները: Մինչ այդ ունեցած իմ տեսակետները սոցիալիզմի ու դեմոկրատիզմի, ազգային-ազատագրման խնդիրների մասին սկսեցին այլ ձևով երևալ ինձ: Առաջին անգամ ծանոթանալ սկսեցի մենշևիկների, բոլշևիկների, էսեռների հետ, բայց լրիվ ըմբռնել, զանազանել նրանց չէի կարողանում. բոլորի լոզունգները, նպատակները առերես կարծես նման էին, հեռանկարները՝ սիրուն»:

Ո՞րն էր արդարացի այդ կուսակցություններից, ո՞րն էր ունակ ավելի կարճ ուղիներով մարդկությանը տանելու դեպի երջանկությունն ու եղբայրությունը, խորհում էր Սեդրակը. «Գետի արտաքին տեսքից չես կարող իմանալ ինչպիսին է այն: Նրա ինչ լինելը հասկանալու համար անհրաժեշտ է մտնել ջուրը և միայն այդ դեպքում կզգաս հոսանքի ուժը»: Այսպես դատելով նա նետվեց ալեկոծ պայքարի գիրկը: Բոլշևիկների աճող ազդեցությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո ամբողջովին իր ոլորտն առավ Օթյանին:

Սեդրակ Օթյանը կոոպերատիվներից մեկում գործակատար էր, երբ Հյուսիսային Կովկասում սովետական իշխանություն հաստատվեց: Կյանքի դպրոցը թրծել, շատ բան էր սովորեցրել մանկուց դժվարությունները հաղթահարելուն ընտելացած երիտասարդին: Անուրախ, հոգսաշատ կյանքը խոժոռ ու մռայլ տեսք էր տվել նրա առնական արտաքինին, բնավ չստվերելով նրա կենսախինդ ու լավատես հոգին, չսասանելով նրա հավատը բարու և գեղեցկի հաղթանակի, մարդկության պայծառ ապագայի հանդեպ, չմթագնելով շագանակագույն աչքերի կենսաշող փայլը: Կուռ կամքը, հաստատակամությունն էին բացահայտված արևելյան արտահայտիչ դիմագծերում: Դեռ մանկուց նա գարշել է ստից ու կեղծիքից, ստորաքարշությունից և անազնվությունից, միշտ պայքարել այդ արատների դեմ:

— Ես չեմ ուզում և երբեք չեմ հաշտվի ստորաքարշության հետ: Կարևորը ստորությանը, անարգությանն ու քծնանքին չվարժվելն է. միայն այդ դեպքում դրանք կվերանան,— հաճախ է ասել Սեդրակն իր ընկերներին:

Այդպիսին էլ նա մնաց իր ողջ կյանքում. թե՛ դժվարություններով ու արգելքներով լի կեռման-

*շարունակ սավերում մնալ: Նույթ ունեցիր. խոսիր, պատմիր քո գործընկերպի մասին, սովորեցրու և ուրիշ կանանց, ինչպես աշխատում ես, այնպես էլ երբեմն խոսիր:*

*— Որքա՜ն հոգատար էր նա կանանց նկատմամբ. ձի՞ էր պետք Դարալագյազի կին բաժնի վարիչին՝ Էմմա Վարդապետյանին, նա տրամադրում էր իրենը, հիվանդ էր որևէ մեկը, ուղեգիր էր ձեռք բերում, ուղարկում առողջարան. հասնում էր ամենքին՝ մեծին ու փոքրին: Բայց խիստ էր վարվում կոմունիստական բարոյականության նորմերը խախտողների հետ:*

*1930 թվականին Օթյանը նշանակվեց Հայաստանի Պետական քաղաքական վարչության պետի տեղակալ, ապա կարճ ժամանակով՝ պետ:*

*— Այս օրերին քեզ նմաններն են մեզ պետք այնտեղ. ո՛չ միայն բազուկ ու կամք, այլև մարդասեր սիրտ: Իսկ դու այդ երկուսի մարմնացումն ես: Չէ՞ որ Աթարբեկյանի հետ ես աշխատել,— համոզում էր նրան Աղասի Խանջյանը, որին այնպես սիրում էր Օթյանը:*

*«Եթե քո սիրտն այնպես է բիրտացել, որ դու այլևս չես կարող խղճալ քո նմանին, հեռացիր այս պոստից»,— հնչում էին նրա հոգում Ֆ. Է. Ձերժինսկու խոսքերը, և ունկնդիր այդ ձայնին՝ նա ստանձնեց այդ ծանր պարտականությունը:*

*Ինչպես ամենուրեք, այստեղ էլ ամենավտանգավոր ու վճռական իրադարձություններում պարտիայի առաջամարտիկն էր նա՝ անձնվեր, բանիմաց ու խոհուն:*

*«Աշխատանքի անցնելու առաջին իսկ օրերին մեծ հեղինակություն վայելեց նա. շատ հասարակ էր ու պարզ, և մենք՝ նրա ենթակաները, շատ շուտ համոզվեցինք, որ Օթյանը լենինյան կոփվածքի գործիչ է՝ ամենաբարձր պաշտոններում իսկ խիստ հասարակ: Երբեք չէր քաշվում իր փորձառու ընկերների հետ խորհրդակցել, կարծիք հարցնել. այնքան մարդամոտ ու հասարակ էր, որ հաճախ մոռանում էինք նրա պետ լինելը», հիշողություններից հուզված պատմում է Ա. Դուլգարյանը, որն այն ժամանակ քաղաքական վարչության վարչական բաժնի պետն էր:*

*Դարալագյազի աշխատողներից նրա մոտ են եկել Արտաշես Գևորգյանը, Բաբկեն Սիմոնյանը և Հայրիկ Սեդրակյանը:*

*— Մենք եղանք քննիչի մոտ, բայց առանց ձեզ տեսնելու գնալ չենք կարող: Ինչ-որ կեղծ ցուցմունքի հիման վրա ձերբակալված է Ախտայի հողբաժնի վարիչը՝ Բագրատ Սահակյանը:*

*— Եվ դրա համար գործներդ թողած եկել հասել եք այստե՞ղ: Ոչ ոքի նկատմամբ անարդար վճիռ չի լինի, հանգիստ գնացեք:*

*Այդպես էլ եղավ. Բագրատին զրպարտել էին: Նա ազատվեց:*

*Շուտով Ս. Օթյանը ընտրվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմի երրորդ, ապա երկրորդ քարտուղար: Երկրի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ շատ ջանքեր թափեց նա: Պղնձի արդյունաբերության, էլեկտրակայանների կառուցման և տեխնիկական կուլտուրաների զարգացման գործում ես նա իր ավանդն ունի:*

*Կենտկոմի քարտուղարի պոստում նա երկար չմնաց, որովհետև «մեղանչել» էր Բերիայի դեմ: Ահա նա գործում է Վրաստանում: Սկզբում Բաշքիչետի, ապա Բելի կլյուչի պարտիայի շրջկոմի քարտուղարն էր: Քաղաքում հազվադեպ կարելի էր տեսնել նրան մեքենայով շրջելիս, մինչ այն սիրով տրամադրում էր ադրբեջանցի ցրիչին՝ Մամադ-Ալուն, կատակով ասելով.*

*— Ցիրդուսու նման նստել ես, մեքենան էլ քեզ է սպասում, շարժվիր:*

*Անցան օրեր...*

*— Պատրաստվի՛ր, Օնի՛կ, առավոտը վաղ դուրս ենք գալու,— ասաց նա վարորդին, խիստ մռայլ. այդ օրը նա շատ էր ծխում:*

*Երևան տանող ամբողջ ճանապարհին մի պատառ հաց չկերեց բերանը: Հանդիպեցին Երևան եկող մի այլ մեքենայի, և Օթյանը վճռի բռնվեց ուղևորների հետ: Այդտեղ միայն վարորդն իմացավ Օթյանի վատ տրամադրության, անընդհատ ծխելու պատճառը: Խանջյանը չկար. նրա դիակը բերված էր Երևան, և, առանց թույլտվության, Օթյանը գնում էր՝ թաղելու իր մտերիմ ընկերոջը: Բայց հաջորդ օրը՝*

*— Մենք պետք է վերադառնանք, երկրկոմից ինձ կանչում են, պատրաստիր մեքենան,— զանգահարեց վարորդին:*

*— Հապա թաղո՞ւմը:*

*Այլևս ոչ մի բառ՝ ո՛չ հեռախոսով և ոչ էլ Թիֆլիս տանող ողջ ճանապարհին... Այդպես է. մեծ նավերն անձայն են սուզվում... Անընդհատ ծխում էր... 1937 թվականի ապրիլի 29-ն էր: Ուշ գիշերին բախեցին դուռը, խուզարկեցին, կասկածելի ոչինչ չգտան: Խռովված, ալեկոծ հոգով նա գրկեց հարազատներին և՝*

*— Ես անմեղ եմ, Լիզա, եթե չվերադառնամ, լավ նայիր առողջությանդ և երեխաներին,— ասաց, և տարան:*

*Նա չէր սպասում, որ իր կնոջն էլ նույն բախտը կվիճակվի:*

*Այժմ նրա անդրանիկ դուստրը՝ Ռութան, սրբությամբ պահպանել է մոր՝ աքսորավայրից ուղարկած երկտողներն անգամ և իր կոմունիստ հոր արդարացման վճիռը: Հայր, որը բիրտ կամայականության զոհ դարձավ՝ երեսունինը տարին նոր բոլորած հասակում:*

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԱՅ ԱՌԱՋՆԵԿՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Տակավին անցյալ դարի վերջին երեսնամյակում, երբ մարքսիզմը լայնքով ու խորությամբ արմատներ էր գցում եվրոպական ցամաքամասում և այլուր, բուրժուական կարգերի գաղափարական պաշտպանները հակագրոհի անցան բանվոր դասակարգի և ողջ աշխատավոր մարդկության ապատագրական ուսմունքի հիմնադիրների դեմ: Մինչև իրենց վերջին շունչը Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը հետևողական պայքար են մղել այն ամենի դեմ, ինչ հակահումանիստական է, հակագիտական ու կեղեքչական:

Հատկանշական է, որ մարքսիզմի դեմ հարձակումներ եղան նաև սոցիալ-դեմոկրատական շարժմանը հարած ականավոր գործիչների կողմից: Ֆ. Էնգելսի՝ *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը* նշանավոր երկի հրապարակումից հետո, Կ. Կաուցկին, Հ. Կունովը և ուրիշներ, ի թիվս այլ սկզբունքների, փորձեցին վերանայել նաև ամուսնության ու ընտանիքի կարգացման մի շարք էական թեզեր, որոնք իրենց փայլուն շարադրանքն ու լուծումն էին գտել Էնգելսի նշված երկում: Ելնելով դարվինիզմի և բուրժուական էտնոգրաֆիայի միակողմանի, իդեալիստական ըմբռնումից, Էնգելսի քննադատները ջանում էին ամեն կերպ հերքել մատերիալիստական այն եզրակացությունները, որոնք կարգացված էին նրա աշխատության մեջ՝ Լուիս Մորգանի մեծարժեք հետազոտության հիման վրա:

Այն տարիներին, երբ նույնիսկ Էնգելսի որոշ պինակիցներ վերապահությամբ էին ընդունում նրա մի շարք միանգամայն նոր և արմատական դրույթներն ամուսնության ու ընտանիքի հարցում, որտեղից որտեղ Լոզանում իր դոկտորական դիսերտացիայում երիտասարդ

ETUDE

ETHNOGRAPHIQUE ET JURIDIQUE

SUR LA

FAMILLE ET LE MARIAGE

ARMÉNIENS

PRÉCÉDÉE D'UN APERÇU HISTORIQUE

DISSERTATION

PRÉSENTÉE A LA FACULTÉ DE DROIT DE LAUSANNE

PAR

AGOP MÉGAVORIAN

CANDIDAT AU DOCTORAT

LAUSANNE

IMPRIMERIE CH. PACHE, CITÉ 3

1894

Հակոբ Մեղավորյանը հաստատորեն կանգնում է Էնգելսի հայացքների պաշտպանության դիրքերում: Նկատենք, որ Մեղավորյանը շատ լավ էր ըմբռնել մարքսիստական այն դրույթը, թե յուրաքանչյուր գաղափարական գործիչ և հետազոտող, ամենից առաջ, պարտավոր է մարքսիզմի գաղափարների ճշմարտացիությունն ապացուցել՝ հարազատ ժողովրդի գոյավիճակից և նրա պատմությունից առնված փաստերով: Իր արժեքավոր ուսումնասիրությունը նա կատարել է այդ տեսանկյունով:

1894 թվականին Լոզանում լույս տեսավ Հ. Մեղավորյանի՝ *Հայկական ընտանիքի և ամուսնության իրավաբանական ու ազգագրական ուսումնասիրությունը*[1]: Իր երկում երիտասարդ մտածողն ամբողջապես կանգնած է իրավունքի և ամուսնա-ընտանեկան հարցերի մատերիալիստական-մարքսիստական տեսակետին: Ոչ սովարածավալ այդ աշխատության մեջ հեղինակն արծարծում է հայկական ամուսնա-ընտանեկան իրավունքի ու ընտանիքի էվոլյուցիայի հարցը:

Հետևելով Ֆ. Էնգելսին, նա սկզբից ևեթ վկայակոչում է արտադրակերպերի (սերնդագործություն և նյութական բարիքների ստեղծում) վճռողական դերը մարդկային հասարակության մեջ, մատերիալիստական հայեցակետով գնահատում Բախոֆենի՝ գիտությանը մատուցած ծառայությունը և շեշտում, որ նա սխալվել է, սոցիալական կյանքի հիմքում դնելով կրոնը: Համոզիչ կերպով առարկելով Ֆյուստել դե Կուլանժին, Մեղավորյանը նշում է, որ ֆրանսիացի հեղինակը սխալվում է, երբ ընտանեկան հաստատության ծագումը բխեցնում է կրոնից: Իհարկե, կրոնն իր ազդեցությունն ունի հասարակական հաստատությունների վրա,— ասում է նա,—բայց դրանք հասարակական հանգամանքների հետեվանք են և *ոչ կրոնի:* Հռոմեական իրավունքն էլ հասարակական կյանքի և մարդկային կանգվածների փոխհարաբերությունների արգասիքն է: Որքան կարգանում է հասարակությունը, այնքան թուլանում է կրոնի ազդեցությունը նաև ընտանեկան հաստատության վրա .[2]:

Իր աշխատության մեջ Մեղավորյանը հետևողականորեն քննարկում է Ֆ. Էնգելսի՝ *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը,* ինչպես և Լ. Մորգանի՝ *Նախնադարյան հասարակություն* հետազոտությունների հիմնական սկզբունքները: Անդրադառնալով հատկապես Մակ Լեննանի և Մորգանի բանավեճին՝ նա կանգնում է վերջինիս կողմը, լուրջ սխալ համարելով Մակ-Լեննանի այն տեսակետը, թե

---

[1] Agop Megavorian. Famille et le mariage arméniens. Lausanne, 1894.

[2] *Նույն տեղը, էջ 42:*

պոլիանդրիան (բազմայրություն) ամուսնության հատուկ ձև է[3]:

Խիստ բնորոշ է և արժեքավոր, որ այն տարիներին երիտասարդ Մեղավորյանը հիմնականում ճիշտ էր ըմբռնում ընտանիքի և ամուսնության պրոբլեմի շուրջ բորբոքված վեճերը: Նա գրում է. ճիշտ է, որ Մորգանն է նախնադարյան հասարակությանը վերաբերող գիտության հիմնադիրը, բայց *Ֆ. Էնգելսը* ոչ միայն պաշտպանել է Մորգանին անհիմն հարձակումներից, այլև *զարգացրել ու կատարելագործել է նրա ուսմունքը*[4]:

Ամուսնության և ընտանիքի պատմական էվոլյուցիայի բոլոր հիմնական հարցերում հարելով Էնգելսին, Մեղավորյանը հանգամանորեն և խիստ ուշագրավ պատմական նյութերով (առնըված հայ ընտանեկան կյանքի ոլորտից), լուսաբանում է Էնգելսի շարադրած ընդհանուր սկզբունքները ընդգծելով, որ հայ ժողովրդի ամուսնա-ընտանեկան պատմական էվոլյուցիան ընթացել է ճիշտ այն հիմնական ուղիներով, որոնց մասին հանգամանորեն գրել են Ֆ. Էնգելսը և Լ. Մորգանը:

Ճիշտ համարելով ամուսնության մորգանյան ձևերի սահմանումը, Մեղավորյանը չի կասկածում, որ Հավայան կղզիների պունալուա (խըմբային մի ամուսնաձև) ընտանիքը երբևէ գոյություն է ունեցել: Վկայակոչելով Անահիտի պաշտամունքի ժամանակաշրջանում մեր ժողովրդի մոտ մեհյանական ազատ բարքերի (հիերոդուլների) առկայությունը, նա եզրակացնում է, որ հայ ժողովուրդը ևս անցել է մայրիշխանության փուլով, որի հետքերը մնացել են մեր պատմության մեջ: Տվյալ դեպքում նա նկատի ուներ Ֆ. Էնգելսի հետևյալ եզրահանգումը. «Փողով անձնատուր լինելն սկզբնապես կրոնական գործողություն էր. այն տեղի էր ունենում սիրո աստվածուհու տաճարում, և փողը մտնում էր սկզբում տաճարի գանձարանը: Անահիտի հիերոդուլները Հայաստանում, Աֆրոդիտեինը՝ Կորնթոսում, ինչպես և տաճարներին կցված կրոնական պարուհիները Հնդկաստանում, այսպես կոչված բայադերաները (աղավաղված պորտուգալերեն bailadeira պարուհի), առաջին անառակուհիներն էին: Անձնատրությունը, որ սկըզբնապես ամեն մի կնոջ պարտականությունն է, հետագայում կատարում էին միայն այս քրմուհիները, իբրև մյուս բոլոր կանանց ներկայացուցիչներ: Ուրիշ ժողովուրդների մեջ հետերիզմը բխում է աղջիկների ամուսնությունից առաջ թույլատրված սեռական հարաբերությունների ազատությունից,— ուրեմն՝ դարձյալ խմբա-

---

[3] *Նույն տեղը:*

[4] *Հ. Մեղավորյան, նշվ. աշխատ., էջ 44:*



կան ամուսնության մի մնացորդ է, որը լոկ այլ ճանապարհով է հասել մեզ»[1]:

Հայ պատմագիտության մի շարք ներկայացուցիչների վկայություններից ելնելով, Հ. Մեղավորյանը անվերապահորեն միանում է իր ուսուցչի վերոհիշյալ թեզին:

Հայերը ևս անցյալում,— գրում է Մեղավորյանը,—անպայման ունեցել են բազմակին ընտանիք, որը սակայն քրիստոնեության արմատավորմամբ դարերի ընթացքում անէացել է: Բայց հայ իշխողների շրջանում, ուրիշ ժողովուրդների պես, բազմակնությունը հարգի է եղել, իսկ դրան հակառակ, աշխատավորներն ապրել են մենամուսնական ձևով: Ահա թե ինչու հայկական ֆոլկլորն ու ժողովրդական ստեղծագործությունները, ինչպես և գրականությունը, տոգորված են *մենամուսնության* ոգով: Այս հետևությունից հետո Մեղավորյանն ասում է, որ Հայաստանում բազմակնությունը երբևիցե չի իշխել, որովհետև հայ ժողովուրդը համեմատաբար երիտասարդ է, և ընտանեկան այդ ձևը նա վերապրել է կարճատև ժամանակամիջոցում: Սակայն սրանից հետո ավելացնում է, որ Խորենացու վկայությամբ ոչ միայն Արշակ երկրորդը, այլև հայ իշխանները բավական ժամանակ ապրել են բազմակնությամբ, որն սկզբում հանդուրժել է նույնիսկ քրիստոնեական եկեղեցին[2]:

Իրազեկ լինելով հարազատ ժողովրդի պատմության հիմնական փուլերին, Մեղավորյանը ճշտորեն ընդգծում է, որ հայ ավատները, ինչպես և հարուստները երկար ժամանակ պահպանել են *հարճակալության* հաստատությունը: Բայց նրանք բնավ չէին որդեգրում հարճերից ծնված զավակներին, իսկ ապօրինի զավակներին սպանում էին, կամ ծայրահեղ դեպքում՝ որդեգրում[3]:

Անդրադառնալով հայկական տոհմատիրության կազմավորմանն ու զարգացմանը՝ Մեղավորյանը նշում է, որ երբ հայերը թևակոխեցին պատմության շեմից ներս, մարդկությունը վաղուց գտնվում էր քաղաքակրթության փուլում: Ահա թե ինչու խմբային ամուսնության և արենակցական ընտանիքի հետքերը մեծ չափերով չեն արտացոլվել հայ պատմագրության մեջ: Սակայն, ինչպես բոլոր ժողովուրդների, այնպես և հայերի մոտ, խոր արմատներ են ունեցել տոհմատիրական հարաբերությունները:

Հայ ժողովրդի ծննդաբանության՝ Խորենացու նկարագրած ծառը Մեղավորյանը համարում է

---

[1] *Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1953, էջ 90—91:*

[2] *Հ. Մեղավորյան, նշվ. աշխ., էջ 70:*

[3] *Նույն տեղը, էջ 71:*

մեր տոհմային նահապետական դարաշրջանի հարազատ արտացոլումը: Այս առնչությամբ վերլուծելով *օջախ, տուն, տանուտեր* պատմական հասկացությունները, նա ընդգծում է, որ Խորենացու հիշատակությունը լիովին հաստատում է հայ նահապետական համայնքի տիրապետության տևական շրջանը[4]:

Հիրավի, գրում է նա, հայ անասնապահների և երկրագործների մոտ ընտանիքի նահապետական ձևը, որն աչքի է զարնում մի շարք հանրային հաստատություններով և «տան մեծի» կառավարմամբ, երկար դարերի ընթացքում խոր արմատներ է թողել հայերի հասարակական կյանքում: Հեղինակը չի կասկածում, որ հայ նահապետական ընտանիքի հանրային բնույթի մի շարք հարաբերություններն ու կապերն անպայման սերում են նախնադարյան մայրիշխանությունից:

Այնուհետև նա հանգամանորեն շարադրում ու վերլուծում է հայ նահապետական գյուղի բնորոշ գծերը, որոնք կարելի է ամփոփել հետևյալ ձևով.

ա) հայկական գյուղում դարերով պահպանվել է հողի, արոտավայրերի, ջրաղացների և առհասարակ ջրաբաշխական սիստեմի հանրային օգտագործումը.

բ) դեռ մինչև վերջին ժամանակներս,— գրում է Մեղավորյանը,— մնում էին փոխադարձ օգնության ու պաշտպանության, ընդհանուր վրեժխնդրության պրակտիկան և տոհմի նախահոր պաշտամունքը: Դաշտային և սեպոնային ու շինարարական աշխատանքներում հայկական գյուղական համայնքը հանդես էր գալիս որպես մի ամբողջություն.

գ) գյուղերում և նույնիսկ քաղաքներում դարերով մնում էին էքզոգամ (այլատոհմ) ընտանիքի կանոնները, մեծ մոր հարգանքը, «պորտերի» և «չհասի» հաշիվը;

դ) ընդհանուր գերեզմանոցը, հարսանեկան և կրոնական մի շարք ընդհանուր ծեսեր հիշեցնում են ժողովրդի անցյալի կոլեկտիվ նիստ ու կացը:

Սրանից հետո երիտասարդ գիտնականը իրավացիորեն նկատում է, որ Ֆ. Էնգելսի ու Մ. Կովալևսկու առկոչած հարավսլավական *«պադրուգան»* կամ *«եղբայրությունը»*, ինչպես և օսերի տոհմական բարքերն իրենց բոլոր հիմնական գծերով նման են հայկականին: Հայ նահապետական ընտանիքի բնորոշ սովորույթները հիմնովին համընկնում են այլ ժողովուրդների նահապետական ընտանիքի տրադիցիաներին:

Հարելով մարքսիստական մատերիալիզմին, Մեղավորյանը պատշաճ համոզչականությամբ է

---

[4] *Նույն տեղը, էջ 53:*

դնում և լուծում կուսության «առեղծվածը», հիմնականում այն լծորդելով կնոջ առքի ու վաճառքի հետ: Հիրավի, կույսի ողջախոհության արժեքը բարձրացել է տղամարդկանց աչքում միայն այն դեպքում, երբ, ինչպես ամենուր, հայ կինը ևս այլ ապրանքների սակագնով ենթարկվել է շուկայի առաջարկի ու պահանջարկի օրենքին [1]:

Հեռավոր անցյալում տեղ գտած պոլիգամիայի (բազմակնության) մնացուկ պետք է համարել, երբ մանկանը նշանում էին օրորոցում և նույնիսկ նախքան նրա ծնունդը: Այս իրողությունը, Մեղավորյանն իրավացիորեն կապակցում է ոչ միայն կնոջ առևանգման, այլև նրա վաճառքի հետ: Կնոջ ընդհանրականության արմատները մեկ տանում են Անահիտ դիցուհու տաճարը, ուր ամուսնացողներին պսակում էին ծաղիկներով և հնարավորություն ընձեռում կանանց՝ անձնատուր լինելու տղամարդկանց: Պսակադրության ակտը, որն օրինականացրեց քրիստոնեությունը, ըստ էության հեթանոսական է, որտեղ ուժեղ էր նախամոր, իսկ հետագայում՝ նախահոր պաշտամունքը: Ընտանեկան օջախի դարավոր պաշտամունքը, կապված նախահոր կուլտի հետ և ամուսնության պահին հարսի ու փեսայի գլխին պսակներ դնելը, Մեղավորյանն իրավամբ կապում է մայրատիրության ժամանակաշրջանի հասարակական-կրոնական ծեսերի հետ:

Հետևողականորեն կիրառելով էնգելսյան ըմբռնումը, Մեղավորյանն իր աշխատության մեջ այն կարևոր միտքն է հայտնում, որ հայկական նահապետական ընտանիքը շեշտված *տնտեսական բնույթ* է ունեցել, որում բարոյական գործոնի դերն ավելի փոքր էր, քան հռոմեական ընտանիքում, չնայած հայկական ընտանիքում նահապետի բացարձակ իրավունքը հռոմեականի համեմատությամբ՝ բավականին մեղմ է եղել [2]:

Հանգամանորեն մեկնաբանելով նահապետական ընտանիքի կառուցվածքը, և էվոլյուցիան հայ իրականության մեջ, Մեղավորյանն առանձնապես ընդգծում է *Տան մեծի* և *Տանտիկնոջ* փոխհարաբերությունները, նրանց իրավունքները որդիների նկատմամբ, և վերջիններիս իրավունքները կայքի ու գույքի ժառանգման հարցում:

Հայ ընտանիքի տան մեծը կանանց կարգադրություններ է անում միայն տանտիկնոջ միջոցով, որոնց արգելվում էր այլոց ներկայությամբ խոսել հասակավոր տղամարդկանց և նույնիսկ ամուսնու հետ: Տան մեծը երբեք չի լսում իր հարսների ձայնը, թեև հայ աղջիկն ազատորեն կարող էր պարել ու նվագել երիտասարդների հետ, բայց իր գլխին կրում էր հատուկ շոր: Տանտիկինը ևս մեծ հարգանք էր վայելում համայնքի բոլոր անդամների մոտ. նա էր հարթում այն բոլոր լուրջ վեճերը, որոնք ծագում էին երիտասարդների շրջանում ամուսնական փոխհարաբերությունների հարցերի շուրջ: Տանտիկինը որպես տնտեսությունը վարող գլխավոր անձ, կգալի չափով անկախ էր:

Այս ամենից Մեղավորյանը եզրակացնում է, որ հայ նահապետական ընտանիքը որոշ միջանկյալ տեղ է գրավում բարբարոսության ժամանակաշրջանի ապատ կացության և ժամանակակից քաղաքակրթության հասած ընտանիքի միջև [3]:

Վերլուծելով հայ ժողովրդի ամուսնա-ընտանեկան սովորույթներն ու ծեսերը, դիսերտանտը այն ճիշտ հետևությանն է հանգում, որ ընտանիքի հասարակական ու բարոյական հիմքերը պայմանավորված են նրա նյութական ու հասարակական վիճակի ամրությամբ:

Իր ուշագրավ ուսումնասիրության մեջ, շարադրելով ամուսնության և ընտանիքի իրավական հիմքերը, նա, միաժամանակ, օբյեկտիվորեն է գնահատում հայ եկեղեցու խաղացած դերը ամուսնա-ընտանեկան կյանքում: Քննարկելով եկեղեցական կանոնները, Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի մշակած օրենքները, Մեղավորյանը տալիս է դրանց մատերիալիստական ճիշտ բացատրությունը, կապելով ժամանակի սոցիալ-տնտեսական և քաղաքական հանգամանքների հետ: Իր դրույթները հիմնավորելու համար նա բավականին լուրջ վկայություններ է բերում հայ պատմագետների և ազգագրագետների ուսումնասիրություններից:

Ուսանելի է, որ Մեղավորյանն իր հայ ամուսնա-ընտանեկան կյանքի իրոք գիտական գողտրիկ ուսումնասիրության մեջ, հատուկ ուշադրություն է հատկացրել ժողովրդական ստեղծագործության այն ժանրերին, որոնք արտացոլել են հայ աշխատավորների ընտանեկան կյանքի հասկացությունները տարբեր նրբերանգներով:

Հակոբ Մեղավորյանի նշված աշխատությունը մեր ժողովրդի կյանքի մի բնագավառի՝ ամուսնա-ընտանեկան հարաբերությունների և իրավունքի հարակից հարցերի մարքսիստական-մատերիալիստական մեկնաբանության առաջին լուրջ փորձերից մեկն է, որը (հայկական մտքի ասպարեզում) մարքսիստական մտքի զարգացման պատմության մեջ իր արժանի տեղը պետք է գրավի:

Ի դեպ, այստեղ նշենք, որ մեր նպատակադրումից դուրս է եղել անդրադառնալ հեղինակի կողմից արծարծված հայկական ընտանիքի իրավաբանական հարցերին: Մեզ հետաքրքրում էին միայն հեղինակի՝ ամուսնա-ընտանեկան պրոբլեմի հետազոտությունն ու լուսաբանումը:

Այսպիսով, Հ. Մեղավորյանի դոկտորական դիսերտացիան իր ամբողջությամբ ներկայացնում է մարքսիստական հայ մտքի այն երախայրիքներից մեկը, որը համարձակությամբ դիմակայելով ժամանակին իշխող բուրժուա-իդեալիստական մտքի հոսանքին, հաստատակամորեն պրոպագանդեց մարքսիզմը, փորձելով այն կիրառել իր ժողովրդի կյանքի մի բնագավառի խճճված ոլորտում:

Ֆ. Էնգելսի մահից առ այսօր 70 տարի է անցել և մարքսիստ հետազոտողները հարստացրել են իրենց մեծ ուսուցիչների ուսմունքը: Ամուսնության և ընտանիքի հաստատության բարդ պրոբլեմների բնագավառում սովետական գիտնականները լուրջ նվաճումներ ունեն: Նոր սերընդի գիտելիքներն այդ առեղծվածի վերաբերյալ այսօր ավելի բազմազան են, ավելի խոր: Ուստի անցյալի մտածողներին գնահատելիս չի կարելի նկատի առնել միայն նրանց գիտելիքների ծավալը անկախ ժամանակաշրջանի գործոնից:

Իսկ ժամանակի բարձունքից մոտենալով Հակոբ Մեղավորյանի երկին, չի կարելի պատշաճը չհատուցել նրան. արծարծվող պրոբլեմների ճիշտ լուծում, փաստերի ու պատմական վկայությունների քննադատական վերլուծություն մարքսիզմի հայեցակետից, շարադրանքի հստակություն և տրամաբանական հենքի ներդաշնակ հյուսում: Սրանք արժանիքներ են, որոնք խոսում են այն մասին, որ Հ. Մեղավորյանի ուսումնասիրությունն այն գրքերից չէ, որը կարող էր տասնյակ տարիներ անօգտագործելի մնալ Ա. Մյասնիկյանի անվան հանրային գրադարանի դարակների վրա:

Ամուսնությունն ու ընտանիքը ծագել և կարգացել են հասարակական կենսաընթացքի համեմատ, ենթարկվելով վերջինիս անկասելի առաջընթացի որոշիչ օրենքներին: Հայ ժողովրդի պատմությունը ևս գալիս է պերճախոս կերպով ապացուցելու ամուսնաձևերի ու ընտանիքի այն էվոլյուցիան, որը բացահայտվել է Լ. Մորգանի երկերում և հետևողական մարքսիստական մատերիալիզմի դիտակետից հիմնավորվել ու կարգացվել Ֆ. Էնգելսի նշանավոր հետազոտության մեջ: Մայրիշխանական, հայրիշխանական-մենամուսնական ընտանիքի և համակեցության հանրահայտ ձևերը իրենց որոշ տարափոխություններով հանդերձ, դարեր ի վեր գոյատևել են հայոց պատմության մեջ: Ամուսնա-ընտանեկան կյանքի աշխարհիկ և կրոնական կանոնները մեր ժողովրդի պրակտիկայում ըստ ամենայնի սևեռում են ընտանեկան հաստատության այն երկարատև էվոլյուցիան, որով անցել են աշխարհի բոլոր ժողովուրդները:

Հակոբ Մեղավորյանի աշխատությունից քաղված այս հետևությունները մեկ հուշում են, որ նա առաջիններից մեկն էր, որը փորձեց մարքսիստական դիտակետից բացահայտել հայկական ամուսնա-ընտանեկան հաստատության գիտական հետազոտության ուղիները: Եվ դա նրա լուրջ ծառայությունն է:

Ուստի մեր պարտքն է, ըստ արժանվույն գնահատել, անտեղի մոռացված, մարքսիստական հայ մտքի այդ առաջնեկներից մեկի երախտիքը:

Արդյո՞ք Ֆրիդրիխ Էնգելսը ծանոթ է եղել իր ուշադրության և համարձակ հայ աշակերտի ուշագրավ երկին: Այդ մեկ հայտնի չէ, ինչպես և հայտնի չէ Հ. Մեղավորյանի կյանքի հետագա ընթացքն ու ճակատագիրը:

Ա. ԱԴՈՅԱՆ

---

1 *Հ. Մեղավորյան, նշվ. աշխ., էջ 71:*

2 *Նույն տեղը, էջ 93:*

3 *Նույն տեղը, էջ 66—69:*



## ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

# ՄԵԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

Ռուս ժողովուրդը մեծ ու առաջադիմական դեր է կատարել հայ ժողովրդի կյանքում: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Հայաստանի աշխատավորներին Սովետական Ռուսաստանի ցույց տված ռազմական, դիվանագիտական ու տնտեսական օգնության շնորհիվ Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները տապալեցին բուրժուա-նացիոնալիստական ռեժիմը, երկրում հաստատեցին ու ամրապնդեցին սովետական իշխանություն: Պատմագիտության համար կարևոր այդ պրոբլեմի բազմակողմանի ու խոր վերլուծմանը մեծ նշանակություն են տալիս սովետահայ պատմաբանները: Այդ տեսակետից ուշագրավ է Ա. Տ. Ալիխանյանի՝ Սովետական Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ազատագրման գործում մենագրությունը, որը լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը 1964 թվականի վերջին [1]:

Հեղինակը հայ ժողովրդի ազատագրման գործում Սովետական Ռուսաստանի ցուցաբերած օգնությունը քննարկում և լուսաբանում է որպես Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի ընդհանուր պատմության, որպես համաշխարհային պատմության մեջ տեղի ունեցած այդ մեծ շրջադարձի մի կարևոր բաղկացուցիչ մասը:

Աշխատության մեջ ճիշտ են սահմանված ոչ միայն ժամանակագրական սահմանները, այլև ճիշտ են ընտրված այդ պատմությունը ներկայացնող հարցերը: 1917—1921 թվականներին հայ ժողովրդի ազատագրության գործին Սովետական Ռուսաստանի ցուցաբերած օգնությունը հեղինակը քննարկում է զարգացման չորս էտապներում: Առաջինը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի և դրան հաջորդած սկզբնական ժամանակաշրջանն է, մինչև դաշնակների կառավարության հետ ՌՍՖՍՌ ժողկոմսովետի բանակցությունների սկսվելը (1920 թ. ամառ): Երկրորդ էտապն ընդգրկում է բանակցությունների ժամանակաշրջանը (1920 թ. օգոստոս-նոյեմբեր): Հաջորդ էտապը Հայաստանում սովետական իշխանության հաստատման կարճատև ժամանակամիջոցն է, որն իրենից ներկայացնում է մի ամբողջ պատմական շրջադարձ հայ ժողովրդի կյանքում: Այնուհետև հեղինակը հանգամանորեն լուսաբանում է Հայաստանի նորաստեղծ սովետական իշխանության ամրապնդման գործում Սովետական Ռուսաստանի ցույց տված օգնությունը:

Աշխատության մեջ հիմնական գծերով ցույց է տրված 1917—1921 թթ. Թուրքիայի նկատմամբ ՌՍՖՍՌ ժողկոմսովետի վարած ռևոլյուցիոն արտաքին քաղաքականությունը, բացահայտված է Անդրկովկասի, մասնավորապես, հայ ժողովրդի նկատմամբ քեմալականների բռնած դիրքի ու գործողությունների թշնամական, ռեակցիոն բնույթը, ինչպես նաև դաշնակների կառավարության արտաքին քաղաքականության ամբողջ վնասակարությունը Հայաստանի աշխատավորների ռևոլյուցիոն շարժման և երկրի տերիտորիալ ամբողջականության պահպանման հարցերում: Գրախոսվող աշխատության մեջ զգալի տեղ է տրված ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի գործունեությանը, Հայաստանում՝ սովետական իշխանության հաստատման գործում նրա կատարած դերին:

Համոզիչ փաստերով ցույց է տրվում, թե ինչպես դաշնակները, անցնելով իշխանության գլուխ, իրենց հակաժողովրդական քաղաքականությամբ բազմաչարչար հայ ժողովրդին կանգնեցրին նոր արհավիրքների հանդիման: Երբ 1920 թվականի աշնանը Հայաստանը կրկին դարձավ պատերազմի թատերաբեմ, միայն Սովետական Ռուսաստանն էր, որ բոլոր միջոցներով ձգտում էր վերջ տալ պատերազմին, վիճելի հարցերը կարգավորել խաղաղ ճանապարհով:

1 Ա. Տ. Ալիխանյան—*Սովետական Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ազատագրման գործում*, *Հայպետհրատ, Երևան, 1964 թ., 398 էջ:*



Իսկ ի՞նչ էին անում ազգի դաշնակցական «փրկիչները». նրանք մերժում էին սովետական առաջարկներն ու ձախողում դրանց իրականացումը: Եվ շարունակվում էր պատերազմը, թշնամին գրավում էր գյուղերն ու քաղաքները, հոսում էր ժողովրդի արյունը:

Անտանտի տերությունները ավելի էին խորացնում ժողովրդի ողբերգությունը: Անգլիայի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի ներկայացուցիչները, գրում է հեղինակը, բոլոր միջոցներով ուզում էին ձախողել Սովետական Ռուսաստանի՝ Երևան եկած ներկայացուցչության բանակցությունները և դաշնակցականներին հրահրել շարունակելու պատերազմը Թուրքիայի դեմ, նպատակ ունենալով թուրքական առաջխաղացումն ուղղել Բաքվի, հետևաբար նաև Սովետական Ռուսաստանի դեմ:

Հայաստանի և հայ ժողովրդի նկատմամբ Սովետական Ռուսաստանի անշահախնդիր վերաբերմունքը, ժողովրդին օգնելու նրա եղբայրական անկեղծ ցանկությունն իրենց արտահայտությունը գտան 1920 թվականի նոյեմբերի 28-ին Սովետական Ռուսաստանի և Հայաստանի միջև կնքված պայմանագրում:

Լուրջ հետաքրքրություն են ներկայացնում գրքի այն էջերը, որոնցում ցույց է տրվում Հայաստանում սովետական իշխանության հաղթանակն ապահովելու գործում ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի դերը: Պարտիայի Կովկասյան բյուրոն հմտորեն օգտագործում էր 1920 թվականի կեսերին հայ ժողովրդի ազատագրման համար ստեղծված նպաստավոր պայմանները և ճշտորեն ղեկավարում Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը, որը հաղթանակով պսակվեց 1920 թ. նոյեմբերի 29-ին: Բայց դրանից հետո էլ թշնամին չդադարեցրեց իր հակաժողովրդական գործունեությունը: 1920 թվականի դեկտեմբերի 2-ին դաշնակները Ալեքսանդրապոլում պայմանագիր կնքեցին Հայաստանն ասպատակող ուժերի հետ: Դա ամենախայտառակ պայմանագիրն էր, մի ստոր ու ողբերգական ակտ, որին ընդունակ էին միայն դաշնակների նման ազգադավ մարդիկ: Ժողովուրդը կանգնել էր իր երկրում ազատ կյանքի ուղու վրա, մտածում էր վերաշինել իր քանդված տունը, իսկ դաշնակները շռայլորեն վաճառում էին հայրենիքը, միայն թե երկրում իշխանությունը աշխատավորական չլիներ: Հեղինակի հրապարակած փաստաթղթերը մի անգամ ևս բացահայտում են դաշնակցականների դեմքը, նրանց վարած քաղաքականության ողջ սնանկությունը:

Աշխատության մեջ հանգամանալի շարադրված է ճշմարտությունն այն մասին, թե ինչպես էին Սովետական Ռուսաստանի ժողկոմսովետը և պարտիայի Կենտրոնական կոմիտեն Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ դիմադրում հայ ժողովրդի պետական ու քաղաքական անկախության դեմ օտարերկրյա զավթիչների վարած քաղաքականությանը և ինչպիսի մեծ եռանդ էին գործադրում Հայաստանի անվիճելի տերիտորիաները նույն այդ զավթիչների կողմից նվաճելու նենգ գործողությունների դեմ: Իսկ այդ նույն ժամանակ դաշնակցականները մի կողմից մերժում էին սովետական անշահախնդիր առաջարկները, մյուս կողմից՝ բանակցում օտարերկրյա ներկայացուցիչների հետ՝ սկսած Անտանտի տերություններից, վերջացրած թուրք իմպերիալիստներով, համաձայնելով, որ առանց այն էլ ջլատված Հայաստանը զիջի իր տերիտորիաների մեծագույն մասը: Հետագայում Սովետական Ռուսաստանին հարկ եղավ ահագին ջանքեր գործադրել ետ վերցնելու համար դաշնակցականների «առատաձեռնությամբ» թշնամուն զիջված տերիտորիաները, այդ թվում Ալեքսանդրապոլ քաղաքը գավառով հանդերձ:

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո Սովետական Ռուսաստանը խոշոր տնտեսական օգնություն ցույց տվեց ռեսպուբլիկայի պարենային ծանր դրությունը բարելավելու, ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար: Այս մասին սովետահայ պատմաբանները գրել են, հրապարակել փաստաթղթեր: Ա. Ալիխանյանը կատարում է որոշ լրացումներ, հրապարակում հարցի պատմության որոշ կարևոր մանրամասներ:

Համոզիչ են գրքի այն էջերը, որոնք ցույց են տալիս, թե ինչպես այն ժամանակ, երբ Հայաստանի աշխատավոր ժողովուրդը, հաղթահարելով կարիքն ու բոլոր դժվարությունները, լծվել էր երկրի վերաշինման գործին, փախստական դաշնակցականները դավեր էին նյութում սովետական իշխանության դեմ, որի արդյունքը եղավ փետրվարյան տխրահռչակ ավանտյուրան:

Ավանտյուրայից առաջ Սովետական Հայաստանի ռևկոմում և ՀԿՊ Կենտկոմում ծագած տարաձայնությունների հանգամանալից պարզաբանմամբ Ա. Ալիխանյանը ցույց է տալիս, թե ինչպես էին նոր իշխանության ղեկավարները դիմում ամեն միջոցի, որպեսզի ժողովրդին հեռու պահեն նոր արյունահեղություններից, հաղթահարեն սովը, որբերին ապաստան տան, հազարավոր ու հազարավոր գաղթականներին՝ օթևան: Իսկ դարանակալ դաշնակցականները զինվում էին, օգնություն հայցելով իմպերիալիստական կառավարություններից:

Երեկվա դաշնակցական պարագլուխներն այսօր «մոռացել» են այդ ամենը և կուրծք են ծեծում իրենց հայրենասիրության մասին: Դեռ ավելին, «մոռացության» տալով իրական դեպքերը, կեղծում և աջ ու ձախ վարկաբեկում են

բոլորին, չխնայելով նույնիսկ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանին՝ սովետական իշխանության և Սովետական Ռուսաստանի ջերմ բարեկամին: Ճիշտ է վարվել Ս. Ալիխանյանը, տեղ տալով դաշնակցական ավանտյուրայի օրերին Հովհ. Թումանյանի՝ Թիֆլիսից Երևան կատարած առաքելության պարզաբանմանը:

Ինչպես հայտնի է, Հովհ. Թումանյանն իր կամքով, բոլշևիկ ղեկավարների համաձայնությամբ, եկավ Երևան՝ համոզելու դաշնակցական լիդերներին, որ վերջ տան իրենց խելակորույս գործողություններին, դադարեցնեն կռիվները: Բայց դաշնակցական ջոջերը ոչ միայն չլսեցին Հ. Թումանյանին, այլև տնային ձերբակալության ենթարկեցին, պահակ կարգելով նրա վրա: Դրան հետևեց այն, որ դաշնակներն աղավաղեցին Երևանից Թիֆլիս՝ Ս. Օրջոնիկիձեին Հովհ. Թումանյանի գրած նամակներն ու հղած հեռագրերը, նրան չհանձնեցին բոլշևիկ ընկերների գրած նամակները:

Խնդիրն այստեղ այն չէ միայն, որ դաշնակցականները աղճատել են Հովհ. Թումանյանի նամակները և աշխատել թյուրիմացության մեջ գցել բոլշևիկներին: Դրանով դաշնակները ցանկացել են իր ժողովրդի մեծ զավակին հակադրել նրա ազատագրության համար մղվող ռևոլյուցիոն պայքարին: Ս. Ալիխանյանի փաստարկումներն ու պարզաբանումները կրկին անգամ ցույց են տալիս դաշնակցականների գործունեության ողջ նենգությունն ու հեռուն տանող բուրժուա-նացիոնալիստական դիտավորությունները:

Գրախոսվող աշխատության համար ակնհայտ առավելություն է այն, որ հեղինակն աշխատում է իր յուրաքանչյուր միտքը հիմնավորել փաստաթղթերով, որոնց զգալի մասը վերցված է երկրի տարբեր արխիվներից և որոնց մեջ շատ են առաջին անգամ գիտական շրջանառության մեջ դրվող նյութերը. թեև հաճախ մեջբերումները երկար են, երբեմն էլ, տուրք տալով էմպիրիզմին, հեղինակը պատմում է ավելորդ մանրամասնություններ, որոնք դժվարացնում են գրքի ընթերցումը:

Ցանկալի էր նաև, որ այս կամ այն հարցին անդրադառնալիս հիշատակվեր այդ մասին եղած գրականությունը և արտահայտվեր հեղինակի վերաբերմունքը անցյալում եղած կարծիքների նկատմամբ:

Հեղինակը հրապարակում է մի շարք փաստաթղթեր, որոնք օգտագործված են եղել և վերլուծված, բայց այդ մասին նույնպես չի նշվում: Բացի դրանից, որոշ դեպքերում հեղինակն անքննադատ վերաբերմունք է հանդես բերում փաստաթղթերի նկատմամբ, անտեսում է խնդրի մերթ դիվանագիտական, մերթ այժմեական կողմերը:

Ամբողջությամբ վերցրած Ս. Ալիխանյանի աշխատությունը արժեքավոր ուսումնասիրություն է, որն ընդարձակում է մեր պատկերացումը ոչ հեռավոր անցյալի, այժմեականություն ունեցող պատմության վերաբերյալ:

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

---



Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 10451 Պատվեր 2017 Տիրաժ 9100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 22/VII 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ: *Մ., Քաղհրատ, 1965:*

*Այս ժողովածուում զետեղված աշխատություններն ու քաղվածքները ցույց են տալիս, որ Վ. Ի. Լենինը 1894 թվականից սկսած մեծ ուշադրություն է նվիրել աշխատավորության բարոյականության հարցերին: Վ. Ի. Լենինը մարքսիստորեն հիմնավորում է բարոյականության դասակարգային բնույթը և այն, թե աշխատավորության շահերի արտահայտիչ՝ պրոլետարիատի պայքարն ինչպես է ծնում նոր, կոմունիստական բարոյականություն, որն իր մեջ ներառում է այն ողջ լավագույնը, որ ստեղծել է մարդկությունն իր բազմադարյան պատմության ընթացքում:*

Ժամանակակից միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումները: *Ուսումնա-մեթոդական ձեռնարկ, երկրորդ պրակ: 1939—1964 թթ. Մ., «Միսլ» հրատ., 1965, 292 էջ:*

*Այս պրակը նվիրված է Համաշխարհային սոցիալիստական սիստեմի սկզբնավորման ու զարգացման և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ժամանակաշրջանում միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումներին: Բնութագրվում են այդ շարժումների առանձնահատկությունները համաշխարհային երկրորդ պատերազմի տարիներին, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ծագումն ու զարգացումը, գաղութատիրության իմպերիալիստական սիստեմի անկումը, ընթացիկ ժամանակաշրջանի կոմունիստական ու բանվորական շարժման ծավալման յուրահատկությունները և այլ հարցեր:*

Բոլշևիկյան մամուլը և Ռուսաստանի բանվոր դասակարգը ռևոլյուցիոն վերելքի տարիներին **1910—1914 թթ.**: *Մ. «Նաուկա» հրատ., 1965:*

*Հոդվածների ժողովածուում զետեղված են «Պրավդա» թերթի 50-ամյակին նվիրված գիտական նստաշրջանում կարդացված զեկուցումների և հաղորդումների վերամշակված բնագրերը, որոնցում լուսաբանվում է՝ Վ. Ի. Լենինի դերը բոլշևիկյան ազատ մամուլի հիմնման գործում:*

Սոցիոլոգիան ՍՍՌՄ-ում: *Հատ. I: Մ. «Միսլ» հրատ., 1965:*

*Երկհատոր այս աշխատության I հատորում լուսաբանվում են մարքսիստական սոցիոլոգիայի առարկան ու նրա խնդիրները, սոցիալական կոնկրետ իրադրության ուսումնասիրությունների մեթոդոլոգիան ու մեթոդները, սովետական հասարակության դասակարգային կառուցվածքի փոփոխությունները: կոլեկտիվի և անհատի փոխհարաբերությունները:*

Մարքսիստական-լենինյան բարոյագիտության կատեգորիաները: *Մ., «Միսլ» հրատ., 1965, 286 էջ:*

*Ժողովածուում զետեղված հոդվածներում հեղինակները կյանքից վերցված օրինակներով ցույց են տալիս, թե ինչ նոր հասարակական բովանդակությամբ են հարստացել բարոյագիտության հիմնական կատեգորիաները՝ խիղճը, պատիվը, արժանապատվությունը և երջանկությունը սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում:*

ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ Խ. Մ. և ՄԱՆՈՒԿՅԱՆ Ս. Ա.: Հակոբ Հակոբյանի կյանքի և գործունեության տարեգրությունը: *Ե., ԳԱ հրատ., 1965, 298 էջ:*

*Արխիվային նյութերի, զանազան վավերագրերի, պարբերական մամուլի և գրականության միջոցով ճշտված և շարադրված են հայ առաջին պրոլետարական բանաստեղծ և հասարակական-քաղաքական գործիչ Հակոբ Հակոբյանի կյանքի, գրական և ռևոլյուցիոն գործունեության նշանավոր իրադարձություններն ու փաստերը:*

ԳԻՆԸ 25 Կ. 77783

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՐԱՑՈՒՅՑ (1963 թ.)

*Բուխարեստի Կ. Ի. Պարխոնի անվան էնդոկրինոլոգիայի ինստիտուտի էլեկտրոնային մանրադիտակի լաբորատորիայում սկսել են կիրառել միկրոէլեկտրոնային ավտոռադիոգրաֆիայի հետազոտության նոր մեթոդը։ Այդ մեթոդը հնարավորություն է տալիս ռադիոիզոտոպները մտցնել տարբեր օրգանների և էնդոկրին գեղձերի հյուսվածքների և էլեկտրոնային մանրադիտակի միջոցով դիտել բջիջների ներսում հյուսվածքների տոպոգրաֆիական քանակական բաշխումը։*

*Նոր մեթոդը լայն հեռանկարներ է բացում միկրոռադիոքիմիայի, բջջային բիոլոգիայի և պաթոլոգիայի, մորֆոֆիզիոլոգիայի և այլ բնագավառների հետազոտության համար։*

●

*Դոկտոր Ստեֆան Գագովը (Բուլղարիայի գիտությունների ակադեմիայի ֆիզիոլոգիայի ինստիտուտ) առաջարկել է մարդու օրգանիզմը ցածր հաճախականության իմպուլսիվ հոսանքներով գրգռելու միջոցով արյան բարձր ճնշումը բուժելու նոր մեթոդ։ Մեթոդը ներառում է մոտ 25 պրոցեդուրա, որոնք շարունակվում են 10—30 րոպե։ Հոսանքի ներգործությունը բացարձակապես անցավագին է. 50 հիվանդների մոտ ճնշումը կամ նորմալացել է կամ զգալիորեն իջել, ինքնազգացողությունը, քունը և աշխատունակությունը՝ բարելավվել։*

●

*Կիևի հոսքային գործարանի և Մոսկվայի գարեջրի անալկոհոլ խմիչքի գիտահետազոտական ինստիտուտի մասնագետներն առաջին անգամ աշխարհում գտել են եգիպտացորենից դիետիկ մթերք՝ սոլոդ ստանալու եղանակը։*

●

*Պուլկովյան աստղադիտարանում ստեղծվել է նոր տելեսկոպ ռեֆլեկտոր՝ 700 միլիմետր տրամագիծ ունեցող մետաղյա հայելիով։ Տելեսկոպը դեպի երկնային մարմինն է ուղղվում և այն դիտում էլեկտրոնաթվային կառավարող մեքենան նախօրոք տրված ծրագրով։ Մեկ վայրկյանում երեք անգամ մեքենան «տեղեկանում է» տելեսկոպին ուղղություն տվող սիստեմից՝ թե արդյոք իրական վիճակը համապատասխանո՞ւմ է ծրագրվածին և անհրաժեշտության դեպքում տելեսկոպը ուղղվո՞ւմ է պետք եղած կողմը։*

●

*ՍՍՌՄ-ում ավարտվել է 70—200 աստիճան ջերմություն ունեցող տաք և գերտաք 50 ստորերկրյա ջրավազանների եզրագծումը։ Մերձկովկասյան, Մերձկասպյան հարթության և Արևմտասիբիրյան հարթավայրի ավազաններն զբաղեցնում են մոտ 2 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն։ Տաք ջրերի պաշարները վիթխարի են։ Հաշված է, որ այդ ավազանների ջերմությամբ կարելի է ջեռուցել ավելի քան 60 քաղաք։*

●

*Սովետական գիտնականները պլազմայի շիթի օգնությամբ մշակել են մեթանից ացետիլեն ստանալու սկզբունքորեն նոր եղանակ։ Փոխակերպումը կատարվում է մինիատյուր սարքի մեջ, մեկ տասնհազարերորդական վայրկյանում։ Այժմ ացետիլեն ստացվում է գործարանային այնպիսի ցեխերում, որոնց տարածությունը հասնում է հարյուրավոր քառակուսի մետրերի։ Սպասվում է, որ ացետիլեն ստանալու արդյունաբերական պլազմատրոնը կարելի է տեղավորել 2—3 քառակուսի մետր տարածության վրա։ Ենթադրվում է նաև, որ այդ մեթոդով կարելի կլինի մշակել հսկայական քանակությամբ բնական գազ և, հնարավոր է՝ թեթև ֆրակցիաների նավթ։*

Наука и человечество—1964